ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 12
ԴԵԿՏԵՄԲԵՐ
1957 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИКЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



### ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ԱՆՊԱՐՏԵԼԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆ

Մեր երկրի բազմազգ ժողովուրդը, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը խանդավառությամբ ու բերկրանքով տոնեցին համաշխարհային պատմության մեջ նոր դարաշրջան բացած Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակը:

Այդ պանծալի տոնին սովետական ժողովուրդը հանրագումարի բերեց Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ու գիտության բոլոր բնագավառներում իր ձեռք բերած վիթխարի նվաճումները: Սովետական Միության համաշխարհային պատմական նվաճումները բուռն ցնծություն և անհուն բերկրանք առաջացրին սոցիալիստական լագերի ժողովուրդների, ամբողջ աշխարհի աշխատավորների մեջ, որոնք հանձին ՍՍՌՄ-ի տեսնում են խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի մեծ դրոշակակրին:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասնամյակի տոնակատարության օրերին Մոսկվայից հնչեց միջազգային բանվոր դասակարգի ավանգարդի՝ կոմունիստական և բանվորական պարտիաների ձայնը: Այդ պարտիաների ներկայացուցիչները Մոսկվայում կայացած իրենց խորհրդակցություններում բարեկամության, սրտաբացության ու սերտ համագործակցության մթնոլորտում քննարկեցին կոմունիստական ու բանվորական պարտիաներին հետաքրքրող հարցեր, կարծիքներ փոխանակեցին միջազգային արդի դրության, խաղաղության ու սոցիալիզմի համար մղվող պայքարի պրոբլեմների, ինչպես նաև իրենց հարաբերությունների շուրջը: Դրանք ամենաներկայացուցչական ու լայն միջազգային խորհրդակցություններն էին կոմունիստական շարժման պատմության մեջ, որոնք կոմունիստական ու բանվորական պարտիաների մեծ միասնության ու համախմբվածության ցույցը եղան: Այդ են ցույց տալիս սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության ընդունած Դեկլարացիան, 64 երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության ընդունած Խաղաղության մանիֆեստը, որոնք ամենաջերմ արձագանքը գտան ամբողջ աշխարհի աշխատավորների սրտերում:

Պատմական մեծագույն նշանակություն ունեցող հիշյալ փաստաթղթերը նշանավորում են մի նոր էտապ համաշխարհային կոմունիստական շարժման զարգացման, սոցիալիստական լագերի երկրների հզոր ուժերի հետագա ամրապնդման, ամբողջ աշխարհի կայուն խաղաղության համար բոլոր ժողովուրդների մղած պայքարում:

Սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Դեկլարացիան խոր կերպով ընդհանրացնում է Սովետական Միության, Չինաստանի և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների,

կապիտալիստական երկրների բանվորական շարժման, ինչպես նաև գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի փորձը, վերլուծում է ներկայիս միջազգային դրության կարևորագույն հարցերը, ցույց է տալիս մարքսիզմ-լենինիզմի տեսության ստեղծագործական կիրառման և կոմունիստական ու բանվորական պարտիաների կողմից նրա զարգացման փայլուն օրինակ։

Դեկլարացիան ցույց է տալիս վերջին շրջանում համաշխարհային մասշտաբով ուժերի հարաբերակցության մեջ տեղի ունեցած փոփոխությունների ամբողջական պատկերը։ Նրանում ընդգծված է, որ մեր դարաշրջանի հիմնական բովանդակությունը անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, որը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայով սկսվեց Ռուսաստանում։ Այժմ արդեն ամբողջ աշխարհի բնակչության ավելի քան մեկ երրորդը՝ ինը հարյուր հիսուն միլիոնից ավելի մարդ, բռնել է սոցիալիզմի ուղին և նոր կյանք է կառուցում։ Սոցիալիզմի ուժերի վիթխարի զարգացումը խթանեց հակաիմպերիալիստական ազգային շարժման բուռն աճը հետպատերազմյան շրջանում։ Վերջին 12 տարում, բացի Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայից, Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայից և Կորեական Ժողովրդա-դեմոկրատական Ռեսպուբլիկայից, ավելի քան յոթ հարյուր միլիոն մարդ նույնպես թոթափեցին գաղութային լուծը և ստեղծեցին իրենց ազգային սուվերեն պետությունները։ Գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդները, որոնք դեռևս գտնվում են ստրկության մեջ, ուժեղացնում են պայքարը հանուն իրենց ազգային ազատագրության։ Սոցիալիզմի և ազգային-ազատագրական շարժման զարգացումը խիստ արագացրել է իմպերիալիզմի քայքայման պրոցեսը։ Իմպերիալիզմը կորցրել է իր երբեմնի տիրապետությունը մարդկության մեծ մասի նկատմամբ։

Ներկա դարաշրջանում, երբ համաշխարհային զարգացումը որոշվում է հասարակական երկու հակադիր սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի մրցության ընթացքով ու արդյունքներով, ավելի պարզ են դրսևորվում սոցիալիզմի մեծ առավելությունները։ Քառասուն տարում սոցիալիզմը ապացուցեց, որ այն մեծ չափով գերազանցում է կապիտալիզմին։ Դրա լավագույն ապացույցն են հանդիսանում պատմականորեն կարճ ժամանակամիջոցում արտադրողական ուժերի, գիտության զարգացման, աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման և մյուս բնագավառներում ՍՍՌՄ-ի, ինչպես նաև սոցիալիստական լագերի մյուս երկրների ձեռք բերած հոյակապ նվաճումները։

Իր կենսունակության շնորհիվ սոցիալիզմը վերելք է ապրում, իսկ իմպերիալիզմը՝ անկում։ Կապիտալիստական երկրներում արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների, ինչպես նաև բուն կապիտալիստական երկրների միջև սրվող հակասությունները, գաղութային սիստեմի քայքայումը ավելի են արագացնում իմպերիալիզմի անկումը։ Համաշխարհային կապիտալիստական էկոնոմիկան շարունակում է երերուն ու անկայուն մնալ. այն չի կարող խուսափել նոր ցնցումներից ու ճգնաժամերից։ Այս բոլորի հետ միասին աճում է աշխատավորների աղքատացումը, կեղեքումն ու ճնշումը, որն ավելի է սրում հակասությունները բանվոր դասակարգի ու բուրժուազիայի միջև։ Կապիտալի երկրների աշխատավորների օրեցօր վատթարացող վիճակը նրանց



համոզում է, որ դրանից դուրս գալու միակ ելքը սոցիալիզմն է, որն ապահովում է մարդկության առաջընթացը։

Բայց ԱՄՆ-ի ագրեսիվ իմպերիալիստական շրջանները, վարելով «ուժի դիրքերի» քաղաքականություն, խանգարում են մարդկության առաջընթացը։ «Կոմունիզմի դեմ պայքարելու» քողի տակ նրանք ձգտում են ավելի ընդարձակել իրենց տիրապետության ոլորտը, դրդում են ոչնչացնել դեմոկրատական ազատությունները, սպառնում են կապիտալիստական զարգացած երկրների անկախությանը, ցանկանում են նոր ձևով գաղութային լուծ դնել ազատագրված ժողովուրդների վզին և թշնամական քայքայիչ գործունեություն են ծավալում ընդդեմ սոցիալիստական երկրների։ ԱՄՆ-ի իմպերիալիստները, ձգտելով իրենց շուրջը համախմբել աշխարհի բոլոր հետադեմ ուժերին, դարձել են համաշխարհային ռեակցիայի կենտրոնը և ժողովրդական մասսաների ամենաչարաննենգ թշնամիները։

Իմպերիալիզմի ագրեսիվ շրջանները շարունակում են սպառազինությունների մրցավազքը, կազմակերպում են ագրեսիվ ռազմական խմբավորումներ, հրաժարվում են զինաթափումից, ատոմային ու ջրածնային զենքի արգելումից։ Բորբոքելով «սառը պատերազմը», նրանք սպառնում են խաղաղության գործին և ստեղծում նոր պատերազմի վտանգ։

Ընդդեմ պատերազմի հանդես են գալիս խաղաղության ուժերը, որոնք խայնքան են աճել, որ պատերազմը կանխելու ռեալ հնարավորություն կա։ Խաղաղության գործը, նշված է Դեկլարացիայում, պաշտպանում են արդիական հզոր ուժերը՝ սոցիալիստական պետությունների անխորտակելի լագերը, որին գլխավորում է Սովետական Միությունը, Ասիայի ու Աֆրիկայի խաղաղասեր պետությունները, որոնք հակաիմպերիալիստական դիրք են բռնել և սոցիալիստական երկրների հետ մեկտեղ ստեղծել են խաղաղության գոտի, միջազգային բանվոր դասակարգը և, առաջին հերթին, նրա ավանգարդ կոմունիստական պարտիաները, գաղութների ու կիսագաղութների ժողովուրդների ազատագրական շարժումը, ժողովուրդների մասսայական շարժումը հանուն խաղաղության. Նոր պատերազմ կազմակերպելու պլաններին վճռական դիմադրություն են ցույց տալիս նաև Եվրոպայի՝ իրենց չեզոք հայտարարած երկրների ժողովուրդները, Լատինական Ամերիկայի ժողովուրդները, բուն իմպերիալիստական երկրների ժողովրդական զանգվածները։ Այդ հզոր ուժերի միավորումը կարող է կանխել պատերազմի բռնկումը, իսկ այն դեպքում, երբ իմպերիալիստական ռազմատենչ շրջանները համարձակվեն պատերազմ ձաղերծել, ապա իմպերիալիզմն իրեն կմատնի կործանման, քանի որ ժողովուրդներն այլևս չեն հանդուրժի այն կարգը, որն իրենց այնքան ծանր տառապանքներ է պատճառում և զոհեր բերում։

Դեկլարացիայում և Խաղաղության մանիֆեստում ընդգծված է, որ կոմունիստական ու բանվորական պարտիաները խաղաղության համար պայքարը համարում են իրենց առաջնակարգ խնդիրը։ Նրանք խաղաղասեր բոլոր ուժերի հետ իրենցից կախված ամեն ինչ կանեն՝ պատերազմը կանխելու համար։

Դեկլարացիայում կարևոր տեղ է տրված սոցիալիստական լագերի պետությունների, բոլոր երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների միջև միասնության և եղբայրական համագործակցության ամրապնդմանը, միջազգային բանվորական, ազգային-ազատագրական և դեմոկրատական շարժման համախմբմանը։

Բանվոր դասակարգի հաղթանակի, խաղաղության ամրապնդման հիմնական պայմանը կոմունիստական ու բանվորական պարտիաների սերտ միասնությունն է։ Գիտակցելով իրենց լուրջ պատասխանատվությունը համաշխարհային սոցիալիստական սիստեմի և միջազգային կոմունիստական շարժման ճակատագրի համար, կոմունիստական ու բանվորական պարտիաները հայտարարեցին, որ իրենք «անդուլ կերպով կամրապնդեն իրենց միասնությունը և ընկերական համագործակցությունը հօգուտ սոցիալիստական պետությունների համերաշխության հետագա համախմբման, հօգուտ միջազգային բանվորական շարժման, հօգուտ խաղաղության ու սոցիալիզմի գործի»։

Խորհրդակցությունը հաստատեց սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության արմատական հարցերում կոմունիստական ու բանվորական պարտիաների հայացքների միասնությունը, որը բացառիկ կարևոր նշանակություն ունի։ Ելնելով մարքս-լենինյան դիրքերից, խորհրդակցությունը նշեց, որ սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության պրոցեսները խարսխված են սոցիալիզմի ուղին թևակոխող բոլոր երկրներին հատուկ մի շարք գլխավոր օրինաչափությունների վրա։

«Այդպիսի ընդհանուր օրինաչափություններն են,— ասված է Դեկլարացիայում,— այս կամ այն ձևով պրոլետարական ռևոլյուցիայի իրականացման և այս կամ այն ձևով պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման գործում աշխատավոր զանգվածների ղեկավարումը բանվոր դասակարգի կողմից, որի կորիզը մարքս-լենինյան պարտիան է. բանվոր դասակարգի դաշինքը գյուղացիության հիմնական զանգվածների և աշխատավորության մյուս խավերի հետ. արտադրության հիմնական միջոցների նկատմամբ կապիտալիստական սեփականության վերացումը և հանրային սեփականության հաստատումը. գյուղատնտեսության աստիճանական սոցիալիստական վերափոխումը. ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացումը, որն ուղղված է սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման, աշխատավորների կենսամակարդակի բարձրացման նպատակին. գաղափարախոսության ու կուլտուրայի ասպարեզում սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացումը և բանվոր դասակարգին, աշխատավոր ժողովրդին, սոցիալիզմի գործին նվիրված ստվար ինտելիգենցիայի ստեղծումը. ազգային ճնշման վերացումը և ժողովուրդների միջև իրավահավասարության ու եղբայրական բարեկամության հաստատումը. արտաքին ու ներքին թշնամիների ոտնձգություններից սոցիալիզմի նվաճումների պաշտպանությունը. մյուս երկրների բանվոր դասակարգի հետ տվյալ երկրի բանվոր դասակարգի համերաշխությունը՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը»։

Այս ընդհանուր օրինաչափությունները կիրառելիս պետք է հաշվի առնել յուրաքանչյուր երկրի կոնկրետ պատմական պայմանները, ազգային առանձնահատկությունները, որի անտեսումը պրոլետարական պարտիային կտրում է կյանքից, մասսաներից ու անպայման վնաս հասցնում սոցիալիզմի գործին։ Բայց, մյուս կողմից էլ, ազգային առանձնահատկությունների դերի չափազանցումը և այդ առանձնահատկությունների պատրվակով սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության վերաբերյալ մարքսիզմ-լենինիզմի համընդհանուր ճշմարտությունից նահանջելը նույնպես անպայման վնաս են հասցնում սոցիալիզմի գործին։ Այդ երկու տենդենցների դեմ էլ պետք է պայքար մղել և ապահովել մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործորեն կիրառումը։



Ժամանակակից էտապում կարևոր նշանակություն է ստանում կոմունիստական և բանվորական շարժման մեջ օպորտունիստական հոսանքների դեմ մղվող պայքարի ուժեղացումը։ Վճռաբար պետք է մերկացնել ու հաղթահարել ռևիզիոնիզմի, դոգմատիզմի ու աղանդավորության բոլոր դրսևորումները։ Բանվորական ու կոմունիստական շարժման մեջ ռևիզիոնիզմը և դոգմատիզմը ինչպես անցյալում, այնպես էլ ներկայումս միջազգային բնույթ ունեն։ Դրանք հանգեցնում են մասսաներից պարտիայի կտրվածությանը, դժվարացնում են մարքսիզմ-լենինիզմի զարգացումը, տարածումն ու ստեղծագործական կիրառումը։ Դատապարտելով դոգմատիզմը, կոմունիստական պարտիաները ժամանակակից պայմաններում գլխավոր վտանգը համարում են ռևիզիոնիզմը, որը ճգնում է արատավորել մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքը, վերացնել նրա ռևոլյուցիոն ոգին, խախտել բանվոր դասակարգի և աշխատավոր ժողովրդի հավատը սոցիալիզմի նկատմամբ։ Ռևիզիոնիզմը, այլ կերպ ասած՝ աջ օպորտունիզմը՝ որպես բուրժուական գաղափարախոսության դրսևորում, պա-
հանջում է պահպանել կամ վերականգնել կապիտալիզմը։

Կարևոր նշանակություն ունի զանազան երկրների՝ կապիտալիզմից սո-
ցիալիզմին անցնելու ձևերի պրոբլեմի հետագա մշակումը։ Դեկլարացիան ընդ-
գծում է, որ միջազգային ասպարեզում պատմական խոր փոփոխությունների և
սոցիալիզմի օգտին ուժերի հարաբերակցության՝ արմատական տեղաշարժերի
կապակցությամբ, բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության և աշ-
խատավոր ինտելիգենցիայի մեջ սոցիալիզմի գաղափարների ձգողական ուժի
աճման շնորհիվ, ավելի նպաստավոր պայմաններ են ստեղծվում սոցիալիզմի
հաղթանակի համար։ Ժամանակակից պայմաններում մի շարք կապիտալիստա-
կան երկրներում հնարավորություն կա սոցիալիզմին անցնել խաղաղ ճանա-
պարհով, որը կհամապատասխաներ բանվոր դասակարգի և ամբողջ ժողովրդի
շահերին, երկրի համազգային շահերին։ Այդ երկրներում բանվոր դասակարգը՝
իր առաջավոր ջոկատի գլխավորությամբ, հնարավորություն ունի բանվորական
ու ժողովրդական ճակատի և տարբեր պարտիաների ու հասարակական կազ-
մակերպությունների համաձայնության և քաղաքական համագործակցության
մյուս հնարավոր ձևերի հիման վրա միավորել ժողովրդի մեծամասնությունը,
պետական իշխանությունը նվաճել առանց քաղաքացիական պատերազմի և
ապահովել արտադրության հիմնական միջոցների անցումը ժողովրդի ձեռքը։
Իսկ այն պայմաններում, երբ ռեակցիոն և շահագործող դասակարգերը ժողո-
վրդական մասսաների նկատմամբ բռնության են դիմում, պետք է նկատի
ունենալ մյուս՝ սոցիալիզմին ոչ խաղաղ ճանապարհով անցնելու անհրաժեշ-
տությունը։ Այդ պայմաններում դասակարգային պայքարի կատաղի լինելու
աստիճանը և ձևերը կախված կլինեն ոչ այնքան պրոլետարիատից, որքան
ժողովրդի գերակշռող մեծամասնության կամքին ռեակցիոն շրջանների դիմա-
դրության ուժից, սոցիալիզմի համար մղվող պայքարի այս կամ այն էտա-
պում այդ շրջանների կողմից բռնության կիրառումից։

Միջազգային կոմունիստական շարժումը, հերոսաբար հաղթահարելով իր ճանապարհին եղած լուրջ դժվարություններն ու փորձությունները, աճել ու խոշորագույն հաղթանակների է հասել։ Կոմունիստներն իրենց գործերով ապացուցել են մարքս-լենինյան տեսության կենսունակությունը և սոցիալիզմի մեծ իդեաները ո՛չ միայն պրոպագանդելու, այլև ամենադժվարին պայմաններում իրականացնելու իրենց ընդունակությունը։

Մարդկային հասարակության առաջընթացը խանգարող իմպերիալիստական ռեակցիոն, հակաժողովրդական ուժերին կոմունիստները պատասխանում են իրենց միասնության ու համախմբվածության հետագա ամրապնդումով։ Նրանց շարքերը օրեցօր աճում են ու ավելի հզորանում։ «Իմպերիալիզմի կողմից այսպես կոչված «կոմունիզմի ճգնաժամի» մասին արվող անհեթեթ պնդումներին հակառակ,— ասված է Դեկլարացիայում,— կոմունիստական շարժումը աճում է և ամրապնդվում։ ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները ո՛չ միայն մեծ նշանակություն ունեն ՍՄԿՊ-ի ու ՍՍՌՄ-ում կոմունիստական շինարարության համար, այլև դրեցին միջազգային կոմունիստական շարժման նոր էտապի սկիզբը, նպաստեցին նրա հետագա զարգացմանը մարքսիզմ-լենինիզմի հիման վրա։ Չինաստանի, Ֆրանսիայի, Իտալիայի և այլ երկրների կոմպարտիաների վերջերս հաջողությամբ անցկացված համագումարները համոզիչ կերպով ցուցադրեցին պարտիական շարքերի միասնությունն ու համախմբվածությունը, նրանց հավատարմությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին։ Կոմունիստական ու բանվորական պարտիաների սույն խորհրդակցությունը նույնպես վկայում է կոմունիստական շարժման միջազգային համախմբվածության մասին»։

Վաթսունչորս երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների հրապարակած Խաղաղության մանիֆեստը ողջ աշխարհի խաղաղատենչ մարդկության և բարի կամքի բոլոր մարդկանց անկեղծ իղձերի և երազանքների մարմնացումն է։ Այն կոչ է անում միլիոն և միլիոն մարդկանց՝ առանց ազգային, դավանանքի և քաղաքական համոզմունքի խտրության խաղաղության նվիրական վեհ գործին զորավիգ լինել։ Մարդկության երջանկության ուղին կարող է ընթանալ միայն խաղաղության հունով։ Մինչդեռ պատերազմները հանուր մարդկությանը պատճառում են մեծագույն աղետներ, անլուր տառապանքներ և անթիվ զոհեր։

Մոսկվայում կայացած կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցությունների Դեկլարացիան և Խաղաղության Մանիֆեստը բոլոր երկրների աշխատավորներին է՛լ ավելի մեծ վստահություն են ներշնչում իրենց ուժերի նկատմամբ, դեմոկրատիայի, խաղաղության ու սոցիալիզմի արդար գործի հաղթանակի նկատմամբ։

Սովետական Միության ամբողջ ժողովրդի հետ միասին, մեր ռեսպուբլիկայի բոլոր պարտիական կազմակերպությունները, բանվորները, կոլտնտեսականներն ու ինտելիգենցիան ամենայն միահամուռ կերպով պաշտպանում ու ողջունում են այդ պատմական վավերագրերը։ Նրանք կրկնապատկում են իրենց ջանքերը և չթուլացող եռանդով պայքարում ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ու գիտության բոլոր բնագավառներում նորանոր հաջողությունների հասնելու և կոմունիզմի կառուցման գործը փառքով պսակելու համար։

---

# ՍՈՒՐԵՆ ՍՊԱՆԴԱՐՅԱՆ

(Ծննդյան 75-ամյակի առթիվ)

## Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ

75 տարի առաջ, 1882 թվականի դեկտեմբերի 15-ին, ծնվեց Վ. Ի. Լենինի հավատարիմ աշակերտ և զինակից, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ականավոր գործիչ, աննկուն ռևոլյուցիոներ, հայ ժողովրդի պանծալի զավակ Սուրեն Սպանդարի Սպանդարյանը (Տիմոֆեյ)։

Դեռ պատանի հասակից ռուս մարքսիստների ղեկավարությամբ ներգրավվելով ռևոլյուցիոն շարժումների մեջ, մտնելով բոլշևիկյան պարտիայի շարքերը, Սպանդարյանը դառնում է պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ և մինչև իր կյանքի վերջը հավատարիմ է մնում բանվոր դասակարգի ազատագրության վեհ գործին, կոմունիզմի գործին։

Վ. Ի. Լենինը, Կոմունիստական պարտիան բարձր են գնահատել Ս. Սպանդարյանի պարտիական բեղմնավոր գործունեությունը։ Արտասահմանում Վ. Ի. Լենինի խմբագրությամբ լույս տեսնող պարտիայի կենտրոնական օրգան «Սոցիալ-դեմոկրատ» թերթը 1916 թվականի հոկտեմբերի 19-ի համարում տպագրեց նվիրված Ս. Սպանդարյանի հիշատակին հատուկ մահախոսական։ Համառոտակի ցույց տալով Սպանդարյանի անցած ուղին, թերթը նշում էր, որ նա «...15 տարուց ավելի է, ինչ ՌՍԴԲՊ անդամ էր, աշխատելով իբրև ընկնող ագիտատոր, գլխավորապես Կովկասում։ Սակայն ընկեր Տիմոֆեյը քաջ ծանոթ էր նաև բազմաթիվ ռուս ընկերների, որպես համապարտիական կոնֆերանսների և խորհրդակցությունների դելեգատ։

Կոնտրռևոլյուցիայի, պարտիական կյանքի քայքայման տարիներին ընկ. Տիմոֆեյն իր առույգությունը չկորցրեց։

Նա մնաց կանգնած իր դիրքերում և միայն ուժեղացրեց իր աշխատանքը։ Նա եռանդուն մասնակցություն ունեցավ ինչպես 1912 թվականի համապարտիական կոնֆերանսի նախապատրաստման աշխատանքներին, այնպես էլ բուն կոնֆերանսին։ Ընտրվելով նոր Կենտկոմի անդամ, Սպանդարյանը Ռուսաստանում կատարած իր աշխատանքով հսկայական ծառայություններ մատուցեց այդ հիմնարկությանը։ Նա մասնակցում էր Կենտկոմի ռուսական մի տպարանի կազմակերպման գործին, ընտրական պլատֆորմի և Կենտկոմի մի շարք կոչերի հրատարակությանը...»։ Այնուհետև թերթը հայտնում էր, որ իմպերիալիստական պատերազմի տարիներին ցարական իշխանությունների կողմից աքսորված լինելով հեռավոր Տուրուխանյան երկրամասը, Ս. Սպանդարյանը այնտեղից նամակներ էր գրել Կենտկոմին, «որոնցից պարզ էր երևում, որ նա հավատարիմ է մնացել ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատիայի լագեն,

*վագույն տրադիցիաներին, ոչ մի րոպե չտատանվելով ինտերնացիոնալիզմի դիրքերից» («Սոցիալ-դեմոկրատ», № 56, 19 հոկտեմբերի, 1916 թ.)։*

***

*Սուրեն Սպանդարյանը ծնվել է Թիֆլիսում, ինտելիգենտի ընտանիքում։ Նրա հայրը՝ Սպանդար Սպանդարյանը (1849—1921 թթ.), «Նոր դար» պահպանողական թերթի խմբագիր-հրատարակիչն էր։ Սակայն որդին չգնաց հոր ուղիով։ Դեռ աշակերտական նստարանից, երբ պատանի Սուրենը սովորում էր Թիֆլիսի արական գիմնազիայում, լուրջ գաղափարական կոնֆլիկտներ սկսվեցին հոր և որդու միջև։ Սնվելով ռուս մեծ ռևոլյուցիոն դեմոկրատներ Չերնիշևսկու և Բելինսկու աշխատություններով, Մարքսի, Էնգելսի, Լենինի ռևոլյուցիոն գաղափարներով, ականատես լինելով Ռուսաստանի հերոսական պրոլետարիատի մարտական ելույթներին՝ ցարիզմի և բուրժուազիայի դեմ, Սպանդարյանը վճռականորեն ու անվերադարձ կերպով գաղափարապես խզվեց հայ ազգայնական ինտելիգենցիայից և հաստատորեն կանգնեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի, լենինիզմի դրոշի տակ։*

*Սպանդարյանի կյանքի ու գործունեության հետագա ուղին որոշեցին ոչ թե բուրժուական-նացիոնալիստական իդեոլոգիան, որն այն ժամանակ բավականին տարածված էր Անդրկովկասի հայ իրականության մեջ, այլ մարքսիզմ-լենինիզմի իդեոլոգիան, այդ իդեոլոգիայի ազդեցությամբ Ռուսաստանում և Անդրկովկասում ծավալվող խոշոր ռևոլյուցիոն իրադարձությունները։*

*1901 թվականին Ս. Սպանդարյանը մտնում է ՌՍԴԲՊ Թիֆլիսի լենինյան-իսկրայական ուղղության կազմակերպության շարքերը և ռևոլյուցիոն ակտիվ աշխատանք է ծավալում։ 1902 թվականին ավարտելով գիմնազիան՝ Սպանդարյանը մեկնում է Մոսկվա ուսումը շարունակելու։ 1902—1905 թվականներին գտնվելով Մոսկվայում՝ ռևոլյուցիոն շարժումների այդ խոշորագույն կենտրոններից մեկում, Սպանդարյանը սովորում է Մոսկվայի պետական համալսարանի պատմա-ֆիլոլոգիական և ապա իրավաբանական ֆակուլտետներում՝ միաժամանակ տանելով ընդհատակյա պարտիական աշխատանք։*

*Մոսկվայում անցկացրած տարիները խոշոր նշանակություն ունեցան Ս. Սպանդարյանի ռևոլյուցիոն հետագա դաստիարակության համար։ Այստեղ նա է՛լ ավելի հիմնովին է ուսումնասիրում մարքսիզմը և, մասնավորապես, Վ. Ի. Լենինի աշխատությունները։ Սպանդարյանը խորապես ըմբռնում և ջերմորեն պաշտպանում է լենինյան իդեաները։*

*1903 թվականին, ՌՍԴԲՊ երկրորդ համագումարից հետո, իմանալով բոլշևիկների ու մենշևիկների միջև եղած խոր տարաձայնությունների մասին, Սպանդարյանը անվերապահորեն կանգնում է Վ. Ի. Լենինի, բոլշևիկների կողմը և իր ամբողջ կյանքում առանց որևէ շեղման հավատարիմ է մնում մեծ Լենինի գործին։*

*Սուրեն Սպանդարյանի բեղմնավոր ռևոլյուցիոն գործունեությունը նոր թափ է ստանում 1905—1907 թթ. ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին, երբ բոլշևիկները Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ գլխավորում, կազմակերպում և ուղղություն էին տալիս Ռուսաստանի բանվորների և գյուղացիների ռևոլյուցիոն պայքարին՝ ցարական ինքնակալությունը տապալելու, պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրա նվաճելու և բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու համար։*



*1905 թվականի գարնանը, կարճ ժամանակով արտասահմանում (Բեռլին, Մյունխեն, Հայդելբերգ) գտնվելուց հետո Սպանդարյանը շտապում է վերադառնալ Ռուսաստան, որտեղ ծավալվում և խորանում էին ռևոլյուցիոն շարժումները։ Ռուսական ռևոլյուցիայի փոթորկալից օրերին Սպանդարյանը լայն գործունեություն է ծավալում բոլշևիկների պարտիայի, Վ. Ի. Լենինի դիրեկտիվները կատարելու համար։ 1905 թվականի դեկտեմբերին նա ակտիվ մասնակցություն է ունենում Մոսկվայի պրոլետարիատի հերոսական զինված ապստամբությանը, զենքը ձեռքին կռվում է Կրասնայա Պրեսնյայի բարիկադների վրա։*

*1906 թվականի սկզբին, ռևոլյուցիոն գործունեության պատճառով վտարվելով Մոսկվայի համալսարանից, Ս. Սպանդարյանը վերադառնում է Թիֆլիս և ամբողջովին նվիրվում պարտիական աշխատանքի։*

*Այս ժամանակաշրջանում Սպանդարյանը իր մերձավոր բարեկամ ու զինակից, բոցաշունչ ռևոլյուցիոներ Ստեփան Շահումյանի հետ միասին եռանդուն գործունեություն է ծավալում Թիֆլիսում, Բաքվում, Հայաստանում և մասնավորապես, հայ բանվորների մեջ։*

*1906 թվականի օգոստոսին Սպանդարյանը և Շահումյանը ղեկավարում են Ալավերդու պղնձարդյունաբերության բանվորների խոշոր գործադուլը, որին մասնակցում էին 4.500 մարդ։*

*Պարտիայի առաջադրանքով Ստեփան Շահումյանի հետ միասին Ս. Սպանդարյանը խոշոր աշխատանք է տանում հայերեն լեզվով բոլշևիկյան մամուլ ստեղծելու ուղղությամբ։*

*1906—1907 թվականներին Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը և Ս. Կասյանը հիմնադրում ու խմբագրում են «Կայծ», «Նոր խոսք» և «Օրեր» բոլշևիկյան լեգալ թերթերը, որոնց էջերում տպագրվում են Ս. Սպանդարյանի մի շարք փայլուն հոդվածները՝ նվիրված մարքսիստական-լենինյան գաղափարների պրոպագանդային, ռևոլյուցիոն շարժումների լուսաբանմանը, մենշևիկների, դաշնակների, «սպեցիֆիկների», հնչակյանների ու այլ ռեակցիոն ուժերի մերկացմանը։*

*1906 թվականին բոլշևիկյան մամուլում հրապարակած «Դարձյալ ամնիստիայի մասին», «Հեղափոխության ալիքը բարձրանում է», «Տակտիկական հարցերից», «Դումայի շուրջը», «Սահմանադրական իլյուզիաների մասին», «Ինքնակալությունն ու գյուղացիությունը», «Խորհրդավոր լռություն» և այլ հոդվածներում Սպանդարյանը պաշտպանում և պրոպագանդում է լենինյան դրույթները ռուսական առաջին ռևոլյուցիայի բնույթի և շարժիչ ուժերի, Պետական դումայի նկատմամբ ունենալիք վերաբերմունքի, զինված ապստամբության մասին և միաժամանակ ոչնչացնող քննադատության է ենթարկում մենշևիկներին, էսեռներին, ինչպես նաև կադետներին։*

*«Հեղափոխության ալիքը բարձրանում է» հոդվածում Սպանդարյանը ցույց է տալիս, որ ռուսական ռևոլյուցիայում հեգեմոնիան պատկանում է պրոլետարիատին, որի բնական դաշնակիցը գյուղացիությունն է։ «Ամբողջ երկիրը գնալով բաժանվում է երկու բանակների, երկու թշնամի զորախմբերի—*

դեմոկրատիայի և աբսոլյուտիզմի, հեղափոխության և հակահեղափոխության,— գրում է Սպանդարյանը։ ...Երկու աշխարհները կանգնած են դեմ առ դեմ և ոչ «կադետները» և ոչ էլ մեր «ֆրանկֆուրտյան խոսարանը», չեն կարող լուծել նրանց վեճը...։ Այդ վեճը լուծվելու է դումայից դուրս, փողոցում, որտեղ պայքարի հեգեմոնիան պատկանում է գիտակից պրոլետարիատին և հեղափոխական գյուղացիությանը» (Ս. Սպանդարյան, «Հոդվածներ, նամակներ, փաստաթղթեր», Երևան, 1939 թ., էջ 20, 21)։

Ս. Սպանդարյանը պաշտպանելով ագրարային հարցի բոլշևիկյան ծրագիրը՝ գտնում էր, որ ագրարային հարցի միակ լուծումը պրոլետարիատի ղեկավարությամբ մղված պայքարի միջոցով ամբողջ հողի բռնագրավումն է հօգուտ գյուղացիության։ «Գյուղացիությունը,— գրում է Սպանդարյանը «Ինքնակալությունն ու գյուղացիությունը» հոդվածում,— որոշ ու պարզ կերպով պահանջել է—ամբողջ հողն ու ամբողջ ազատությունը, հողն առանց որևէ վճարի, ազատությունն առանց որևէ սահմանափակումի: Այդ պահանջը պաշտպանում և պրոլետարիատը» (Նույն տեղում, էջ 39)։

Ս. Սպանդարյանի բեղմնավոր ռևոլյուցիոն գործունեության կարևոր կողմերից մեկը նրա անողոք պայքարն է բուրժուական նացիոնալիզմի դեմ, հանուն պրոլետարական ինտերնացիոնալիզմի մարքսիստական-լենինյան սկզբունքների պաշտպանության, հանուն հայ բանվորների եղբայրական դաշինքի ռուս և մյուս ազգությունների պրոլետարիատի հետ։

Իրականացնելով Վ. Ի. Լենինի ցուցումներն այն մասին, որ նացիոնալիզմի ջախջախումը և բոլոր ազգերի բանվորներին մի միասնական, ինտերնացիոնալ բանակի մեջ համախմբելը պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակի անհրաժեշտ պայմանն է, Ս. Սպանդարյանը պարտիայի ղեկավարությամբ խոշոր աշխատանք է ծավալում բոլոր գույնի ու երանգի նացիոնալիստների, բուրժուա-նացիոնալիստական պարտիաների ու խմբերի մերկացման, Անդրկովկասի բազմազգ աշխատավորներին պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու ուղղությամբ։

Բուռն ատելությամբ հանդես գալով հայ ժողովրդի ոխերիմ և երիցս արգահատելի թշնամիների՝ դաշնակների դեմ, Ս. Սպանդարյանը ցույց էր տալիս, որ դաշնակները մոլորեցնում են բանվորներին, իրենց թունոտ շովինիզմով ջլատում են բանվորների միասնությունը, վնասում են հայ ժողովրդի ազատագրական պայքարին։

«...«Դաշնակցությունը»,— գրում էր Սպանդարյանը 1906 թվականի հունիսին «Կայծ» թերթում,— ամեն կերպ աշխատում է անջատել հայ բանվորությանը ուրիշ ազգերի պրոլետարիատից և, օգտվելով այդ բաժանումից, շահագործել այդ մասսան իր բուրժուական նպատակների համար» (Նույն տեղում, էջ 31)։

«Հեղափոխությունը մի թաս ջրում» հոդվածում (1906 թ. հուլիս) մերկացնելով դաշնակների ռեակցիոն շովինիզմը, կեղծ «սոցիալիստականությունն» ու «ռևոլյուցիոնականությունը», Սպանդարյանը ցույց է տալիս, որ հայ պրոլետարիատը ահագին պատմական դեր ունի կատարելու, որ նրա առաջ դրված է մեծ, պատասխանատու պարտավորություն՝ «...միացյալ ուժերով Ռուսաստանի պրոլետարիատի հետ՝ անողոք կռիվ մղելու բռնակալության դեմ...» (Նույն տեղում, էջ 51)։

Ս. Սպանդարյանը բազմիցս ընդգծել է, որ հայ ժողովրդի ազատագրման



հարցն անխզելիորեն կապված է պրոլետարիատի գլխավորած համառուսաստանյան ռևոլյուցիայի հաղթանակի հետ, հետևաբար անհրաժեշտ է ռուս մեծ ժողովրդի, ռուսական պրոլետարիատի հետ միասին միացյալ ուժերով պայքարել ցարիզմի ու կապիտալիզմի լծից ազատվելու համար։

Այս պայքարի ոգեշնչողն ու կազմակերպիչը Կոմունիստական պարտիան էր։

Պատմության ամբողջ ընթացքը անհերքելիորեն ցույց տվեց, որ հայ ժողովուրդը գնալով բոլշևիկների նշած ուղիով՝ հասավ ազգային վերածննդի ու չտեսնված ծաղկման, իսկ դաշնակները դառնալով օտարերկրյա իմպերիալիզմի գործակալներ՝ զոհաբերեցին հայ ժողովրդի շահերը միջազգային բուրժուազիայի ագրեսիվ պլաններին։

Ստոլիպինյան դաժան ռեակցիայի ամենադժվար ժամանակաշրջանում ցարական ոստիկանության կատաղի հետապնդման պայմաններում էլ Ս. Սպանդարյանը չթուլացող եռանդով շարունակում էր իր բեղմնավոր ռևոլյուցիոն գործունեությունը, ուժ ու եռանդ չէր խնայում Վ. Ի. Լենինի, պարտիայի առաջադրած խնդիրները հաջողությամբ կատարելու համար։

1907 թվականի սկզբին Կովկասյան բոլշևիկյան կենտրոնի որոշմամբ Բաքու՝ պարտիական անլեգալ աշխատանքի տեղափոխվելով, Ս. Սպանդարյանը Ստալինի, Շահումյանի, Ֆիոլետովի, Ջափարիձեի, Օրջոնիկիձեի, Ազիզբեկովի, Խանլարի, Մալիգինի, Մամեդյարովի, Սարատովեցի, Վ. Կասպարովի, Վացեկի, Բոկովի, Կազի Մոհամմեդի և Անդրկովկասի բազմազգ պրոլետարիատի մյուս մարտական ղեկավարների հետ լծվում է Բաքվի պարտիական կազմակերպության շարքերում բոլշևիզմի լիակատար հաղթությունն ապահովելու, բանվորական մասսաներին կազմակերպելու և դաստիարակելու, հակապրոլետարական պարտիաների դեմ մղվող պայքարի գործին։

Մշտական շփման մեջ գտնվելով Բաքվի առաջավոր բանվորների հետ՝ Ս. Սպանդարյանը աճում և կոփվում է որպես պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ, ծավալում է պարտիական-կազմակերպական և գրական-հրապարակախոսական լայն գործունեություն։

Բաքվում Սպանդարյանը ընտրվում է ՌՍԴԲՊ Բաքվի Կոմիտեի անդամ և Սև քաղաքի շրջանի պարտիական կազմակերպիչ։ Պարտիայի հանձնարարականով նա մասնակցում է մի շարք խոշոր գործադուլների կազմակերպմանը։

1907—1908 թվականներին Ս. Սպանդարյանն ակտիվորեն աշխատակցում է Բաքվում լույս տեսնող բոլշևիկյան «Բակինսկի պրոլետարի» և «Բակինսկի ռաբոչի» թերթերին, մարտական հոդվածներ է գրում «Գուդոկ» մասսայական բանվորական թերթում, իսկ ապա նաև «Վոլնա» բոլշևիկյան ժուռնալում և «Նովայա ռեչ» թերթում։

Ականավոր բոլշևիկ Վանո Ստուրուան Բաքվում Սպանդարյանի ռևոլյուցիոն գործունեության մասին պատմում է. «Ընկեր Տիմոֆեյի հետ ես առաջին անգամ հանդիպել եմ 1907 թվականի հոկտեմբերին Բաքվում։ Ընկեր Տիմոֆեյն այդ ժամանակ Բաքվի բոլշևիկյան կոմիտեի անդամ էր (ԲԿ) և ղեկավարում էր Բալախանու, Բիբի-Հեյբաթի, Սև քաղաքի և քաղաքի շրջանները։

Այդ ժամանակներում մենշևիկների և էսեռների դեմ կատաղի պայքար

էր մղվում։ Ընկ. Տիմոֆեյը հանդես էր գալիս մեր հակառակորդների դեմ—և վայ նրան, ով այդ պահին կկանգներ նրա առջև։ Ընկ. Տիմոֆեյը վայելում էր ամբողջ պարտիական մասսայի սերն ու համակրանքը... Կազմակերպության համար ամենածանր մոմենտներին ընկ. Տիմոֆեյը միշտ կարողանում էր մի ելք գտնել. լինի դա կալանավորված ընկերներին ազատելու, թե դրամական միջոցներ հայթայթելու և կամ թե վտանգի ենթակա ընկերների ճանապարհածախսը հոգալու համար և այլն» («Զարյա վոստոկա», 26 սեպտեմբերի, 1926 թ.)։

Ռեակցիայի ծանր տարիներին նա շրջագայում է Անդրկովկասի մի շարք քաղաքներում։ 1908 թվականի ամռանը լինում է նաև Ջալալ-օղլում (այժմ Ստեփանավան), որտեղ հանդիպում է Ստեփան Շահումյանին, Հակոբ Հակոբյանին, Դանուշ Շահվերդյանին, նրանց հետ միասին օգնում տեղում ռևոլյուցիոն աշխատանքի կազմակերպմանը։

1910 թվականի հունվարին Սպանդարյանը պարտիայի առաջադրանքով նորից անցնում է Թիֆլիս և այնտեղի բոլշևիկների հետ ձեռնամուխ լինում Թիֆլիսի բոլշևիկյան կազմակերպության ամրապնդման աշխատանքներին, նա հաջողությամբ զուգակցում է լեգալ ու անլեգալ գործունեության ձևերն ու մեթոդները։ Լինելով ՌՍԴԲՊ Թիֆլիսի Կոմիտեի, իսկ ապա պարտիայի Թիֆլիսի խմբի ղեկավար խմբակի անդամ, Սպանդարյանը խոշոր դեր է կատարում մենշևիկ լիկվիդատորների, տրոցկիստների, օտզովիստների դեմ մղված պայքարում՝ հանուն բոլշևիկյան պարտիայի պահպանման ու ամրապնդման։

Բնութագրելով Սպանդարյանի ռևոլյուցիոն գործունեության այս շրջանը, այն ժամանակ նրա հետ միասին Թիֆլիսում ակտիվ պարտիական աշխատանք կատարող Ե. Դ. Ստասովան գրել է. «Ընկեր Սպանդարյանը մեր գաղտնի գործունեության ամենախոշոր աշխատողներից մեկն էր և իր ջերմ հոգով ու բուռն եռանդով ստիպում էր իրեն հետ բոլոր շփվողներին, որպեսզի նրանք իրենց ամբողջովին նվիրաբերեն բանվորական գործին»։

Սերտ կապեր պահպանելով բանվորների հետ, Սպանդարյանը ղեկավար մասնակցություն է ունենում մի շարք պրոֆմիությունների կազմակերպման աշխատանքներին, բոլշևիկ գրաշարների հետ միասին Թիֆլիսում ստեղծում է ընդհատակյա տպարան հայերեն, ռուսերեն և վրացերեն տառերով։ Պրոպագանդիստական աշխատանք տանելով առաջավոր բանվորների մեջ՝ Սպանդարյանը նրանց ընդգրկում էր պարտիայի շարքերը, մասնակից էր դարձնում պարտիական բջիջների գաղտնի ժողովներին։

1910—1911 թվականներին Ս. Սպանդարյանն իր ձեռքն է վերցնում Թիֆլիսում հրատարակվող «Կուրյեր-կոպեյկա» լեգալ թերթի ղեկավարությունը, իր նախաձեռնությամբ և ղեկավարությամբ հրատարակում է «Լիստոկ-կոպեյկա» և «Տրուդովայա կոպեյկա» թերթերը, որտեղ հրատարակվում են նրա բազմաթիվ հիանալի հոդվածները՝ նվիրված պարտիայի քաղաքականության, գրականության, արվեստի և այլ հարցերին։

Ս. Սպանդարյանը խոշոր դեր է կատարել գրականության պարտիականության մասին լենինյան դրույթների պաշտպանության, ռուս մեծ ռևոլյուցիոն դեմոկրատական գրականության, առաջավոր գիտության պրոպագանդայի գործում։

Խոսելով ռուս գրականության և գիտության համաշխարհային պատմական



նշանակության մասին՝ Ս. Սպանդարյանը դեռևս 1911 թվականին հպարտությամբ նշում էր, որ «...Ռուս գրականությունը նվաճել ու գրավել է ամբողջ աշխարհը, իսկ ռուսական գիտությունը պատվավոր տեղ է բռնել մյուս երկրների շարքում...»։

Ս. Սպանդարյանն իր հոդվածներում քննության է առնում նաև գրականության մի շարք կարևորագույն պրոբլեմներ։ Նա Ստ. Շահումյանի, Ա. Մյասնիկյանի հետ միասին հանդիսանում է հայ իրականության մեջ մարքսիստական-լենինյան գրականագիտության հիմնադիրը։

Սպանդարյանը արժեքավոր գործեր է թողել մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության, կրթության, հանրակրթական դպրոցի մասին, խոշոր դեր է կատարել մարքսիստական մանկավարժական գաղափարների տարածման գործում։ Սպանդարյանը նշում էր, որ պետք է վերացնել դաստիարակության բուրժուական սիստեմը, որը խանգարում է հասարակության զարգացմանը և ստեղծել դաստիարակության նոր, սոցիալիստական սիստեմ՝ լիովին համապատասխան մարդկության հասարակական զարգացման առաջընթացին։ Սպանդարյանը երազում էր ընդհանուր, համաժողովրդական, ձրի և պարտադիր ուսման մասին, ընդգծում էր ուսուցման՝ արտադրական պրակտիկայի հետ զուգակցելու անհրաժեշտությունը։ Դպրոցը պետք է «պատասխանի կյանքի իսկական պահանջներին ու կարիքներին»,— գրում էր Սպանդարյանը (Հոդվածներ, Երևան, 1949 թ., էջ 122)։

Ս. Սպանդարյանի բեղմնավոր ռևոլյուցիոն գործունեության մեջ հատուկ տեղ է գրավում Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ նրա ակտիվ մասնակցությունը ՌՍԴԲՊ VI (Պրագայի) Համառուսաստանյան կոնֆերանսի նախապատրաստման ու անցկացման աշխատանքներին։

1911 թվականի օգոստոսին Սպանդարյանը մասնակցում է ՌՍԴԲՊ Թիֆլիսի խմբի ղեկավար խմբակի խորհրդակցությանը, որտեղ Համառուսաստանյան պարտիական կոնֆերանսի հրավիրման մասին զեկուցում է տալիս Լենինի հանձնարարությամբ կոնֆերանսի հրավիրման գործով արտասահմանից Ռուսաստան եկած Գ. Կ. Օրջոնիկիձեն։ Սպանդարյանը մեծ օգնություն է ցույց տալիս Օրջոնիկիձեին Լենինի դիրեկտիվները իրագործելու համար։ Թիֆլիսի բոլշևիկները հավանություն են տալիս և ողջունում կոնֆերանսի հրավիրման մասին պարտիայի Կենտկոմի 1911 թվականի հունիսյան խորհրդակցության որոշումը և ընդունում համապատասխան բանաձև, որը հրատարակվում է «Սոցիալ-դեմոկրատ» թերթում (14 սեպտեմբերի, 1911 թ.)։

Թիֆլիսի բոլշևիկները ակտիվ պայքար ծավալեցին համապարտիական կոնֆերանսի հրավիրման համար՝ ընդդեմ հակապարտիական ուժերի։

Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների աշխատանքները ղեկավարելու համար Թիֆլիսում ստեղծվում է ՌՍԴԲՊ Կովկասյան մարզային բյուրո, որի կազմում Ս. Օրջոնիկիձեի, Ստ. Շահումյանի, Ե. Ստասովայի և ուրիշների հետ միասին մտնում է նաև Ս. Սպանդարյանը և խոշոր դեր կատարում պարտիական աշխատանքի հետագա ընդլայնման գործում։

1911 թվականի սեպտեմբերին Ս. Սպանդարյանը որպես Թիֆլիսի բոլշևիկյան կազմակերպության ներկայացուցիչ, մտնում է VI կոնֆերանսի հրավիրման Ռուսաստանյան կազմակերպական հանձնաժողովի (ՌԿՀ) կազմի մեջ և մասնակցում է այդ հանձնաժողովի խորհրդակցությանը, որը տեղի ունեցավ Գ. Կ. Օրջոնիկիձեի գլխավորությամբ՝ Բաքվում։ Խորհրդակցությանը Սպան-

դարյանը հաղորդում է տալիս Թիֆլիսի բոլշևիկյան խմբի գործունեության մասին։ Այնուհետև Սպանդարյանը մեկնում է Մոսկվա, Պետերբուրգ, Մերձբալթյան երկրները՝ պայքար կազմակերպելով պարտիական կոնֆերանսի հրավիրման համար։ Պետերբուրգում նա ակտիվ մասնակցություն ունեցավ III Պետական դումայի սոցիալ-դեմոկրատական ֆրակցիայի աշխատանքներին, բոլշևիկյան «Զվեզդա» լեգալ թերթի խմբագրմանը, «Յունիուս» ստորագրությամբ մի շարք հոդվածներով հանդես եկավ նրա էջերում։

Վ. Ի. Լենինը բարձր գնահատական է տվել Ռուսաստանյան կազմակերպական հանձնաժողովի գործունեությանը և այդ գործում Թիֆլիսի ու Բաքվի կազմակերպությունների հսկայական դերին։ Այդ մասին Վ. Ի. Լենինը 1912 թվականին գրել է, որ Ռուսաստանյան կազմակերպական հանձնաժողովը, որը ապահովեց Պրագայի կոնֆերանսի գումարումը, «...Կիևի, Եկատերինոսլավի, Թիֆլիսի, Բաքվի և Եկատերինբուրգի կազմակերպությունների գործն էր...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 17, էջ 671)։

1912 թվականի հունվարին Ս. Սպանդարյանը գնում է Փարիզ ու ապա Պրագա և մասնակցում բոլշևիկյան պարտիայի պատմության մեջ հսկայական նշանակություն ունեցած VI կոնֆերանսի աշխատանքներին։

Այստեղ նա հանդիպում է ունենում Վ. Ի. Լենինի հետ, աշխատում է մեծ Լենինի անմիջական ղեկավարությամբ։

Պրագայի կոնֆերանսում Ս. Սպանդարյանը զեկուցում է տալիս Թիֆլիսի, Սուխումի, Քութայիսի, Փոթիի և Գորիի պարտիական կազմակերպությունների աշխատանքների մասին, մերկացնում է Թիֆլիսի մենշևիկ-լիկվիդատորների կոնտրռևոլյուցիոն վարքագիծը (տե՛ս «Սոցիալ-դեմոկրատ» թերթը, № 26, 1912 թ.)։ Կոնֆերանսն ընտրում է բոլշևիկյան պարտիայի Կենտրոնական Կոմիտե Վ. Ի. Լենինի գլխավորությամբ։ Կոնֆերանսը Սպանդարյանին, Գ. Կ. Օրջոնիկիձեի, Ֆ. Ի. Գոլոշչեկինի և ուրիշների հետ միասին, ընտրում է պարտիայի Կենտրոնական Կոմիտեի անդամ։ Ստեղծվում է նաև պրակտիկ կենտրոն՝ Ռուսաստանում ռևոլյուցիոն շարժումները ղեկավարելու համար (Կենտկոմի Ռուսական բյուրո), որի մեջ մտնում են Յա. Մ. Սվերդլովը, Ի. Վ. Ստալինը, Ս. Ս. Սպանդարյանը, Գ. Կ. Օրջոնիկիձեն, Մ. Ի. Կալինինը և ուրիշներ։

Պրագայի կոնֆերանսից հետո Սպանդարյանը մեկնում է Լայպցիգ և մասնակցում ՌՍԴԲՊ Կենտկոմի անդամների՝ III Պետական դումայի սոցիալ-դեմոկրատական ֆրակցիայի ներկայացուցիչների հետ միասին հրավիրված խորհրդակցությանը, որտեղ Լենինը հաղորդում է անում Պրագայի կոնֆերանսի արդյունքների մասին։ Խորհրդակցությունում Ռուսաստանի կազմակերպական հանձնաժողովի գործունեության վերաբերյալ զեկուցում է Սպանդարյանը։

Արտասահմանում գտնված ժամանակ Սպանդարյանը կատարում է Լենինի մի շարք հանձնարարությունները և ապա վերադառնում Ռուսաստան. լինում է Լատիշական երկրամասում, Պետերբուրգում, Մոսկվայում, Բաքվում, Թիֆլիսում, զեկուցումներ է տալիս Պրագայի կոնֆերանսի արդյունքների մասին, մասնակցում IV Պետական դումայի ընտրությունների նախընտրական կամպանիային, մի շարք հոդվածներով հանդես գալով «Զվեզդա» թերթի էջերում («Նամակ Կովկասից», «IV դումայի ընտրությունների առթիվ» և այլն)։

Ցարական պահնորդական բաժանմունքի լրտեսների համար աննկատելի



չէր մնում Ս. Սպանդարյանի բեղմնավոր ռևոլյուցիոն գործունեությունը։ Նրանք կրնկակոխ հետևում էին անվեհեր ռևոլյուցիոներին։

Հայտնի է, որ դեռևս 1904 թվականի դեկտեմբերին Սպանդարյանը Մոսկվայում ուսանողական ցույցերին մասնակցելու հետևանքով հայտնի դարձավ ոստիկանությանը։ 1905 թվականին նա արդեն գտնվում էր Կովկասի պահնորդական բաժանմունքի հատուկ հսկողության տակ՝ «Օվրաժնի» մականունով։ 1907, 1909 և 1912 թվականներին Սպանդարյանը մի քանի անգամ ձերբակալվում է և տարբեր ժամկետներով բանտարկվում։

Պահպանված ժանդարմական բազմաթիվ գրագրություններում շատ փաստեր կան Սպանդարյանի ռևոլյուցիոն-պարտիական բեղմնավոր գործունեության մասին։ Մոսկվայի պահնորդական բաժնի 1912 թվականի փետրվարի 9-ի զեկուցագրում նշվում է, որ Սպանդարյանը «թունդ-լենինյան» է, «1908—1909 թվականներին ակտիվորեն գործում էր Բաքվի ընդհատակյա պարտկազմակերպության մեջ և աշխատում հենց այդ ժամանակաշրջանում տապալված տեղական գաղտնի մեծ տպարանում... «Տիմոֆեյը» գաղտնի աշխատանքներ է կատարել նաև Մոսկվայում և Ս. Պետերբուրգում։ Շատ լուրջ էս-դեկ է։ Եղել է ՌՍԴԲՊ համապարտիական կոնֆերանսի դելեգատներ ընտրելու «Ռուսական կազմակերպական հանձնաժողովի» անդամ» (Ս. Սպանդարյան, Հոդվածներ, նամակներ, փաստաթղթեր, էջ 365—366)։

Ստոր մատնությամբ 1912 թվականի մայիսին Ս. Սպանդարյանը Բաքվում ձերբակալվում է և բանտարկվում կենտրոնական բանտում։ Շուտով նա բերվում է Թիֆլիս և կալանավորվում Մետեխի բանտում։ Սա Սպանդարյանի վեցերորդ բանտարկությունն էր։

Լենինը մեծ ցավով ընդունեց Սպանդարյանի ձերբակալման լուրը։ Ն. Կ. Կրուպսկայայի հետ նա այցելում է Սուրենի՝ այն ժամանակ Փարիզում գտնվող ծեր և հիվանդ հորը, նամակ է գրում Բեռլին՝ Սպանդարյանի ընտանիքին մտերիմ Ոսկի Տեր-Հովհաննիսյանին (Կոմպարտիայի անդամ 1918 թվականից, հայ անվանի գրող Մուրացանի կինը), Սուրենին և նրա հորը նյութական օժանդակություն ցույց տալու, նրանց օգնության գործը կազմակերպելու մասին։ «Հույս ունեմ, որ Դուք կանեք, ինչ կարող եք, երկու Սպանդարյանների համար և այդ մասին մի երկտողով կհայտնեք ինձ»,— գրում էր Լենինը («Ленинский сборник», т. 13, стр. 206)։

1913 թվականի հունիսին Ն. Կ. Կրուպսկայան Բեռլինում գտնվող ականավոր բոլշևիկ Սլավա Կասպարովին (Վլադիսլավ Գասպարյան) գրում էր Ծպանդարյանին նյութական օժանդակություն ցույց տալու անհրաժեշտության մասին։ «Գուցե մի որևէ բան գիտե՞ք Տիմոֆեյի և ընկ-յան մասին,— գրում էր Կրուպսկայան իր նամակներից մեկում։— Չե՞ք մտանաչի արդյոք այն ընկերներին (ավելի ճիշտ՝ նրանց հարազատներին), որոնք նստած են բանտում կամ գտնվում են աքսորներում և կարիք ունեն օգնության»։

Ավելի քան մեկ տարի բանտում պահվելուց հետո աննկուն բոլշևիկը դատվում է Ելենա Ստասովայի, Վերա Շվեյցերի, Մարիա Վոխմինայի, Վասիլ Խաչատրյանի և ուրիշների հետ և ցմահ աքսորի դատապարտվելով, շղթայված, էտապով ուղարկվում է Սիբիր։ Ս. Սպանդարյանը ժանդարմական խիստ հսկողության տակ բնակեցվում է Ենիսեյսկի նահանգի Կանսկի գավառի Ինոկենտևսկայա գյուղում։

Աքսորավայրի դաժան պայմաններում էլ Սպանդարյանը չի ընդհատում իր ռևոլյուցիոն գործունեությունը: Այնտեղ նա աքսորական բոլշևիկների հետ միասին շարունակում է եռանդուն աշխատանք ծավալել:

Իմպերիալիստական պատերազմի տարիներին գտնվելով հեռավոր աքսորավայրում, Ս. Սպանդարյանը լենինյան ինտերնացիոնալիստական դիրք է գրավում պատերազմի, խաղաղության և ռևոլյուցիայի հարցերում: Նա շարունակում է իր անողոք պայքարը ցարիզմի, բուրժուազիայի, հակաբոլշևիկյան պարտիաների դեմ: Այդ ժամանակ Տուրուխանյան երկրամաս էին աքսորված բոլշևիկյան պարտիայի ականավոր գործիչներ՝ Յա. Մ. Սվերդլովը, Ի. Վ. Ստալինը, Ե. Դ. Ստասովան, Ֆ. Ի. Գոլոշչեկինը, Գ. Ի. Պետրովսկին և ուրիշներ: Նրանց հետ միասին 1915 թվականի հուլիսին Ս. Սպանդարյանը մասնակցում է սոցիալ-դեմոկրատ քաղաքական աքսորականների Մոնաստիրսկոյե գյուղում տեղի ունեցած ժողովին, որտեղ քննարկվում է դեպուտատ բոլշևիկների (Ա. Ե. Բադաև, Մ. Կ. Մուրանով, Գ. Ի. Պետրովսկի, Ֆ. Ն. Սամոյլով, Ն. Ռ. Շագով) հաշվետվությունը IV Պետական դումայի ֆրակցիայի գործունեության մասին: Այդ հարցի կապակցությամբ ժողովն ընդունում է Սվերդլովի և Սպանդարյանի գրած բանաձևը, որը ուղարկվում է Լենինին և տարածվում տեղական պարտիական կազմակերպություններում:

Տուրուխանյան աքսորավայրից Ս. Սպանդարյանը Վ. Ի. Լենինի և Ն. Կ. Կրուպսկայայի, բոլշևիկյան շատ գործիչների, տեղական պարտիական կազմակերպությունների հետ նամակագրական կապ էր պահպանում: Այդ նամակներում նա իր և մյուս բոլշևիկների անունից հայտնում է մեծ առաջնորդին պրոլետարական գործի հաղթանակի նկատմամբ իրենց խոր հավատի մասին: «Թանկագին ընկերներ,— գրում է Սպանդարյանը 1915 թվականի օգոստոսին Լենինին և Կրուպսկայային:— Ողջույն Ձեզ բևեռային երկրներից: Մի քանի անգամ գրել ենք, բայց չենք իմանում, թե Ձեզ լուրեր հասե՞լ են այստեղից: Մենք մեզ առույգ ենք զգում և տրամադրված ենք լավատեսորեն: Մենք ընդհանրապես լավատես ենք»: Սպանդարյանը մեծ հետաքրքրությամբ հետևում էր Անդրկովկասում ծավալվող իրադարձություններին, խոր ապրումներ էր ունենում Թուրքական ենիչերիների կողմից կոտորվող բազմահազար հայերի ճակատագրի համար: «Սիրտս կսկծում է, արյունոտվում,— գրում էր Սպանդարյանը աքսորավայրից ուղարկած իր նամակներից մեկում,— երբ կարդում եմ այն հազարավոր փախստականների մասին, այն խեղճ ու տառապյալ, անլուր տանջվող և արյունոտ ժողովրդի բռնաբարված կանանց ու մորթոտված երեխաների մասին: Ահա հայ ազգային քաղաքականությունը, ահա ողորմություն հայցող դաշնակցականների հեղափոխությունը, Տաճկահայաստանի ազատությունը» («Կոմունիստ», Բաքու, № 220, 1926 թ.):

Սպանդարյանը խիստ կերպով դատապարտում էր դաշնակների ավանտյուրիստական քաղաքականությունը և, միաժամանակ, ուրախությամբ էր նշում ռևոլյուցիոն շարժումների, բոլշևիկյան կազմակերպությունների հաջողությունները Կովկասում: «Իր հեռավորությունից Սուրենը միշտ հետաքրքրվում էր կովկասյան գործերով,—գրել է Ստ. Շահումյանը 1916 թվականին,— և երբ այստեղից մի լավ լուր էր ստանում, անչափ ուրախություն ու վստահություն էին արտահայտում նրա նամակները» (Ստ. Շահումյան, Երկեր, հ. 2, էջ 387):





Աքսորավայրում Սպանդարյանի հետ գտնված պարտիական ընկերները պատմում են, որ նա միշտ խոր հավատով էր խոսում պրոլետարական ռևոլյուցիայի գալիք հաղթանակի մասին: «Պետք է պատրաստվել մարտերին,— ասում էր Սուրենը,— նրանք լեռների հետևում չեն»,— նշում է Յա. Շումյացկին (Я. Шумяцкий, «Туруханка», 1925 г., стр. 132):

1914 թվականի դեկտեմբերին իր երեխաներին ուղղված նամակում Սպանդարյանը գրում էր. «Կգա ժամանակ, մշուշը կցրվի, վրա կհասնի արցունքների ծովի, արյան օվկիանոսների, միլիոնավոր խորտակված կյանքերի հատուցման ժամը» (Ս. Սպանդարյան, Հոդվածներ, նամակներ, փաստաթղթեր, Երևան, 1939 թ., էջ 337):

Զատնելով ցարական աքսորավայրի դաժան պայմանները՝ Ս. Սպանդարյանը 1916 թվականի սեպտեմբերի 24-ին վախճանվում է, 34 տարին դեռ չբոլորած: Նրա վերջին խոսքերն էին.— «Ռևոլյուցիան կանգնած է 1917 թվականի շեմքին. կանգնեցեք Լենինի դրոշի տակ»:

Կոմունիստական պարտիայի ականավոր գործչի մահվան լուրը արագությամբ տարածվեց ամբողջ Ռուսաստանում: Այդ մասին գրվում է մի շարք պարտիական թերթերում: Թիֆլիսում լույս տեսնող «Պայքար» թերթը 1916 թվականի հոկտեմբերի 9-ին տպագրում է Ստ. Շահումյանի «Մեր Սուրենը» հոդվածը, որի մեջ Սպանդարյանը բնորոշվում է որպես բանվոր դասակարգի ազատագրական պայքարի գործին, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներին մինչև վերջ նվիրված պարտիական ականավոր գործիչ:

«Սուրենը չկա այլևս և այդքան երիտասարդ հասակում,—գրում էր Ստ. Շահումյանը,— խոնարհվենք մեր ընկած ընկերոջ հիշատակի՛ առաջ... և շարունակենք այն գործը, որի համար նա ապրեց և մեռավ:

Դա կլինի ամենալավ հարգանքը Սուրենի հիշատակին» (Երկեր, հ. 2, էջ 387):

Մարտնչող պրոլետարական ինտերնացիոնալիստի մահը մեծ վիշտ պատճառեց առանձնապես Անդրկովկասի բազմազգ պրոլետարիատին, որի ինտերնացիոնալ դաստիարակության, քաղաքական պայքարի ղեկավարության գործում Սպանդարյանը այնքան ջանք էր դրել:

Մի խումբ ադրբեջանական բանվորներ Բաքվից խոր կսկիծով գրում էին. «Երբ իմացանք Սուրեն Սպանդարյանի մահվան լուրը, անչափ վշտացանք... Ծանր է կորուստը մանավանդ այժմ, երբ ավելի քան կարիք կա Սուրենի նման հեղափոխական միջազգային գործիչների, որոնք իրենց ազդու խոսքերով և համոզմունքներով կարող էին փափկացնել շատ քար սրտեր ու լուսավորել շատ մութ ուղիներ:

...Մենք, որ ճանաչում ենք նրան և գիտենք, թե ինչ գաղափարների էր նա ծառայում և ինչ ոգևորությամբ առաջ տանում իր գաղափարական-հասարակական գործունեությունը, որին և զոհ գնաց, խոնարհվում ենք նրա աճյունի առաջ և հարգանքով հիշում նրա հիշատակը» («Պայքար», № 41, 1916 թ.):

Այստեղ արտահայտված է Բաքվի բոլոր բանվորների ջերմ սերը ականավոր ղեկավարներից մեկի նկատմամբ: Այսպես էին մտածում նաև հայ, ռուս, վրացի և այլ ազգի բանվորները: «Բաքվի բանվորությունը, առանց ազգի խտրության՝ չի մոռանա ընկեր Տիմոֆեյին»,— գրում էր Անդրկովկասի բանվորական շարժման հնագույն ու ականավոր գործիչ Մելիք Մելիքյանը («Դեդուշկա»):

XX դարի սկզբին մտնելով Լենինի մեծ պարտիայի շարքերը, ակտիվ, ղեկավար մասնակցություն ունենալով բանվոր դասակարգի ազատագրական պայքարին, Կոմունիստական պարտիայի ստեղծման գործին, ապրելով և աշխատելով համաշխարհային պրոլետարիատի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի հետ, Սպանդարյանը դարձավ մեր պարտիայի աչքի ընկնող գործիչներից մեկը և վախճանվեց պարտիայի Կենտրոնական Կոմիտեի անդամի իր մարտական պոստում:

Երախտապարտ սովետական ժողովուրդը սրբությամբ է պահում Սպանդարյանի հիշատակը: Կառավարության որոշմամբ նրա անունով են կոչվել բնակավայրեր, դպրոցներ, փողոցներ, դրվել են գեղեցիկ հուշարձաններ՝ Անդրկովկասում և Ռուսաստանում: Մոնաստիրսկոյե գյուղի այն տունը, որտեղ ապրել է Սպանդարյանը 1914—1916 թվականներին աքսորում եղած ժամանակ, վերածվել է տուն-թանգարանի, հետևյալ մակագրությամբ. «Այս տան մեջ աքսորված ժամանակաշրջանում 1914—1916 թթ. ապրել է բոլշևիկների պարտիայի լավագույն կազմակերպիչներից մեկը՝ Սուրեն Սպանդարի Սպանդարյանը»: Տուն-թանգարանի առջևից անցնող փողոցը կրում է Սպանդարյանի անունը: Հուշատախտակներ են փակցված Սպանդարյանի կյանքի ու գործունեության հետ կապված շատ տեղերի վրա:

Համատեղ աշխատանքից ու պայքարից Սպանդարյանին հիշում են հին բոլշևիկներ, ռևոլյուցիոներներ, ինչպես նաև այն վայրերի հին բնակիչները, որտեղ ապրել ու աշխատել է կոմունիզմի խիզախ մարտիկը: Նրանց պահած հիշողությունները կրկին ու կրկին վկայում են Սպանդարյանի աննկուն կամքի, Լենինի գործին անսահման հավատարմության, բոցավառ հայրենասիրության, ժողովրդի երջանկության համար մղվող պայքարին մինչև վերջը նրա նվիրվածության մասին:

Ս. Սպանդարյանը չտեսավ պրոլետարական հաղթական ռևոլյուցիան, սոցիալիստական հասարակարգը, որի համար նա անձնվիրաբար պայքարեց իր ամբողջ գիտակից կյանքում, որին նա նվիրեց իր ողջ ուժերն ու անսպառ եռանդը: Բայց Սպանդարյանը խորապես համոզված էր կոմունիստական հասարակարգի հաղթանակի մեջ: Կոմունիզմի անվանի զինվորի պայծառ հիշատակը ոգեշնչող օրինակ է նոր կյանք կառուցող միլիոնների համար:

---

# ԳՆԱԳՈՅԱՑՄԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ ՍՍՌՄ-ՈՒՄ

Մ. ԱԴՈՆՑ

Սոցիալիստական հասարակարգը կապիտալիզմից ժառանգում է մի շարք
տնտեսական կատեգորիաներ՝ ապրանք, փող, արժեք, գին և այլն: Սոցիալիզմի
օրոք մնում է ապրանքային արտադրությունը՝ իր արժեքային կատեգորիա-
ներով:

Ըստ Մարքսի, ապրանքային արտադրության գոյությունը պահանջում է
երկու պայման՝ աշխատանքի հասարակական բաժանում և արտադրության
միջոցների սեփականության որոշակի ձև: Այդ երկու պայմաններն էլ գոյու-
թյուն ունեն սոցիալիզմի ժամանակ: Սոցիալիստական հասարակարգում աշ-
խատանքի հասարակական բաժանումը քանի գնում խորանում է, արտադրու-
թյան մասնագիտացումը և կոոպերացումը զարգանում ու կատարելագործվում
են: Աշխատանքի հասարակական բաժանում գոյություն է ունենալու նաև կո-
մունիզմի օրոք, բայց այն ժամանակ ապրանքային արտադրություն չի լինի:
Ընդհանրապես աշխատանքի հասարակական բաժանումը, հանդիսանալով ապ-
րանքային արտադրության նախապայմանը, կարող է գոյություն ունենալ նաև
առանց ապրանքային արտադրության:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների կարծիքով ապրանքային արտադրու-
թյուն կարող է գոյություն ունենալ ո՛չ միայն մասնավոր սեփականության,
այլև արտադրության միջոցների նկատմամբ հանրային սեփականության տի-
րապետության պայմաններում: Մարքսն իր անմահ «Կապիտալ»-ում ցույց է
տվել, որ ապրանքային արտադրությունն առաջացել է դեռ նախնադարյան
հասարակարգի վերջին շրջանում, երբ ապրանքափոխանակությունը կատար-
վում էր ոչ թե առանձին ապրանք արտադրողների, այլ համայնքների միջև:

Կոմունիզմի առաջին փուլում սոցիալիստական սեփականությունն իր
երկու ձևերով, որոնք կազմում են սոցիալիստական արտադրական հարաբե-
րությունների հիմքը, կանխորոշում է ապրանքային արտադրության անհրա-
ժեշտությունը: Քանի որ տնտեսության պետական սեկտորում արտադրության
միջոցները և արտադրանքը պետական համաժողովրդական սեփականություն
են հանդիսանում, իսկ կոլտնտեսություններում՝ խմբային-կոոպերատիվ սե-
փականություն, այդ պատճառով էլ այդ երկու սեկտորների միջև տնտեսական
կապերն իրականանում են առքի ու վաճառքի ձևով, որի հետևանքով արտա-
դրանքն ընդունում է ապրանքային ձև:

Սակայն ապրանքային արտադրության անհրաժեշտությունը միայն սո-
ցիալիստական սեփականության երկու ձևերի գոյությամբ չի պայմանավոր-
ված: Այդ երևում է նրանից, որ սոցիալիստական հասարակարգում ապրանքա-
փողային հարաբերություններն արտահայտում են ո՛չ միայն սոցիալիստական
սեփականության երկու ձևերի միջև եղած կապերը, այլև այն տնտեսական

կապերը, որոնք գոյություն ունեն պետական ձեռնարկությունների միջև, կոլտնտեսությունների միջև, պետական ու կոոպերատիվ կոլտնտեսային սեփականության և անձնական սեփականության միջև և, վերջապես, սոցիալիզմի երկրների, ինչպես նաև սոցիալիզմի համաշխարհային սիստեմի և կապիտալիստական աշխարհի միջև։

Վերջին տարիներս մեր տնտեսագիտական գրականության մեջ տարածված էր այն կարծիքը, որ իբր թե սոցիալիստական հասարակարգում ապրանքներ են միայն անձնական սպառման առարկաները, իսկ արտադրության միջոցներն ըստ էության ապրանքներ չեն։ Այդ տեսակետն այժմ ժխտվում է։ Սոցիալիստական արտադրության երկու ստորաբաժանումները հանդիսանում են մեկ միասնական տնտեսության բաղադրիչ մասերը։ Ասել, թե առաջին ստորաբաժանման արտադրանքը զուրկ է ապրանքային բնույթից, իսկ երկրորդ ստորաբաժանման արտադրանքը ապրանքային բնույթ ունի, կնշանակի ժխտել սոցիալիստական վերարտադրության միասնական բնույթը։ Սոցիալիստական արտադրության երկու ստորաբաժանումները սերտորեն կապված են իրար հետ. արտադրության միջոցները վերջին հաշվով ստեղծվում են նրա համար, որպեսզի նրանց օգնությամբ սպառման առարկաներ արտադրեն։ Անձնական սպառման առարկաների արժեքի մոտ 3/4 մասը կազմում է հումքի և այլ արտադրամիջոցների արժեքը։ Եթե արտադրության միջոցներն արժեք չունենային, ապա նրանց օգնությամբ արտադրվող սպառման առարկաները ևս արժեք չէին ունենա, այսինքն՝ ապրանք չէին հանդիսանա։ Իսկ եթե ընդունենք, որ արտադրության միջոցները արժեք ունեն, այդ դեպքում պիտի համաձայնվենք, որ նրանք ևս ըստ էության ապրանքներ են։ Այսպիսով, սոցիալիստական հասարակարգում ապրանքային բնույթ ունեն թե՛ սպառման առարկաները և թե՛ արտադրության միջոցները։

Ապրանքային արտադրության գոյությունը կանխորոշում է արժեքի օրենքի գործողությունը սոցիալիստական տնտեսության մեջ։ Արժեքի օրենքը պահանջում է, որպեսզի ապրանքների արտադրությունը և իրացումը կատարվեն նրանց արտադրության համար պահանջվող հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումներին համապատասխան։

Արժեքի օրենքը գործում է սոցիալիստական էկոնոմիկայի բոլոր ոլորտներում։ Արտադրամիջոցների ապրանքային բնույթը ժխտող տնտեսագետները գտնում էին, որ արժեքի օրենքը գործում է միայն շրջանառության ոլորտում, իսկ արտադրության ոլորտում փողը կատարում է տեխնիկական ֆունկցիա։ Այն որպես հաշվային միավոր օգտագործվում է ինքնարժեքի մեծությունը և արտադրության ծավալը հաշվարկելու համար։ Այդ բոլորի հետևանքով թերագնահատվում էր փողի, գնի, ինքնարժեքի և տնտեսական հաշվարկի դերը սոցիալիստական տնտեսության մեջ։

Սոցիալիստական հասարակարգում արժեքի օրենքի գործողության ոլորտը սահմանափակ է։ Եթե կապիտալիստական էկոնոմիկայի բոլոր ոլորտներում՝ թե՛ արտադրության և թե՛ շրջանառության մեջ, արժեքի օրենքը կարգավորիչի դեր է կատարում, ապա սոցիալիստական արտադրության կարգավորիչը ոչ թե արժեքի օրենքն է, այլ ժողովրդական տնտեսության պլանաչափ պրոպորցիոնալ զարգացման օրենքը։ Սոցիալիստական հասարակարգում արժեքի օրենքը որոշ սահմաններում կարգավորիչի դեր է կատարում շրջանառության ոլորտում։ Սակայն այստեղ ևս արժեքի օրենքի հետ միասին կարգավորիչի



դեր են կատարում նաև սոցիալիզմի մյուս տնտեսական օրենքները, հատկապես ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման օրենքը։

Ինչպես որ հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքով ստեղծված արժեքն արտահայտվում է փողային ձևով, այնպես էլ արժեքի օրենքի գործողությունը երևան է գալիս գների օրենքի միջոցով։ Այդ պատճառով էլ արժեքի օրենքի գործողության մեխանիզմը բացահայտելու համար առաջին հերթին պետք է լուսաբանել գնագոյացման պրոբլեմը։

* * *

Արտադրության, շրջանառության, բաշխման պրոցեսների ճիշտ պլանավորումը, սոցիալիստական տնտեսավարության հետագա կատարելագործումը պահանջում են ճիշտ կերպով օգտագործել արժեքի օրենքը և արժեքային կատեգորիաները՝ փողը, գինը, ինքնարժեքը, շահույթը և այլն։

Գինը սոցիալիստական հասարակարգում իր էությամբ արմատապես տարբերվում է կապիտալիստական հասարակարգում գոյություն ունեցող գնից։ Կապիտալիզմի պայմաններում գինն արտահայտում է շահագործողական հարաբերություններ։ Սոցիալիզմի պայմաններում գինը և արժեքային մյուս կատեգորիաները օգտագործվում են սոցիալիստական արտադրության զարգացման ու բնակչության բարեկեցության բարձրացման նպատակին, արտահայտելով սոցիալիստական արտադրական հարաբերությունները։

Գնի գոյությունը սոցիալիստական հասարակարգում պայմանավորված է ապրանքային արտադրության առկայությամբ և արժեքի օրենքի գործողությամբ։

Սոցիալիստական հասարակարգում արժեքի օրենքի գործողությունը և գնագոյացումը տեղի են ունենում ոչ թե տարերայնորեն, այլ գիտակցված ձևով, պլանային կարգով։ Մեզ մոտ արտադրության միջոցների հանրային սեփականությունը, ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման օրենքը, պետական պլանները և արտաքին առևտրի մոնոպոլիան վերացրել են գների ազատ խաղը։ Սոցիալիստական պետությունը, սահմանելով պլանային գներ, վերացրել է արժեքի օրենքի տարերային գործողության վնասակար հետևանքները։ Մեզ մոտ գինը դարձել է ժողովրդական տնտեսության պլանաչափ կազմակերպման, նոր հասարակարգի կառուցման կարևոր տնտեսական լծակ։

Սոցիալիստական պետության գների քաղաքականությունը ամենասերտ կերպով կապված է ազգային եկամտի բաշխման և օգտագործման, հասարակական արտադրության երկու ստորաբաժինների զարգացման տեմպերի, տեխնիկական առաջընթացի, կուտակման ֆոնդերի ստեղծման, նյութական շահագրգռվածության խթանների օգտագործման, փողի շրջանառության կարգավորման և ռուբլու գնողունակության բարձրացման, բնակչության նյութական պայմանների բարելավման, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման և այլնի հետ։ Սոցիալիստական էկոնոմիկայի մեջ գնի ունեցած դերին համապատասխանում է նրա կառուցվածքը։

Անձնական սպառման առարկաների գնի բաղադրամասերն են՝ ինքնարժեքը, շահույթը, շրջանառության հարկը և առևտրական վերադիրները։ Բացի շրջանառության հարկից, բացառությամբ նավթամթերքների և էլեկտրաէներ-

գիայի, որոնց գինը ևս իր մեջ շրջանառության հարկ է պարունակում, արտադրության միջոցների գինը նույն էլեմենտներն ունի։

Ինքնարժեքն իր մեջ կրում է ծախսված արտադրամիջոցների արժեքը և աշխատավարձի վճարումները։ Շահույթն ու շրջանառության հարկը զուտ եկամտի հիմնական տարրերն են, որոնք օգտագործվում են կուտակման և հասարակական սպառման համար։

Առևտրական վերադիրներն օգտագործվում են շրջանառության ծախսերը ծածկելու, առևտրական կազմակերպությունների հիմնական և շրջանառու ֆոնդերն ավելացնելու և շահույթ կազմավորելու համար։

Այսպիսով, գնի յուրաքանչյուր բաղադրամասն օգտագործվում է որոշակի նպատակի համար, որը բխում է ընդլայնված սոցիալիստական վերարտադրության պահանջներից։ Ինքնարժեքի տեսակարար կշիռը գնի մեջ մեծ է, և ձեռնարկության մեծածախ գինը սահմանելիս ելնում են տվյալ արտադրանքի ինքնարժեքից, նրան ավելացնելով որոշ տոկոսի շահույթ։ Գնի մեջ ինքնարժեքի մեծությունը փոխվում է, որի հետ միասին փոխվում է շահույթի մեծությունը։ Ինքնարժեքի իջեցման հետևանքով աճում են հասարակական զուտ եկամուտը և սոցիալիստական կուտակման ֆոնդերը։ ՍՍՌՄ զարգացման վեցերորդ հնգամյա պլանի համաձայն ինքնարժեքի իջեցումից պետք է ստացվի 500 միլիարդ ռուբլու տնտեսում, որը կկազմի հնգամյակի համար նախատեսված կապիտալ ներդրումների արժեքի կեսից ավելին։

Շահույթի ու շրջանառության հարկի սոցիալ-տնտեսական էությունը նույնն է, նրանք իրարից տարբերվում են միայն օգտագործման բնույթով։ Շահույթի հիմնական մասն օգտագործվում է ձեռնարկության կարիքների համար՝ կապիտալ ներդրումների, շրջանառու միջոցների պակասը լրացնելու, ձեռնարկության ֆոնդ կազմելու և այլնի համար։ Այդ բոլոր ծախսումները կատարելուց հետո շահույթի մնացած ավելցուկը փոխանցվում է պետական բյուջե։

Շրջանառության հարկը կամ, ինչպես անվանում են, պետության կենտրոնացած զուտ եկամուտը ամբողջովին մուծվում է պետական բյուջե։

Գների տվյալ մակարդակի պայմաններում կարող է շրջանառության հարկի հաշվին տեղի ունենալ շահույթի աճ և ընդհակառակը, դրանից զուտ եկամտի մեծությունը չի փոխվի։ Օրինակ, 1949 թվականին արդյունաբերական ապրանքների մանրածախ գները թողնելով նույնը, կատարվեց ձեռնարկության մեծածախ գների բարձրացում։ Դրա հետևանքով շահույթի մեծությունն աճեց, իսկ շրջանառության հարկի մեծությունը համապատասխանորեն նվազեց, որի կապակցությամբ պետական բյուջեի եկամուտների մեջ շրջանառության հարկի տեսակարար կշիռը 60,3 տոկոսից իջավ 56,1 տոկոսի, իսկ շահույթի տեսակարար կշիռը 6,6 տոկոսից բարձրացավ 9,7 տոկոսի։

Գների պլանավորման ժամանակ անպայման հաշվի է առնվում, թե գների այս կամ այն փոփոխությունն ինչ ազդեցություն կունենա բնակչության տարբեր խմբերի եկամուտների վրա։ Չի կարելի այնպիսի գներ սահմանել, որոնք հանգեցնեն կոլտնտեսականների եկամուտների գերազանցմանը բանվորների եկամուտների նկատմամբ։ Այդ նախ և առաջ կհակասեր ծանր արդյունաբերության առավել զարգացման պարտիայի վարած քաղաքականությանը և երկրորդ՝ կխախտեր ըստ աշխատանքի բաշխման սկզբունքը, այն պարզ պատճառով, որ, ընդհանուր առմամբ, բանվորների աշխատանքն ավելի որակյալ ու



բարդ է, քան կոլտնտեսականների աշխատանքը։ Միաժամանակ չպետք է գյուղատնտեսական մթերքների այնպիսի ցածր գներ սահմանել, որը հասցնի կոլտնտեսականների եկամուտների նվազեցմանը։ Դա նրան կզրկի նյութական շահագրգռվածության խթաններից և բացասաբար կազդի գյուղատնտեսության զարգացման վրա։

Գների մակարդակը կապակցվում է անվանական աշխատավարձի մակարդակի հետ և նրանց միջև սահմանվում ճիշտ հարաբերակցություն։ Բնակչության եկամուտները կարելի է ավելացնել կամ գների իջեցմամբ, կամ անվանական աշխատավարձի բարձրացմամբ և կամ էլ այդ երկու ձևերի զուգակցմամբ։ 1947 թվականից մինչև հինգերորդ հնգամյակի վերջերը բնակչության եկամուտների ավելացման գլխավոր միջոցը մանրածախ գների իջեցումն էր, իսկ վեցերորդ հնգամյակում աշխատավորների եկամուտներն աճում են գերազանցապես նրանց դրամական եկամուտների ավելացման միջոցով. աշխատավարձի ցածր դրույքների բարձրացման, կենսաթոշակների ավելացման, աշխատավարձի տարիֆային դրույքների կարգավորման, գյուղատնտեսական մթերքների մթերման և գնման գների բարձրացման միջոցով և այլն։

Գների և բնակչության դրամական եկամուտների միջև եղած փոխհարաբերության հարցն անմիջականորեն կապված է փողի շրջանառության կարգավորման և ռուբլու գնողականության բարձրացման հարցի հետ։ Որպես կանոն անձնական սպառման ապրանքների գների գումարը պետք է համապատասխանի բնակչության դրամական եկամուտների այն մասին, որը կազմում է գնողունակության ֆոնդը։ Բնակչությունն իր դրամական եկամուտների զգալի մասն օգտագործում է անձնական սպառման առարկաներ գնելու համար, իսկ մի մասն էլ պահում է խնայդրամարկղում կամ իր մոտ։ Դրամական եկամուտների այդ վերջին մասին մոտավորապես համապատասխանում են առևտրական ցանցում եղած ապրանքների փոխանցիկ մնացորդները։ Բնակչության դրամական եկամուտների որոշ մասն էլ օգտագործվում է սպասարկումների և հարկերի վճարման համար։

Եթե բնակչության գնողունակ ֆոնդը նշանակալի չափերով գերազանցի վաճառվող անձնական սպառման ապրանքների գների գումարին, այն դեպքում բնակչության մոտ կառաջանան փողի ավելորդ կուտակումներ, ապրանքների պահանջարկը կգերազանցի առաջարկին, կոլտնտեսային շուկայում գները կբարձրանան, հող կստեղծվի սպեկուլյացիայի համար և այդ բոլորը, վերջին հաշվով, բացասական ազդեցություն կունենան փողի շրջանառության վիճակի և ռուբլու գնողունակության վրա։ Իսկ եթե հակառակը կատարվի, այսինքն՝ սահմանվեն այնպիսի բարձր գներ, որի հետևանքով անձնական սպառման ապրանքների գների գումարը նշանակալի չափերով գերազանցի բնակչության գնողունակ ֆոնդի գումարին, ապա առաջարկը կգերազանցի վճարողունակ պահանջարկը, որի հետևանքով կառաջանան ապրանքների ավելորդ կուտակումներ, և իրացման գործը կդժվարանա։

Այս բոլորը ցույց են տալիս, որ գների պլանավորումը չի կարելի քմահաճ կերպով կատարել։ Կամայականությունը գների պլանավորման բնագավառում գործին կարող է միայն վնաս բերել։

Գնի օբյեկտիվ հիմքը արժեքն է, այսինքն՝ ապրանքի արտադրության համար ծախսված հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի քանակությունը։

Սոցիալիստական հասարակարգում և գինը հանդիսանում է արժեքի

փողային արտահայտությունը: Մարքսը գրում է, որ արժեքը անտեսանելի և անշոշափելի է, նա իր մեջ ոչ մի ատոմ բնական նյութ չի պարունակում: Արժեքը զուտ հասարակական բնույթ ունի և երևան է գալիս, երբ նրա կրող սպառողական արժեքը փոխանակության միջոցով սպառման ոլորտն է մտնում:

Գինը լինելով արժեքի դրամական արտահայտությունը, որպես կանոն չի համընկնում արժեքին: Պարզ ապրանքային տնտեսության պայմաններում գինը տարերայնորեն տատանվում է արժեքի շուրջը, իսկ կապիտալիզմի պայմաններում՝ արտադրության գնի շուրջը:

Սոցիալիստական տնտեսության մեջ գները տարերայնորեն չեն տատանվում արժեքի շուրջը. նրանք սահմանվում են պլանային կարգով և կայուն են: Այս դեպքում հարց է առաջանում, թե ինչո՞վ է որոշվում գների մակարդակը և ո՞րն է պլանային գների հիմքը:

Այս հարցի վերաբերյալ սովետական տնտեսագետները մի քանի տարբեր տեսակետներ են արտահայտել:

Այսպես. Տ. Տուրեցկին իր «Գնի և արժեքի փոխհարաբերության մասին» հոդվածում ժխտում է գների պլանավորման համար որևէ ընդհանուր չափանիշի անհրաժեշտությունը: «Առանձին տեսակի արտադրանքի գների մակարդակը,— գրում է Տուրեցկին,— այսուհետև էլ պետք է որոշվի սովետական գների քաղաքականությամբ» (журнал «Вопросы экономики», № 5, 1957 г., стр. 69): Հանրահայտ է, որ սովետական պետության տնտեսական քաղաքականության անբաժանելի մասը կազմող գների քաղաքականությունը տնտեսական կյանքում ինչքան էլ ակտիվ, վերափոխող դեր ունենա, այնուամենայնիվ նա, վերջին հաշվով, պետք է ելնի մարդկանց կամքից անկախ գործող տնտեսական օրենքների պահանջներից և, հետևապես, գինը պետք է ունենա իր օբյեկտիվ տնտեսական հիմքը: Դ. Կոնդրաշևը միանգամայն ճիշտ նշում է, որ Տ. Տուրեցկու տեսակետի կողմնակիցները «...գների մակարդակը որոշելու հարցում գերագնահատում են սուբյեկտիվ գործոնի դերը» (նույն տեղը, էջ 71):

Տնտեսագետների մի այլ խումբ պնդում է, որ սովետական գինն իր հիմքում պետք է ունենա, այսպես կոչված, հասարակական միջին արժեքը. ըստ որում հասարակական միջին արժեք ասելով նրանք հասկանում են ինքնարժեքի և զուտ եկամտի միջին չափի գումարը, կամ ավելի պարզ ասած՝ ինքնարժեքի և միջին շահույթի գումարը:

Հասարակական միջին արժեքն իր որոշ կողմերով հիշեցնում է արտադրության գին կատեգորիան: Քանի որ մեզ մոտ չի գործում միջին շահույթի օրենքը, հետևապես ոչ մի անհրաժեշտություն չկա արտադրության բոլոր ճյուղերի համար սահմանելու եկամտաբերության նույն նորման:

Տնտեսագետների մի այլ խումբ էլ պաշտպանում է այն տեսակետը, որ յուրաքանչյուր առանձին-առանձին տեսակի ապրանքի գինը պետք է համընկնի իր արժեքին: Այս տեսակետի կողմնակիցները ճիշտ են նրանով, որ գնի հիմքում անմիջապես ընկած են արժեքը: Սակայն նրանց դրույթների հիման վրա հաշվարկած գներն այն թերությունն ունեն, որ տեխնիկապես զարգացած արտադրության ճյուղերի համար ապահովում են ցածր եկամտաբերություն, իսկ տեխնիկական ցածր հագեցվածություն ունեցող ճյուղերի համար՝ բարձր եկամտաբերություն: Պարզ է, որ եկամտաբերության նորմայի այդպիսի դիֆերենցացումը չի խթանի տեխնիկական առաջընթացը: Արտադրանքի յուրաքանչյուր առանձին տեսակի գնի և արժեքի զուգադիպման նրանց դրույթը



ճիշտ չէ և հենց դրանից էլ բխում է վերը նշված թերությունը եկամտաբերու-
թյան նորմայի սահմանման գործում:
Սովետական տնտեսագետների մեծ մասը գտնում է, որ առանձին ապ-
րանքների գները ոչ թե պետք է համընկնեն, այլ մոտենան արժեքին: Միայն
հասարակական մասշտաբով է, որ ապրանքների գների գումարը պետք է հա-
վասարվի արժեքների գումարին: Հենց ինքը արժեքի օրենքը և արժեքի փողա-
յին ձևը կանխորոշում են առանձին ապրանքների գների շեղումը արժեքից:
Մեր երկրի տնտեսական կյանքի պրակտիկան էս այդ է հաստատում: Սոցիա-
լիստական պետությունը գիտակցաբար և հաշվենկատորեն սահմանելով ապ-
րանքների գները, ակտիվ ներգործում է երկրի տնտեսական կյանքի վրա:
Սակայն, գների պլանային շեղումն արժեքից չպետք է քմահաճ ձևով
կատարվի և տնտեսական տեսակետից պետք է իրեն արդարացնի ու նպաստի
ժողովրդական տնտեսության զարգացմանը:
Տնտեսական շինարարության պրակտիկայում գնի պլանային շեղումն
արժեքից թելադրվում է բազմաթիվ հանգամանքներով:
Անձնական սպառման առարկաների գների շեղումը արժեքից շատ դեպ-
քում նպատակ է հետապնդում ապահովել որոշ համապատասխանություն
տվյալ տեսակի ապրանքի առաջարկի և պահանջարկի միջև:
Մինչև վերջերս տնտեսագիտական գրականության մեջ տարածված է եղել
այն կարծիքը, որ սոցիալիզմի պայմաններում որպես կանոն սպառումը պետք
է առաջ անցնի արտադրությունից և վճարունակ պահանջարկը գերազանցի
առաջարկին: Դա, իհարկե, ճիշտ չէ: Եթե շարունակ պահանջարկը գերազանցի
առաջարկին, այդ դեպքում բնակչության մոտ կառաջանա փողի ավելորդ կու-
տակում, որը կխախտի սովետական առևտրի նորմալ ընթացքը: Արտադրու-
թյան և շրջանառության պրոցեսի պլանային կազմակերպումը պահանջում է
համապատասխանություն սահմանել պահանջարկի և առաջարկի միջև: Ակըն-
հայտ է, որ արտադրության ու սպառման, պահանջարկի և առաջարկի միջև
միանգամայն ճիշտ պրոպորցիաներ սահմանելը չափազանց դժվար գործ է:
Իրականում համարյա թե միշտ էլ որոշ առարկաների գծով պահանջարկը գե-
րազանցում է առաջարկին, իսկ որոշ այլ ապրանքների նկատմամբ էլ ընդ-
հակառակը, առաջարկն է գերազանցում պահանջարկին:
Սոցիալիստական արտադրության զարգացման և բնակչության եկամուտ-
ների ավելացման զուգընթաց աճում է ո՛չ միայն ապրանքների նկատմամբ
եղած պահանջարկը, այլև փոխվում է նրա կառուցվածքը: Հաճախ նույն ար-
ժեքն ունեցող տարբեր ապրանքների նկատմամբ եղած պահանջարկը տարբեր
է լինում, մեկի նկատմամբ շատ, մյուսի նկատմամբ քիչ: Որպեսզի այդ ան-
համապատասխանությունը վերացվի, նախ և առաջ արագ կերպով պետք է
ընդլայնվի այն ապրանքների արտադրությունը, որոնց պահանջարկը մեծ է:
Սակայն, եթե որոշակի պատճառներով հնարավոր չէ այդ ապրանքների ար-
տադրությունն արագ կերպով ավելացնել, ապա դրանց պահանջարկը պետք է
սահմանափակել գների միջոցով. այսինքն՝ նույն արժեքն ունեցող տարբեր
ապրանքների նկատմամբ սահմանել տարբեր գներ, արժեքից բարձր գներ
սահմանել այն ապրանքների նկատմամբ, որոնց պահանջարկը մեծ է և ցածր
գներ այն ապրանքների համար, որոնց առաջարկը փոքր է: Բայց բոլոր դեպ-
քերում էլ գների շեղումն արժեքից պետք է կատարվի որոշ սահմաններում.
գների մինիմալ սահմանը պետք է լինի ինքնարժեքը, իսկ մաքսիմալ սահմա-

նը՝ առավել պահանջարկը։ Ընդհանրապես այն ապրանքների նկատմամբ,
որոնց պահանջը լրիվ չափերով չի բավարարվում, գների իջեցում կատարելը
նպատակահարմար չէ։ Եթե գները սահմանելիս հաշվի է առնվում պահանջար-
կի և առաջարկի հարաբերությունը, դա դեռ չի նշանակում, որ եթե այս կամ
այն ապրանքի պահանջարկը մեծ է, նրա գինը մեխանիկորեն պետք է բարձ-
րացվի։ Այդպես չի արվում առաջին անհրաժեշտության ապրանքների նկատ-
մամբ։ Դեռ ավելին, որոշ ապրանքների համար սահմանվում են արժեքից
ցածր գներ նույնիսկ այն դեպքում, երբ նրանց պահանջարկը մեծ է. այդպիսի
ապրանքների թվին են պատկանում սանիտարա-հիգիենիկ առարկաները, գըր-
քերը, գրենական պիտույքները, բնակարանավարձի գործող տարիֆները և
այլն։

Իրար փոխարինող նյութերի գների փոխհարաբերությունը կարգավորելու
նպատակով ևս գների շեղում է կատարվում արժեքից։ Օրինակ, քարածուխը,
նավթամթերքները, էլեկտրաէներգիան և գազը որպես վառելիք կարող են
միմյանց փոխարինել։ Սակայն նավթի համեմատությամբ քարածխի ինք-
նարժեքը բարձր է, իսկ մեկ տոննա քարածխի կալորիականությունը մեկ
տոննա նավթի կալորիականությունից 1,5 անգամ ցածր է։ Այդպիսի պայ-
մաններում, չնայած որ նավթի արժեքը քարածխի արժեքից ցածր է, նավթա-
մթերքների սպառումը սահմանափակելու նպատակով, նրանց համար սահմա-
նում են ավելի բարձր գներ, քան քարածխի համար։ Նույնը կատարվում է
նաև էլեկտրաէներգիայի նկատմամբ։ Ահա այդ է այն պատճառներից մեկը,
որ արտադրության միջոցների մեջ միայն նավթամթերքների և էլեկտրաէներ-
գիայի իրացումից է շրջանառության հարկ գանձվում։

Դեֆիցիտային նյութերի ծախսումը սահմանափակելու նպատակով ևս
նրանց համար պլանավորում են արժեքից բարձր գներ, իսկ տեղական հումքի
և վառելիքի, ինչպես նաև փոխարինիչների օգտագործումը խրախուսելու
նպատակով, վերջիններիս համար սահմանվում են արժեքից ցածր գներ։

Բնակչության որոշ խմբերին զեղչված գներով ապրանքներ վաճառելու
նպատակով ևս, որոշ ապրանքների համար կարող են արժեքից ցածր գներ
սահմանվել. այդպիսի ապրանքների թվին են պատկանում մանկական հա-
գուստեղենը, կոշկեղենը և այլն։

Ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով վերցրած անձնական
սպառման առարկաների գների համեմատությամբ արտադրության միջոցների
գների մակարդակը ցածր է։ Արտադրության միջոցների ցածր գներն իր ժա-
մանակին նպաստել են երկրի ինդուստրացմանը։ Հայրենական պատերազմի
տարիներին արտադրության միջոցների և սպառման առարկաների գների մա-
կարդակների տարբերությունն ավելի էր մեծացել։ Դրա գլխավոր պատճառն
այն էր, որ պատերազմի տարիներին դրամական աշխատավարձի աճն առաջ
էր անցել աշխատանքի արտադրողականության աճից, որի հետևանքով մենք
հարկադրված եղանք բարձրացնել անձնական սպառման ապրանքների գնե-
րը, իսկ արտադրության միջոցների գները մնացին նույնը, կամ բարձրացվե-
ցին աննշան չափերով։

Պատերազմից հետո, երբ արագ տեմպերով զարգացավ ժողովրդական
տնտեսությունը, նշանակալի չափերով բարձրացավ աշխատանքի արտադրո-
ղականությունը, ծանր ինդուստրիայի առավել աճի հիման վրա արագ ընդ-
լայնվեց ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, պայման-



ներ ստեղծվեցին սկսած 1947 թվականից տարեցտարի իջեցնելու անձնական
սպառման առարկաների գները։ Միաժամանակ անհրաժեշտություն առաջացավ
նաև վերացնելու արտադրության միջոցների և սպառման առարկաների գների
մակարդակների տարբերությունը։ Ահա հենց այդ նպատակով էլ 1949 թվա-
կանին կատարվեց արտադրության միջոցների գների բարձրացում։ Հետագա-
յում բարձրացվեցին նաև գյուղատնտեսական ապրանքների մթերման և գնման
գները։ Արտադրության միջոցների գների բարձրացումը ծանր արդյունաբերու-
թյան բազմաթիվ ձեռնարկություններին հնարավորություն տվեց հրաժարվելու
դոտացիայից, բարելավելու իրենց ֆինանսական տնտեսությունը և ավելի հե-
տևողականորեն կիրառելու տնտեսական հաշվարկի սկզբունքները։ Սակայն
մինչև այժմ էլ դեռևս գոյություն ունեն որոշ ձեռնարկություններ, որոնք շա-
րունակում են աշխատել վնասով, պետական բյուջեից ստանալով դոտացիա։

Այժմ արտադրության միջոցների արժեքից չափազանց ցածր գներն այլևս
իրենց չեն արդարացնում։ Արտադրության «Ա» և «Բ» խմբերի արտադրանքի
գների մակարդակների միջև եղած տարբերությունը թույլ չի տալիս ճիշտ որո-
շելու արտադրանքի այս կամ այն տեսակի վրա կատարված հասարակական
աշխատանքի ծախսումների քանակը, որոշելու ձեռնարկության եկամտաբե-
րության իրական չափը, ճիշտ կերպով արտահայտելու ժողովրդա-տնտեսա-
կան պրոպորցիաները, որոշելու կապիտալ ներդրումների և նոր տեխնիկայի
օգտագործման արդյունավետությունը, հետևողականորեն կիրառելու տնտե-
սական հաշվարկը և այլն։

Հաշվի առնելով այդ բոլոր հանգամանքները՝ սովետական պետությունը
աստիճանաբար բարձրացնում է արտադրության «Ա» խմբի այն ճյուղերի ար-
տադրանքի մեծածախ գները, որոնք դեռևս վնասով են աշխատում։

***

Վերջին տարիներս գյուղատնտեսական ապրանքների մթերման գների
բարձրացումը խթանել է կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նյու-
թական շահագրգռվածությունը գյուղատնտեսության զարգացման գործում։
Սոցիալիստական գյուղը վերջին տարիներին նշանակալից հաջողությունների
հասնելով գյուղատնտեսության զարգացման բնագավառում, այժմ պայքարում
է, որպեսզի առաջիկա երկու-երեք տարիների ընթացքում բնակչության մեկ
շնչին ընկնող մսի, յուղի և կաթի քանակով մեր երկիրը հասնի Ամերիկայի
Միացյալ Նահանգներին։

Գոյություն ունեն պետությանը հանձնվող գյուղատնտեսական ապրանք-
ների հետևյալ գները. 1) պետական պարտադիր հանձնումների մթերման գներ,
2) գնման գներ, 3) մթերման գներ պարգև-հավելումներով, 4) մթերման գներ
արդյունաբերական առարկաների ապրանքավորումով, 5) սահմանային մթեր-
ման գներ և 6) հանձնման գներ, որով սովետական տնտեսություններն իրենց
արտադրանքը հանձնում են պետական մթերող կազմակերպություններին։

Պարգև-հավելումներով մթերման գները սահմանված են տեխնիկական
կուլտուրաների համար, որոնց արտադրանքը կոլտնտեսությունները հանձնում
են պետությանը կոնտրակտացիայի կարգով։ Կոլտնտեսությունը պարգև-հա-
վելում ստանում է այն դեպքում, երբ գերակատարում է կոնտրակտացիայի
պլանը։

Սահմանային մթերման գները մոտենում են կոլտնտեսային շուկայի գներին: Մթերող կազմակերպություններին թույլատրվում է այդ գներով խաղողի և պտուղների գնումներ կատարել:

Գյուղատնտեսական ապրանքների՝ վերևում թվարկված գներից բացի, գոյություն ունեն նաև կոլտնտեսային շուկայի գներ, որոնք կազմավորվում են պահանջարկի և առաջարկի փոխհարաբերության համապատասխան: Եթե վաճառվող ապրանքների գների գումարը համապատասխանում է բնակչության դրամական եկամուտների գումարին, այն դեպքում կոլտնտեսային շուկայի գների մակարդակը համարյա հավասար է լինում կազմակերպված շուկայի գների մակարդակին: Եթե բնակչության դրամական եկամուտները գերազանցում են վաճառվող ապրանքների գների գումարին, ապա այդ դեպքում կոլտնտեսային շուկայի գները կազմակերպված շուկայի գներից բարձր են լինում, իսկ հակառակ դեպքում՝ ցածր:

Ընդհանրապես կոլտնտեսային շուկայի գները «կարգավորվում» են կազմակերպված շուկայի գներով, բայց պետք է նկատի ունենալ, որ առանձին դեպքերում կոլտնտեսային շուկայի գները ևս կարող են ազդել պետական գների վրա:

Կոլտնտեսային շուկան բնակչությանը սննդամթերքներով մատակարարելու կարևոր աղբյուրներից մեկն է: Քաղաքային բնակչությունն այդ շուկայից գնում է իր սպառած կարտոֆիլի, ձվի և կաթի կեսից ավելին և մսի, պտուղների ու բանջարեղենի զգալի մասը:

Գյուղատնտեսական ապրանքների գնման գները պարտադիր հանձնումների մթերման գներից բարձր են: Այդ տարբերությունը սահմանված է նրա համար, որպեսզի կոլտնտեսություններին նյութապես շահագրգռեն պետական մթերումների պլանները գերակատարելու գործում:

Սակայն պարտադիր հանձնումների մթերման գների և գնման գների մակարդակների խիստ տարբերությունները գործին կարող են վնաս բերել: Այդ գների մակարդակների տարբերության հետևանքով տեղի է ունենում ազգային եկամտի վերաբաշխում հօգուտ ուժեղ կոլտնտեսությունների: Ետ մնացող կոլտնտեսությունները հազիվ կատարելով պարտադիր հանձնումների պլանը, իրենց ապրանքային արտադրանքը վաճառում են պետությանն ավելի ցածր գներով, քան առաջավոր կոլտնտեսությունները, որոնք գերակատարելով պարտադիր հանձնումների առաջադրանքը, իրենց ապրանքային արտադրանքի զգալի մասը պետությանը վաճառում են բարձր գնման գներով և կամ ստանում են պարգև-հավելում: Այսպիսով, առաջավոր կոլտնտեսությունների ապրանքային արտադրանքի մթերման միջին գները փաստորեն ավելի բարձր են, քան թույլ կոլտնտեսությունների մթերման միջին գները: Գների այդպիսի վիճակը որոշ չափով դժվարացնում է թույլ կոլտնտեսությունների ուժեղացման գործը: Առաջիկայում նպատակահարմար կլինի պարտադիր հանձնումների մթերման գների և գնման գների տարբերությունները նվազեցնել, այդ գներն իրար մոտեցնելու միջոցով: Նույնը պետք է կատարել նաև պարգև-հավելումների նկատմամբ. տեխնիկական կուլտուրաների մթերման հիմնական գներն անհրաժեշտ է բարձրացնել պարգև-հավելումների պակասեցման հաշվին:

Գյուղատնտեսական ապրանքների պարտադիր հանձնումների մթերման գների և գնման գների ընդհանուր մակարդակը պետք է կոլտնտեսային արտադրանքի ինքնարժեքից բարձր լինի, իսկ արժեքից՝ ցածր: Այդ գները պետք



է փոխհատուցեն կոլտնտեսությունների արտադրական ծախսերը և բացի այդ, ապահովեն որոշ եկամուտ՝ «շահույթ»: Գյուղատնտեսական ապրանքների մթերման գները պետք է արժեքից ցածր լինեն, որովհետև գյուղատնտեսական արտադրության զարգացման համար բացի կոլտնտեսություններից պետությունը ևս խոշոր ներդրումներ է կատարում (ջրաշինարարության գծով և այլն), որոնք կոլտնտեսությունների կողմից չեն հատուցվում, և բացի այդ, դիֆերենցիալ ռենտայի մի մասը պետք է ստանա պետությունը:

Գյուղատնտեսական ապրանքների գոյություն ունեցող գների ընդհանուր մակարդակը բավարարում է կոլտնտեսային արտադրության հետագա արագ զարգացման պահանջները: Միայն պետք է կարգավորվի գների առանձին տեսակների և տարբեր տեսակի մթերքների գների հարաբերությունը: Այժմ կոլտնտեսությունների և կոլտնտեսականների եկամուտների ավելացման գլխավոր պայմանը ոչ թե մթերման գների հետագա բարձրացումն է, այլ գյուղատնտեսական արտադրության արագ ընդլայնումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը և կոլտնտեսային արտադրանքի ինքնարժեքի իջեցումը:

***

Արդյունաբերության ու շինարարության կառավարման կազմակերպչական ձևերի վերակառուցումը և ռեսպուբլիկական և տեղական օրգանների իրավունքների ընդլայնումը պահանջում են վերակառուցել նաև գների պլանավորման գործը:

Մինչև վերջերս գների սահմանման գործում գոյություն է ունեցել ավելորդ կենտրոնացում: Ժողովրդական սպառման առարկաների գների 90 տոկոսից ավելին սահմանում էին միութենական օրգանները: Անձնական սպառման առարկաների նույնիսկ ազգային շատ տեսակների գները, ստանդարտները և տեխնիկական պայմանները ևս հաստատվում էին միութենական օրգանների կողմից:

Այսուհետև ևս մասսայական սպառման ապրանքների կարևոր տեսակների մանրածախ գները նախկին կարգով պետք է սահմանեն միութենական օրգանները: Այդպիսի ապրանքների թվին են պատկանում՝ հացը, ալյուրը, միսը, կրուպեղենը, շաքարը, գործվածքները, ժամացույցները, հեռուստատեսները և այլն: Սակայն դրա հետ միասին բազմաթիվ տեսակի ապրանքների գների, ռեցեպտուրաների և ստանդարտների սահմանման և հաստատման գործը հանձնված է ազգային ռեսպուբլիկաների իրավասությանը: Նոր կարգի համաձայն, միութենական ռեսպուբլիկաների մինիստրների Սովետները պետք է հաստատեն այնպիսի ապրանքների գները, ինչպիսիք են՝ երշիկեղենը, հրուշակեղենը, մակարոնը, կաթը և կաթնամթերքները, ձուն, գինիները, կոնյակը, պատրաստի հագուստեղենը, կահույքը, խաղալիքները, գրենական պիտույքները և այլն: Ընդհանուր առմամբ ժողովրդական սպառման առարկաների բոլոր տեսակների մոտ 40—45 տոկոսի գները պետք է սահմանեն ռեսպուբլիկական օրգանները:

Գների, ռեցեպտուրաների, ստանդարտների և տեխնիկական պայմանների սահմանման նոր կարգը ուժեղացնում է տեղական օրգանների նախաձեռնությունը ժողովրդական սպառման առարկաների արտադրության ընդլայնման, ասորտիմենտի հարստացման ու որակի բարձրացման գործում:

Ռեսպուբլիկական և տեղական օրգանների իրավունքների ընդլայնումը գների գործում, միաժամանակ բարձրացնում է նրանց պատասխանատվությունը։ Նոր գներ սահմանելու համար նախօրոք պետք է մանրամասն ուսումնասիրվի և ճշտվի տվյալ ապրանքների արտադրության ու իրացման ծախսերի չափը։ Ռեսպուբլիկական և տեղական օրգանները չպետք է խախտեն արդեն գործող պրեյսկուրանտային գները։ Նրանք գերազանցապես պետք է սահմանեն նոր արտադրվող ապրանքների գները։

Գների հաստատման նոր կարգը չպետք է խախտի գների գոտիների գոյություն ունեցող կարգը. նույն տնտեսական գոտու ներսում նույն ապրանքի համար չպետք է սահմանվեն տարբեր գներ։ Այդ գործում հենց այժմ գոյություն ունեն որոշ թերություններ։ Օրինակ, միանգամայն անհասկանալի է, թե ինչու Ադրբեջանական ՍՍՌ-ում ձկնեղենը վաճառվում է II գոտու գներով, իսկ Տաջիկական ՍՍՌ-ում՝ I գոտու գներով, այն դեպքում, երբ Ադրբեջանը ավելի մոտ է ձկնեղենի արտադրության շրջաններին, քան Տաջիկական Ռեսպուբլիկան։ Նույնպես անհասկանալի է, թե ինչու Օդեսայի մարզում Մոլդավական ՍՍՌ-ի կոնյակը վաճառվում է III գոտու գներով, իսկ Հայկական ՍՍՌ-ի կոնյակը I գոտու գներով։ Ստացվում է, որ նույն տնտեսական շրջանում հայկական կոնյակը, որն ավելի որակյալ է, վաճառվում է ավելի ցածր գներով, քան մոլդավական կոնյակը։

Այդ բոլորը խոսում են այն մասին, որ ռեսպուբլիկական և տեղական օրգանները նոր գների սահմանման գործը որոշ չափով պետք է համաձայնեցնեն միմյանց հետ։ Ընդհանրապես գների պլանավորման աշխատանքները պետք է կոորդինացվեն միութենական օրգանների կողմից։

Այսպիսով, գինը սոցիալիզմի տնտեսական կատեգորիաներից մեկն է, նա պատկանում է այն կարևոր տնտեսական լծակների թվին, որի օգնությամբ պետությունը ակտիվ միջամտություն է ունենում երկրի տնտեսական կյանքին։ Գնի հետագա կատարելագործումը սոցիալիստական ընդլայնած վերարտադրության արագ տեմպերի ապահովման անհրաժեշտ պայմաններից մեկն է։

---

# ՄԱՏԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՅԻ ԷՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Լ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Տեսական մտքի զարգացման խոշոր դարաշրջանները տարբերվում են ո՛չ
միայն իմացության ընդգրկած ոլորտի լայնությամբ, այլև բուն մտածելա-
կերպով, իմացության մեթոդով, եղանակով։ Վերջինիս բնորոշման համար
կարևորագույն նշանակություն ունի այն, թե արդյոք աշխարհն ընկալվում է
որպես զարգացող ամբողջությո՞ւն, թե՞ հանգստի վիճակում։ Հետևաբար,
զարգացման գաղափարն է, որ խոր կերպով սահմանազատում է իմացության
երկու մեթոդներ. այդ գաղափարի ընդունումը հանգեցնում է աշխարհի նկատ-
մամբ դիալեկտիկական հայացքին, իսկ նրա ժխտումը, ինչպես և միակող-
մանի մեկնաբանումը մետաֆիզիկայի էլակետն է հանդիսանում։
Այն ժամանակից, ինչ ձևավորվել է տեսական մտածողությունը, դիա-
լեկտիկան անփոփոխ չի մնացել։ Այն կերպարանափոխվել է բնափիլիսոփայության
բնագավառում տեղի ունեցած յուրաքանչյուր նոր հեղաշրջման հետ միասին։
Եվ եթե մտածողությունը սնող հողը բնափիլիսոփայությունն է, ապա հասարա-
կական-քաղաքական կյանքը այն մթնոլորտն է, որի պայմաններում դիալեկ-
տիկայի ծաղիկները կամ վառ ու փարթամորեն փթթել են, կամ էլ թառամել։
Մտածողության սկզբունքները ևս, իրենց հերթին, սոցիալական որոշակի
դեր են խաղացել։ Աշխարհն ի բնե անկատար լինելու գաղափարը ծնունդ է
տվել հուսաբեկության փիլիսոփայությանը, մինչդեռ զարգացման լավատե-
սական գաղափարը հանդես է եկել որպես «ռևոլյուցիայի հանրահաշվի» կա-
րևորագույն տարր։
Դիալեկտիկական մտքի պատմականորեն առաջին ձևը երևան է եկել
մ. թ. ա. VI—V դարերում, Չինաստանում՝ «դաոյի» մասին Լաո-ցզիի ուսմունքի
մեջ և Հունաստանում՝ «լոգոսի» (հունարեն՝ միտք, հասկացություն), այսինքն՝
իրերի օրինաչափ զարգացման մասին Հերակլիտի (540—480 թթ. մ. թ. ա.)
ուսմունքի մեջ։ «Դաոն» ըստ Լաո-ցզիի այն է, ինչ գոյություն ունի մարդու
գիտակցությունից անկախ։ Աշխարհում ամեն ինչ ծագում է «դաոյից», ասում
է նա։
Այն հայացքը, որ աշխարհը մի զարգացող կենդանի ամբողջություն է,
որի մեջ հակադրությունները փոխարկվում են միմյանց, այդ ժամանակաշրջա-
նում դիտվում էր որպես ինքնին հասկանալի. այստեղ դիալեկտիկան հանդես
է գալիս իր նախիվ անմիջականության ամբողջ հմայքով։
Բայց մարդկության մանկության այս տարերային դիալեկտիկան, պար-
զապես կոնկրետ գիտելիքների պակասի պատճառով կառուցվում էր գրեթե
բացառապես հանճարեղ կռահումների վրա և գիտական հիմք չուներ։
Ուստի, իմացության հենց հաջորդ առաջընթաց քայլը, որն անխուսափե-
լիորեն կապված էր ամբողջականի մասնատման հետ, հաղթրեց դիալեկտի-

կակ․ան տեսակետի կորստյան։ Կյանքի բազմերանգ հյուսվածքից սկսեցին
անջատել առանձին թելեր՝ դրանք ավելի լավ ուսումնասիրելու համար, բայց
դրանով իսկ խախտվեց շարժվող աշխարհի ընկալման ամբողջականությունը։

Ինչպես որ հին աշխարհի մեծ կայսրությունների կործանումից հետո հա-
սարակական կյանքը պարփակվեց միջնադարյան փոքրիկ ամրոցներում, այն-
պես էլ իմացությունը ճյուղավորվեց բազմաթիվ ու ինքնահոս առվակների։

Ֆեոդալական կարգը իր տնտեսական հիմքով՝ մեկուսացված բնատնտե-
սությամբ և իր կալվածատիրական ու եկեղեցական կաստայական հիերար-
խիայով, յուրօրինակ արտացոլում գտավ հասկացությունների տրամաբանա-
կան հիերարխիայում, որի մեջ հասկացությունների փոխհարաբերությունները
նույնքան անփոփոխ ու քարացած էին, որքան վասալի ենթարկումն իր սյու-
զերենին։ Մտածելակերպի վրա մեծ ազդեցություն թողեց կրոնական դոգ-
մատիկան, որի մեջ մետաֆիզիկան գտնում էր թե՛ իր արտահայտությունը,
թե՛ պաշտոնական հովանավորը։

Սակայն չի կարելի վերապահում չանել, որ մետաֆիզիկայի նույնիսկ
լիակատար տիրապետության ժամանակներում դիալեկտիկական մտածողու-
թյունը պահպանում էր իր գոյությունը։ Այս տեսակետից հատկանշական է,
որ աշխարհի անշարժ՝ մեխանիկական-մետաֆիզիկական պատկերի ամբողջաց-
ման դարաշրջանում, նրա ստեղծողներից մեկը՝ Ռ. Դեկարտը (1596—1650 թթ.),
արծարծեց մի գաղափար, որն աշխարհի միանգամայն այլ պատկերի մտա-
հղացման սկիզբը հանդիսացավ. նա մաթեմատիկայի մեջ մտցրեց փոփոխա-
կան մեծություն հասկացությունը և մտահայեցողաբար այն ենթադրությունն
արեց, թե երկիրը տևական պատմություն ունի։ Այս դրույթը, որը, զարգանա-
լով, XVIII դարում արտահայտություն գտավ Կանտ-Լապլասի հիպոթեզի
մեջ, ամենևին էլ ոչ թե նեղ-աստղագիտական, այլ սկզբունքային մեթոդո-
լոգիական նշանակություն ունեցավ։ Իրոք, եթե երկիրը որոշակի նախապատ-
մություն ունի, ապա, հետևաբար, իր պատմությունն ունի երկրային ամեն ինչ։

Արդեն XVIII դարում և XVIII ու XIX դարերի սահմանագլխին այս կա-
հումները հաստատվեցին երկրաբանական հետազոտություններով (Մ. Լոմոնո-
սով, Ու. Սմիթ, Ժ. Կյուվյե), որոնց շնորհիվ հայտարերվեցին երկրի կեղևը
կազմող շերտերը։ Այդ ժամանակ գիտությունը հայտարերեց շերտերի համե-
մատական տարիքը որոշելու պալեոնտոլոգիական (հնէաբանական) եղա-
նակը՝ ըստ բրածո կենդանիների պահպանված կմախքների։ Դա իր հերթին
ծնունդ տվեց մի նոր պրոբլեմի՝ օրգանական աշխարհի նախապատմության
հարցին։

Այսպիսով, ո՛չ միայն երկրաբանությունը, այլև կապիտալիստական ար-
տադրաեղանակի կողմից կյանքի կոչված մյուս գիտությունները XVIII դարի
երկրորդ կեսից սկսեցին նորանոր փաստարկներ բերել զարգացման գաղա-
փարի օգտին և աստիճանաբար խարխլել տիրապետող մետաֆիզիկական աշ-
խարհայացքի հիմքերը։

Սակայն հին մետաֆիզիկայի հիմքերը քայքայվում էին ո՛չ միայն բնա-
գիտության առաջադիմության շնորհիվ, այլև տնտեսական ու քաղաքական
կյանքի բուռն ընթացքով։ Անգլիայում և Ֆրանսիայում տեղի ունեցած բուրժուա-
կան ռևոլյուցիաները, Նապոլեոնի պատերազմների բուռն շրջանը իրենց դարն
ապրած կարգերի ու հաստատությունների հետ միասին կործանեցին նաև հա-
սարակական ձևերի անսասանության պատկերացումը։



Զարգացման իդեան, որն արդեն ճանապարհ էր հարթում, իր արտացո-
լումը գտավ նաև փիլիսոփայության մեջ՝ Ֆիխտեի (1762—1814 թթ.) և Շե-
լինգի (1775—1854 թթ.) ուսմունքներում։ Բայց դիալեկտիկական մտածողու-
թյան պատմականորեն երկրորդ ձևի առավել մշակված արտահայտությունը
եղավ Հեգելի (1770—1831 թթ.) ուսմունքը։

Հեգելը, նախ և առաջ, նշեց այն վիթխարի խզումը, որ առաջացել էր շատ
առաջ անցած կոնկրետ գիտելիքների և մտածողության՝ ետ մնացած տեսու-
թյան միջև։ Մարտահրավեր նետելով իր ժամանակի գիտական գրականության
մեջ տիրապետող անսխտեմ շարադրման եղանակին, Հեգելը իրեն նպատակ
դրեց «մտքի թագավորությունը պատկերել փիլիսոփայորեն, այսինքն՝ նրա սե-
փական, ներհատուկ գործունեության մեջ, կամ, որ նույնն է, նրա անհրա-
ժեշտ զարգացման մեջ» (Հեգել, Երկեր, ռուս. հրատ., հ. 5, էջ 6)։

Բայց այդպիսի շարադրման եղանակ գտնելը կնշանակեր, ըստ էության,
իմացության օբյեկտին մոտենալ դիալեկտիկորեն։ Շարադրման նոր մեթոդի
մշակումը հավասարազոր էր իմացության նոր մեթոդի հայտնագործմանը։
Իսկ դա, իր հերթին, հենց իմացության օբյեկտի նկատմամբ դիալեկտիկական
հայացքի հաստատման նախադուռն էր։

Թեև Հեգելը, որպես զտարյուն իդեալիստ, ժխտում էր բնության զարգա-
ցումը, այդպիսի ունակություն վերագրելով միմիայն «մաքուր մտքի» ոլորտին,
այնուամենայնիվ, «մաքուր» հասկացությունների դիալեկտիկայի մեջ իր տե-
սական նրբանկատության շնորհիվ նա կռահեց իրերի դիալեկտիկան։ Հասկա-
ցությունների մեջ Հեգելի հայտնաբերած դիալեկտիկական կապերը, ըստ էու-
թյան, իրենց՝ իրերի դիալեկտիկական կապերի շուռ տված արտացոլումն էին։
Հեգելյան դիալեկտիկան մի արհեստական շինվածք էր, որի մեջ բաբախում
է կենդանի միտքը։

Եվ, եթե Հեգելի սոցիալ-քաղաքական հայացքների ռեակցիոն բնույթը
պահպանողականության դրոշմ դրեց նրա ամբողջ ուսմունքի վրա, ապա
նույն դարակեսին պատմական ասպարեզ իջած նոր դասակարգի՝ պրոլետա-
րիատի մարտական ռևոլյուցիոն ոգին պայմանավորեց դիալեկտիկայի սկզ-
բունքների ամենահետևողական զարգացումը։ Դրա շնորհիվ դիալեկտիկան
իր բարձրագույն, պատմականորեն երրորդ ձևին հասավ ռևոլյուցիոն պրո-
լետարիատի գաղափարախոսների մոտ՝ հանձինս Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի։

Դեն նետելով հեգելյան փիլիսոփայության իդեաների միստիկան ու մշու-
շապատ ձևը և ժառանգելով նրա իրոք անթառամ արժանիքները, մարքսիս-
տական դիալեկտիկան փայլուն կռահումների և արհեստական կապերի սխե-
մը բարձրացրեց գիտության աստիճանի, դրեց մատերիալիստական հիմ-
քերի վրա։

Նոր դարաշրջանում՝ իմպերիալիստական պատերազմների և պրոլետա-
րական ռևոլյուցիաների դարաշրջանում, ամփոփելով դասակարգային մար-
տերի հարուստ փորձը և բնագիտության նորագույն նվաճումները, պայքարե-
լով մարքսիզմի գաղափարական հակառակորդների դեմ, Վ. Ի. Լենինը հարըս-
տացրեց ամբողջ մարքսիստական ուսմունքը, դրա հետ միասին ավելի խո-
րացրեց դիալեկտիկայի ըմբռնումը։

Սակայն դիալեկտիկայի հակոտնյան ես՝ մետաֆիզիկան, անփոփոխ չէր
մնում։ Եթե Թովմա Աքվինացու (1225—1274 թթ.) ժամանակ մետաֆիզիկան
կռվի էր ելնում բաց ճակատով, կրոնի հետ միասին պնդելով, որ աշխարհը

եղել է և միշտ կմնա այնպիսին, ինչպես այն աստվածն է ստեղծել, ապա
XIX դարում այս գաղափարները պաշտպանելն այլևս անհնար էր։ Կյանքը
ստիպում էր ընդունել զարգացման գաղափարը, և մետաֆիզիկան ձևի առու-
մով ընդունեց այն, պահպանելով հանդերձ իր էությունը, այն է՝ ստեղծելով
զարգացման մետաֆիզիկական կոնցեպցիան։

Այդ կոնցեպցիայի ստեղծողներից մեկը Հ. Սպենսերն (1820—1903 թթ.)
էր՝ դարվինիզմի կեղծ հետևորդը, որը ձգնում էր բիոլոգիական օրենքներով
բացատրել հասարակության էվոլյուցիան։ Նա էր, որ լայն գործածության մեջ
մտցրեց էվոլյուցիայի այն ըմբռնումը, որը լիբերալ բուրժուազիայի շրջան-
ներում «ազատամտության» նշան դարձավ։ Խոսքը հասարակության այնպիսի
կատարելագործման մասին էր, որի դեպքում պահպանվեին նրա «անսասան
հիմքերը»՝ մասնավոր սեփականությունը և դասակարգային շահագործումը։
Սալտիկով-Շչեդրինը, իրեն հատուկ խարազանող ծաղրով, այս առթիվ նկա-
տում է, որ լիբերալները չափավոր առաջադիմության կողմնակիցներ են և
նրանց ավելի դուր է գալիս չափավորությունը, քան առաջադիմությունը։

Հասարակական կյանքում փոփոխություններ ընդունում են նաև ժամա-
նակակից բուրժուական սոցիոլոգները։ Ավելին, խոսելով կապիտալիզմի մա-
սին՝ նրանք նույնիսկ պնդում են, թե կապիտալիզմը փոփոխվել է։ «Ամերիկ-
յան կապիտալիզմը այսօր իրոք ընդհանուր ոչինչ չունի անցյալի հետ», հա-
վատացնում է «Ֆորչուն» ամերիկյան ամսագիրը։ Ներկայումս կապիտալիզմն,
իբր, դարձել է «ժողովրդական», «դեմոկրատական», «կազմակերպված» և այլն։

«Զարգացման սկզբունքին» XX դարում (ասենք և XIX դարի վերջին) հա-
մաձայն են ամենքը,— գրել է Վ. Ի. Լենինը։— Այո՛, բայց այդ մակերեսա-
յին, չմտածված, պատահական, ֆիլիստերական «համաձայնությունը» այն-
պիսի համաձայնություն է, որով խեղդում և գռեհկացնում են ճշմարտությունը»
(Վ. Ի. Լենին, Փիլիսոփայական տետրեր, Պետքաղհրատ, ռուս. հրատ., 1947,
էջ 239)։

Դիալեկտիկայի և ժամանակակից մետաֆիզիկայի անտագոնիզմը զար-
գացման արմատապես տարբեր ըմբռնման ու մեկնաբանության մեջ է։ Զար-
գացման բոլոր ուսմունքներից դիալեկտիկան ամենաբազմակողմանի, բովան-
դակությամբ հարուստ և խոր ուսմունքն է (տե՛ս, Լենին, Երկեր, հ. 21, էջ 52)։

Թեև արդեն Հերակլիտը կեցության էությունը համարում էր օրինաչափո-
րեն բոցավառվող և օրինաչափորեն հանգչող կրակը, բայց, այնուամենայնիվ,
հին աշխարհի տարերային դիալեկտիկայի սահմանափակվածությունը զար-
գացման գաղափարի ծավալուն և խոր ըմբռնման բացակայությունն էր։ Ավե-
լին, Հերակլիտից հետո Զենոն Էլեացու (500 թ. մ. թ. ա.) կողմից շարժման
վերլուծումը (նշանավոր «ապորիաների» մեջ) նրան հանգեցրեց շարժման
տրամաբանական հնարավորության ժխտմանը։

Իսկ զարգացման մարքսիստական ուսմունքը պարունակում է նրա բազ-
մակողմանի բնութագրությունը, ընդգրկում է շարժման ձևերի ու ռիթմերի ան-
սահման հարստությունը, նրա առանձնահատկությունների միահյուսման ամ-
բողջ բարդությունը։ Միմյանց փոխարկվող ձևերի բազմազանության արտա-
ցոլումն է միայն, որ կարող է զարգացման մտածական ճշմարիտ պատկերը
լինել։

Մետաֆիզիկայի տեսական արատն էլ հենց այն է, որ զարգացումը հան-
գեցնելով որևէ մեկ ձևի, նա ըստ էության ոչնչացնում է զարգացումը։



Ժ. Կյուվյեն (1769—1832), հայտաբերելով բրածո կենդանիների մնա-
ցորդները և հաջորդաբար ընկած հողաշերտերը, դրանց գոյությունը բացատրեց
վիթխարի կատաստրոֆներով, որոնք կործանել են ամբողջ կենդանի բնու-
թյունը։ Տարբեր դարաշրջանների օրգանական տեսակների միջև նա կապակցող
օղակներ չէր տեսնում։ Դրանով իսկ ժխտվում էր օրգանական աշխարհի զար-
գանալու ներքին ունակությունը։ Ընդունվում էր, որ զարգացման, փոփոխու-
թյան ազդակը, իմպուլսը գտնվում է դրսում։ Եվ պատահական չէ, որ Ժ. Կյուվ-
յեի աշակերտները աստվածային արարչագործություն էին տեսնում յուրաքան-
չյուր նոր կատաստրոֆից հետո։

Զարգացման նման պատկերացումները բնորոշ են նաև արդի բուրժուա-
կան սոցիոլոգիայի համար (Թոյնբի, Բրեյե), որը պատմությունը ներկա-
յացնում է որպես «քաղաքակրթության առանձին տիպերի» առաջացման ու
կործանման պատմություն, տիպեր, որոնք ոչ մի ընդհանրություն, ոչ մի հա-
ջորդական կապ չունեն։

Այսպիսով, զարգացման գաղափարն «ընդունվում է»։ Բայց ի՞նչ գնով։
Զարգացման այնպիսի «ընդունմամբ», երբ այն հանգեցվում է ժամանակ առ
ժամանակ տեղի ունեցող կործանումների, անտեսվում են դրանց պատճառ-
ները, չի բացահայտվում դրանց ներքին անհրաժեշտությունը։ Զարգացման
փուլերի միջև կապը կտրվում է, անհետանում է զարգացման գծի անընդ-
հատությունը, ուստի և զարգացումը, ըստ էության, ժխտվում է։

Երկրաբանության բնագավառում զարգացման այսպիսի մեկնաբանու-
թյան դեմ XIX դարի 30-ական թվականներին վճռաբար հանդես եկավ Չ. Լա-
յելը (1797—1875 թթ.), որն առաջինը «ողջախոհություն մտցրեց երկրաբա-
նության մեջ՝ փոխարինելով հանկարծակի, արարչի քմահաճույքից առաջա-
ցած ռևոլյուցիաները երկրի դանդաղ կերպարանափոխման աստիճանական
գործողությամբ» (Ֆ. Էնգելս, Բնության դիալեկտիկա, Հայպետհրատ, 1950,
էջ 15)։ Երկրաբանության մեջ էվոլյուցիոն ուղղության հիմնադրի ուսմունքի
համաձայն, երկրի կերպարանափոխումը բնական գործոնների աստիճանական
ու տևական ազդեցության հետևանքն է։

Իր ժամանակին առաջադեմ լինելով հանդերձ, Չ. Լայելի ուսմունքը, այնու-
ամենայնիվ, տառապում էր զարգացման սահմանափակ, միակողմանի ըմ-
բռնումով։ Կատաստրոֆների տեսության հակառակորդը, բնությունից վտարե-
լով դերբնական ուժերը, նրա զարգացումը ներկայացրեց որպես որոշակի ուղ-
ղություն չունեցող միօրինակ շարժում։ Փոփոխություն առաջացնող բնական
գործոնները Լայելը հաստատուն, անփոփոխ մեծություններ էր համարում։

Զարգացման այսպիսի՝ էվոլյուցիոնիստական մեկնաբանությունը ևս իր
համախոհներն ունի ժամանակակից բուրժուական սոցիոլոգիայի մեջ, որի
ներկայացուցիչները հնարավոր են համարում խոսել նույնիսկ ընդհանրապես «սո-
ցիալական փոփոխությունների» մասին, չշոշափելով ո՛չ դրանց բովանդակու-
թյունը, ո՛չ իմաստը։ Նրանց ըմբռնմամբ, հասարակական կյանքը զանազան
«փոփոխությունների» քաոս է, որոնք, սակայն, դեպի որոշակի նպատակա-
կետ չեն տանում։

Այսպիսով, էվոլյուցիոնիզմը զարգացման անընդհատության հետևում աչ-
քաթող է անում մի երևույթի փոխարկումը մեկ ուրիշի, պարզից բարդի առա-
ջացումը, հնի բացասումը նորի կողմից։

Այնինչ «բացասման» ոգին ներթափանցում է ամբողջ դիալեկտիկան, որովհետև այն ամեն ինչի վրա անխուսափելի կործանման կնիքն է տեսնում։ Այդ ամենազոր գաղափարի առջև ոչինչ չի կարող դիմանալ։ Ամեն մի իր, երևույթ, դրույթ ենթակա է «բացասման», հաղթահարման օրենքին՝ բացառությամբ անընդհատ առաջացման և ոչնչացման բուն օրենքի։ Դիալեկտիկայի մեջ «բացասականը» կործանիչ ու արարիչ ուժերն են։

Այդ «բացասական ուժերը» զարգացման դիալեկտիկայի կարևորագույն տարրն են կազմում։ Եթե նորը հնի կողքին հանդես գար, ապա իրականության մեջ միայն առաջացում, գոյացում կլիներ, և ոչ թե զարգացում, այսինքն՝ մի երևույթի փոխարկում մեկ ուրիշի։ Այդ դեպքում արդյոք ինչի՞ց է գոյանում նորը։ Իրենից առաջ գոյություն ունեցածից նորը ծագել չէր կարող, որովհետև հինը պետք է անձեռնմխելի մնա։ Ուրեմն, նորը պետք է ծագեր ոչնչի՞ց։

Ո՛չ, յուրաքանչյուր քայլափոխում միլիոնավոր օրինակներ ցույց են տալիս, որ նորը աճում է հնից և, հետևաբար, հնի «բացասումը» զարգացման էական տարրն է բուն իրականության մեջ։

Զարգացման ընթացքում «բացասումը» չի նշանակում եղածի լիակատար ոչնչացում, դեն նետում։ «Բացասումը» միաժամանակ և «հաստատում» է, որովհետև հնի հաղթահարման պրոցեսում պահպանվում և հաստատվում են նրա արժեքավոր կողմերը։ Այսպես, անցյալի մի այնպիսի վճռական բացասում, ինչպիսին է սոցիալիստական ռևոլյուցիան, ժառանգում է նախորդ զարգացմամբ ստեղծված կուլտուրական և նյութական արժեքները։ Հայտնի է, որ, մասնավորապես, մարքսիզմը ևս ծագել է ոչ թե համաշխարհային կուլտուրայի մայրուղուց դուրս, այլ նախորդ տեսական մտքի ամբողջ հարստության քննադատական ու ստեղծագործական յուրացման շնորհիվ։

Հետևաբար, շնորհիվ իր հակասական դերի, «բացասումը» ո՛չ միայն խզում է զարգացման շղթան, այլև միաժամանակ ինքն է կռում նրա օղակները։ Ահա թե ո՛րն է դիալեկտիկական «բացասման» լենինյան սահմանման խոր իմաստը. «Ոչ թե մերկ բացասումը, ոչ թե խոպառ բացասումը, ոչ թե ռոռեռտեսական բացասումը, տատանումը, կասկածն է բնորոշ և էական դիալեկտիկայի մեջ,— որը, անկասկած, իրենում բացասման տարրն է պարունակում, և այն էլ որպես իր կարևորագույն տարրը,—ո՛չ, այլ բացասումը որպես կապի մոմենտ, որպես դրականը պահպանող զարգացման մոմենտ, այսինքն՝ առանց որևէ տատանման, առանց որևէ էկլեկտիկայի» (Վ. Ի. Լենին, Փիլիսոփայական տետրեր, էջ 197)։

Հետևաբար, ըստ Լենինի «բացասումը» միաժամանակ դրական նշանակություն ունի։

«Բացասական ուժերի» այդ դրական նշանակությունն աճում է նաև այն պատճառով, որ դիալեկտիկորեն բացասելը ամենևին էլ չի նշանակում պարզապես ժխտել՝ «ոչ» ասելով։ «Բացասումը» կատարում են որոշակի, ակտիվ «բացասող ուժերը», որոնք դուրս են մղում «բացասվողը»։

Այսպիսով, «բացասական ուժերը» ո՛չ միայն ոչնչացման, այլև նորացման ուժեր են։

Մատերիալիստական դիալեկտիկան զարգացումը դիտում է որպես հնի «բացասման» և նորի հաստատման մի անվախճան պրոցես, որի մեջ ամեն մի «բացասում» հետագայում ինքն էլ է «բացասման» ենթարկվում։ Ընդսմին հաճախ այնպես է լինում, որ այն, ինչ մերժվել էր առաջին «բացասման» ժա-



մանակ, իր առանձին գծերով ու տարրերով վերարտադրվում է երկրորդ «բացասման», այսինքն՝ առաջին «բացասման» «բացասումի» հետևանքով։ Եվ, թերևս, զարգացման հենց այս առանձնահատկությունն է ազդակ հանդիսացել շրջապատույտի տեսության հանդես գալու համար, ըստ որի զարգացումը կատարվում է ոչ թե վերընթաց (թեև շատ զիգզագներ ունեցող) գծով, այլ հավերժ կրկնվող փակ շրջանով, որը վերջին հաշվով իր մեջ ոչ մի նորություն չի պարունակում (Վիկո—1668—1744 թթ., Շպենգլեր—1880—1936 թթ.)։

Սակայն այս տեսության անհիմն լինելը դրսևորվում է, երբ այն համադրվում է գիտականորեն հաստատված փաստերի հետ։ Մատերիայի զարգացման ժամանակակից պատկերացումը, որը խարսխված է բնագիտության տվյալների վրա (մինչաստղային ստադիայում գտնվող կոսմիկական մատերիայից աստղային ասոցիացիաների առաջացումը, ցածր ատոմական կշիռ ունեցող քիմիական տարրերից ավելի ծանր տարրերի գոյացումը, երկրի վրա անօրգանական մատերիայից դեպի օրգանականը կատարված անցումը և կյանքի առաջացումը), համոզիչ կերպով հերքում է շրջապատույտի տեսու-

թյունը։

Հիշյալ տեսության դեմ նույնքան ծանրակշիռ փաստարկներ է ընձեռում նաև հասարակության պատմությունը։

Թեև անտագոնիստական բոլոր ֆորմացիաները հիմնված են եղել ճնշված դասակարգերի աշխատանքի շահագործման վրա, բայց, այնուամենայնիվ, չի կարելի չտեսնել, որ, օրինակ, կապիտալիզմը ծնունդ տվեց այն դասակարգին, որը ո՛չ միայն հնի գերեզմանափորը եղավ, այլև նոր արտադրաեղանակի կրողը։ Մինչև պրոլետարիատի ասպարեզ իջնելը ճնշված դասակարգերի՝ ստրուկների ու ճորտ գյուղացիների պայքարը միայն ուղի էր հարթում նոր, համեմատաբար առաջադեմ, բայց նույնպես շահագործող դասակարգերի գերիշխանության համար։ Պրոլետարիատը կեղեքված դասակարգերից առաջինն էր, որ, ոչնչացնելով դասակարգային ճնշումն ընդհանրապես, ինքը՝ աշխատավոր գյուղացիության հետ դաշինք կնքած, արտադրության տնօրենը և կազմակերպիչը դարձավ։

Չխոսելով արդեն սոցիալիստական պետությունների լադերի մասին, որտեղ անհնախընթաց հասարակական հարաբերությունների գոյությունն իսկ ինքնին հերքում է զարգացման շրջապատույտի տեսությունը, կարելի է այդ տեսության կողմնակիցներին անելանելի կացության մեջ դնել, հարցնելով՝ արդյո՞ք վերածնությունն անտիկ կուլտուրայի պարզապես վերականգնումն էր, ինչպես այդ կարծում էին այդ ժամանակաշրջանի կարկառուն գործիչները։ Կամ էլ, մի՞թե Կոռնելը և Ռասինը կրկնեցին Էսքիլեսի և Սոֆոկլեսի ողբերգությունները։

Եթե հասարակության պատմության մեջ ինչ-որ դարաշրջաններ իրոք հիշեցնում են նախկինում արդեն անցած փուլերը, ապա այդ «կրկնությունը» եղել է այլ, որակապես նոր հիմքի վրա և ունեցել է սեփական, յուրահատուկ բնույթ։ «Բացասման բացասումի» դիալեկտիկական օրենքը՝ իր մատերիալիստական ըմբռնումով, բացահայտելով զարգացման այս առանձնահատկությունը, ընդգծում է նրա վերընթաց, առաջընթաց բնույթը։

Դիալեկտիկորեն ըմբռնված «բացասումը» և «բացասման բացասումի» օրենքը, բացահայտելով շարժման ու զարգացման բարդությունը և հակասականությունը, ցույց են տալիս թե՛ շրջապատույտի տեսության, թե՛ պատճառա-

չուրկ կատաստրոֆների, թե՛ տափակ էվոլյուցիոնիզմի սահմանափակվածությունն ու միակողմանիությունը։

Ի հակադրություն հանկարծական պայթյունների տեսության, «բացասման բացասումի» դիալեկտիկական օրենքը մատնանշում է զարգացման հաջորդականությունը, ներքին կապը, անընդհատությունը։

Սակայն զարգացման պրոցեսի անընդհատությունն ու միակողմանիությունը, իր դիալեկտիկական ըմբռնումով, հակադիր է նաև երկչոտ էվոլյուցիոնիզմին, որին սարսափ է պատճառում անհաշտ ընդհարումների և խոր ցնցումների միտքը։

Զարգացման այս առանձնահատկությունները, որոնք ընդգծված են դիալեկտիկական «բացասման» հասկացության մեջ, առավել խորթ են ամեն տեսակ ռեֆորմիզմին ու օպորտունիզմին։ Ուստի և վերջիններս մերժել են դիալեկտիկական ուսմունքն ամբողջովին։ «Բացասումը», երբ այն վերաբերում է ժամանակակից կապիտալիզմին, ինչ ձևով էլ այն տեղի ունենա՝ խաղաղ ճանապարհով թե բռնի ուժով, անպայման ենթադրում է տնտեսակարգի հիմքի վերափոխում, մոնոպոլիաների անսահմանափակ գերիշխանության ոչնչացում և այլն։ Անցյալի նման գծերի պահպանումը բոլորովին հնարավոր չէ, որովհետև ըստ «բացասման բացասումի» օրենքի՝ հնից վերականգնվում, վերարտադրվում է սոսկ այն, ինչ համապատասխանում է նոր հիմքին։

Բայց հասարակության հին հիմքից դեպի նորը կատարվող անցման այս մոմենտը աստիճանական զարգացման ընդհատում և ռևոլյուցիա է՝ նույնիսկ անցման խաղաղ ձևերի դեպքում։ Ահա թե ինչու զարգացումն ամբողջությամբ վերցրած թե՛ էվոլյուցիոն է, թե՛ ռևոլյուցիոն, այն թե՛ անընդհատ է, թե՛ ընդհատ, թե՛ աստիճանական է և թե՛ թռիչքաձև։ Զարգացման դիալեկտիկական ուսմունքի համակողմանի բնույթն էլ հենց այն է, որ նրանում արտացոլում է գտել զարգացման հակասական առանձնահատկությունների ամբողջականությունը։ Մինչդեռ մետաֆիզիկան տեսնում է միայն անհաշտելի հակադրություններ, դիալեկտիկան տեսնում է նաև դրանց կապը։ Նույնիսկ «բացասումը» դիալեկտիկան դիտում է նրա դրական կողմից՝ որպես «կապի մոմենտ»։ Այս սկզբունքի նշանակությունը զարգացման համար այնքան մեծ է, որ Ֆ. Էնգելսը դիալեկտիկան անվանում էր «գիտություն կապերի մասին»։

Ո՛չ բնության, ո՛չ էլ հասարակության մեջ, ըստ դիալեկտիկայի, չկան մեկուսացած երևույթներ և պրոցեսներ։ Մասնավորապես, շարժման ու զարգացման ձևերը՝ քանակական ու որակական փոփոխությունները, էվոլյուցիան և ռևոլյուցիան իրենք ևս միահյուսվող ու միմյանց փոխարկվող առվակներ են զարգացման ընդհանուր հորձանքում։

Քանակական փոփոխությունների՝ որակականի անցնելու հրաշալի նմուշ է, այսպես կոչված, «Լեբեդևի աշյուսակը»։ Այն ակնառու կերպով ցույց է տալիս, թե ինչպես տատանումների հաճախականության աստիճանական փոփոխմանը զուգընթաց էլեկտրամագնիսական ալիքները փոխում են իրենց բնույթը, վերածվելով կա՛մ տեսանելի լույսի, կա՛մ անտեսանելի ուլտրամանիշակագույն ճառագայթների, կա՛մ ռադիոալիքների, կա՛մ էլ ռենտգենյան ճառագայթների։ Այդ փոխակերպումները տեղի են ունենում քանակական փոփոխությունների՝ որակականի անցնելու դիալեկտիկական օրենքի համաձայն։

Ժամանակակից գիտությունը պարզել է, որ բնական այն երևույթները, որոնք XVII և նույնիսկ XVIII դարում ինքնուրույն սուբստանցիաներ՝ «ֆլյուիդ-



ներ» էին համարվում («ջերմածին», «ֆլոգիստոն» և այլն), իրականում միաս-
նական բնույթի են և իրենցից ներկայացնում են մատերիայի շարժման մի-
մյանց փոխարկվող ձևեր։ XIX դարում բնագիտությունը ցույց տվեց, որ այդ
պիսի կապեր և անցումներ գոյություն ունեն շարժման անխտիր բոլոր ձևերի
միջև։

Դեռևս Հեգելի ավագ ժամանակակից Գյոթեն, որի բնագիտական խորա-
թափանցությունը չէր վիջում բանաստեղծական տաղանդին, առաջադրելով
«բույսերի մետամորֆոզի» տեսությունը, պաշտպանում էր բույսերի կառուց-
վածքի միասնականության գաղափարը։ Հետագայում այդ ուղղությամբ գիտու-
թյան զարգացումն արագ քայլերով ընթացավ։ Շլեյդենի և Շվանի կողմից
բջջի հայտնագործումը բացահայտեց ամբողջ օրգանական աշխարհի միաս-
նությունը, Մենդելեևի կողմից պարբերական աղյուսակի ստեղծումը հաստա-
տեց նյութի քիմիական կառուցվածքի ընդհանրությունը։ Էներգիայի պահպան-
ման և փոխակերպման օրենքը (Ջոուլ, Մայեր, Հելմհոլց) վեր հանեց շարժման
բոլոր ձևերի փոխանցումների օրինաչափությունները։ Ֆարադեյի և Մաքսվելի
ստեղծած էլեկտրամագնիսական տեսությունը որպես միասնական ամբողջու-
թյուն ներկայացրեց էլեկտրականությունը, լույսը և մագնիսականությունը։

Կարծես թե չգոհանալով այդ բնագավառում ձեռք բերածով, XIX դարը,
նոր հարյուրամյակից ընդամենը հինգ տարի առաջ, նշանավորվեց ևս երկու
նվաճումով՝ ռադիոակտիվության և էլեկտրոնի հայտնագործություններով,
որոնք ներկայումս հանգեցրել են «տարրային» մասնիկների փոխակերպումնե-
րի ուսմունքին, նյութի և էլեկտրամագնիսական դաշտի միասնության տեսու-
թյանը, նյութի «տարրային» մասնիկների, ֆոտոնների և գրավիտոնների փո-
խակերպման ուսմունքին։

Հիմնվելով գիտության այս տվյալների վրա, դիալեկտիկան աշխարհը
դիտում է որպես միասնական, զարգացող ամբողջություն։
Բայց դա խաղաղ ու անդորր միասնություն չէ, այլ անհանգիստ, շարժուն,
դինամիկ միասնություն, որի ներսում ծավալվում է հակադիր ուժերի պայ-
քար։ Այդ ուժերի ու տենդենցների պայքարը դրսևորվում է իրականության բո-
լոր բնագավառներում և հայտաբերվում բոլոր գիտությունների կողմից. մա-
թեմատիկայի մեջ այդ հակադրամիասնությունն են արտահայտում դիֆերեն-
ցիալն ու ինտեգրալը, ֆիզիկայի մեջ՝ դրական և բացասական լիցքավորված
մասնիկները, քիմիայում՝ ատոմների ասոցումն ու դիսոցումը, կենսաբանու-
թյան մեջ՝ ժառանգականությունն ու փոփոխականությունը, հասարակության
պատմության մեջ՝ անտագոնիստական դասակարգերը, տրամաբանության մեջ՝
անալիզն ու սինթեզը, ինդուկցիան և դեդուկցիան, աբստրակտն ու կոնկրետը
և այլն։

Բայց սա դեռ բոլորը չէ. իրականության ամեն մի առարկայի միասնու-
թյունը նրա այնպիսի հակադիր կողմերի միասնությունն է, ինչպիսիք են՝ ներ-
քինն ու արտաքինը, բովանդակությունն ու ձևը, էությունն ու երևույթը, որոնք
դիալեկտիկական տրամաբանության կողմից ուսումնասիրվող կատեգորիաներն
են հանդիսանում։

Երևույթներին ներհատուկ այս հակասությունն էլ այն անհանգիստ, ընդ-
վզող սկզբունքն է, որը Կ. Մարքսը, Յա. Բյոմեի նման, մատերիայի «երկունք»
էր անվանում։ Կ. Մարքսը մեծ համակրանքով էր շարադրում մատերիայի
շարժման վերաբերյալ Ֆ. Բեկոնի հայացքները, որը գտնում էր, որ «...Մատե-

րիայի բնածին հատկություններից առաջնագույնը և կարևորագույնը շարժումն է՝ ոչ միայն որպես մեխանիկական ու մաթեմատիկական շարժում, այլ առավել որպես ձգտում, կենսական ոգի, լարում, կամ օգտագործելով Յակոբ Բյոմեի արտահայտությունը՝ մատերիայի տառապանք (qual)» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հ. 2, ռուս. հրատ., էջ 142)։

Հակադրությունների միասնությունն ու պայքարը մատերիայի ընդերքում զարգացման աղբյուրն է։ Զարգացման առաջմղիչ ուժի այսպիսի մատերիալիստական ըմբռնումը, դեն նետելով բնության վրա դրսից ներգործող (այսինքն՝ գերբնական) ուժերի ըմբռնումը, շարժումն ու զարգացումը ներկայացրեց որպես մատերիայի «ինքնաշարժում»։

Ինչպիսի՞ հարաբերակցություն կա, մի կողմից, հակադրությունների միասնության և, մյուս կողմից, նրանց պայքարի միջև։ Չէ՞ որ «միասնությունն» ու «պայքարը» իրենք նույնպես հակադրություններ են կազմում։ Այդ առումով, ո՞րն է հանդես գալիս որպես ակտիվ, առաջատար։

Որքան էլ հակադրություններն անհաշտելի լինեն, դրանք հնարավոր չէ բաժանել, պոկել միմյանցից՝ չոչնչացնելով երևույթի ամբողջականությունը, չկանգնեցնելով շարժումը։ Բայց իրականությունն ամենևին էլ չի երաշխավորում իրերի մնայունությունն ու անձեռնմխելիությունը. զարգացումն անողորմ է։ Ուստի հակադրությունների պայքարը վերջիվերջո կործանում է հակադրությունների նախկին միասնությունը։

Ահա թե ինչու «հակադրությունների միասնությունը (համընկնումը, նույնությունը, հավասարակշռությունը) պայմանական է, ժամանակավոր, ռելյատիվ։ Միմյանց բացառող հակադրությունների պայքարը բացարձակ է, ինչպես որ բացարձակ է զարգացումը, շարժումը» (Վ. Ի. Լենին, Փիլիսոփայական տետրեր, ռուս. հրատ., էջ 328)։

Բուրժուազիան և պրոլետարիատը միմյանցից անջատ աներևակայելի են. նրանք, հակադրությունների պայքարից բացի, մի որոշակի «միասնություն» են, բայց միայն կապիտալիզմի շրջանակներում։ Դա կայուն «միասնություն» չէ, այլ հակամարտություններով փեռեկտված մի «ամբողջություն», որի զարգացման որոշ աստիճանի վրա, պրոլետարիատի կազմակերպված պայքարի հետևանքով կործանվում է բուրժուազիան և սկսվում է անտագոնիզմից զերծ սոցիալիստական հասարակության կառուցումը պրոլետարիատի ձեռքով։

Այստեղից հետևում է, որ առաջընթաց զարգացմանն օժանդակել՝ նշանակում է հայտաբերել ու հաղթահարել հակասություններն այնտեղ, ուր դրանք կան, բայց ամենևին էլ ոչ թե երկչոտությամբ կոծկել դրանք, կամ էլ էկլեկտիկորեն հաշտեցնել։ Հակադրությունների այդպիսի հաշտեցման գաղափարը ռեֆորմիզմի տեսական հիմքերից մեկն է։

Բայց դա չի նշանակում, թե ամեն մի միասնություն միշտ և ամենուրեք թերի, հարաբերական ու ժամանակավոր է։ Այդպիսի բնույթ ունի հակադրությունների միասնությունը։ Արմատապես այլ բնույթի է, օրինակ, միասնությունը ռեակցիայի ուժերի դեմ մղվող պայքարում։ Հայտնի է, թե համաշխարհային պատմության արդի դարաշրջանում ինչպիսի բացառիկ նշանակություն է ձեռք բերել սոցիալիստական լագերի միասնությունը, սոցիալիզմի ուժերի համախմբումը մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների հիման վրա։ Այստեղ միասնությունը ակտիվ, ռևոլյուցիոն ուժ է, որը ծառայում է պատմության առաջընթացին։ Այսպիսի միասնությունը նույնքան բացարձակ է, որքան և



պայքարը, որքան և ինքը՝ զարգացումը։ Շնորհիվ այն հանգամանքի, որ սո-
պայքարը, որքան և ինքը՝ զարգացումը։ Շնորհիվ այն հանգամանքի, որ սո-
ցիալիստական հասարակության մեջ բացակայում են թշնամական դասա-
կարգերը, այստեղ հակասությունները հակամարտական չեն, որոնք ժամանա-
կին գիտակցվում և հաղթահարվում են Կոմունիստական պարտիայի և Սովե-
տական կառավարության ծրագրված քաղաքականության շնորհիվ։
Հակադրությունների թե՛ միասնությունը, թե՛ պայքարը տարբեր պայման-
ներում տարբեր բնույթի են։ Հակադրությունների պայքարը կարող է տարբեր
ընթացք և ելք ունենալ։ Հակադրությունների միջև եղած հակասությունը միա-
տեսակ չի լուծվում. Կապիտալիստական երկրների միջև եղած հակասություն-
ները լուծվում են մի կերպ, իսկ սոցիալիստական երկրների միջև ծագող հա-
կասությունները՝ բոլորովին այլ կերպ։ Ինչպես ասում է Մաո Ցզե-դունը, միշտ
պետք է նկատի ունենալ հակասության յուրօրինակությունը։
Ի հակադրություն Հեգելի իդեալիստական դիալեկտիկայի, ըստ որի զար-
գացումը տեղի է ունենում «մաքուր մտքի» ոլորտում, այսինքն՝ ժամանակից
ու տարածությունից դուրս, մատերիալիստական դիալեկտիկան ընդգծում է
զարգացման կոնկրետությունը, պայմանավորվածությունը նրա իրագործման
ու ծավալման պայմաններով։
Տխրահռչակ ռևիզիոնիստ Բեռնշտայնը, որն ընդհանրապես խորշում էր
դիալեկտիկայից, Կ. Մարքսին և Ֆ. Էնգելսին կշտամբում էր, թե նրանք, իբր,
գերի լինելով դիալեկտիկային, «չափազանցնում էին պատմական զարգացման
ընթացքի արագությունը»։ Բայց նման կշտամբանքի նախադրյալն այն միտքն
է, թե դիալեկտիկան, իբր, պարտադրում է զարգացման սեփական, միայն իրեն
հատուկ ինչ-որ տեմպեր, «ընթացքի արագություն»։
Հեգելն էր, որ վերանալով զարգացման ռեալ պրոցեսի կոնկրետ ձևե-
րից, պնդում էր, թե գոյացումը, առաջացումը անզուսպ շարժում է (տե՛ս. Հեգել, Երկեր, հ. 1, ռուս. հրատ., էջ 156)։ Իսկ մատերիալիստական դիալեկտի-
կան, սահմանելով շարժման ու զարգացման առավել ընդհանուր օրենքները,
չի մոռանում, որ իրական զարգացումը մերթ սահուն է լինում, մերթ բուռն,
մերթ խաղաղ ու մերթ էլ՝ կատաստրոֆիկ։ Ուստի և զարգացման համընդհա-
նուր օրենքները, երբ դրանք կիրառվում են կյանքում, կարիք ունեն կոնկրե-
տացման և օբյեկտիվ աշխարհի կողմից թելադրված շտկումների։
Դիալեկտիկայի օրենքները՝ հակադրությունների միասնությունն ու պայ-
քարը, քանակական փոփոխությունների անցումը որակական փոփոխություն-
ների, բացասման բացասումը տարբեր կողմերից բնութագրում են զարգա-
ցումն ընդհանրապես։ Զարգացման կոնկրետության գաղափարը հիշեցնում է
իրականության տարբեր բնագավառներում զարգացման օրենքների յուրօրի-
նակության մասին։ Եվ ամենից առաջ իմացության զարգացումը, անշուշտ, չի
կարող լիովին նման լինել գոյի զարգացմանը։
Իհարկե, իդեաների դիալեկտիկան իրերի դիալեկտիկայի արտացոլումն
է։ Եվ եթե, օրինակ, գոյի զարգացման օրենքն է հակադրությունների միաս-
նությունն ու պայքարը, ապա, համապատասխանաբար, իմացության օրենք է
միասնականի երկատումը և նրա հակասական մասերի ճանաչումը։ Այս երկու
օրենքների տարբերությունը ավելի շատ ձևի մեջ է, քան բովանդակության։
Սուբյեկտիվ դիալեկտիկան կազմավորվել է օբյեկտիվ դիալեկտիկայի ճանաչ-
ման շնորհիվ և նրա օրինակով։
Բայց հենց այդ պատճառով էլ իմացությունը մշակել է ձևերի ու եղանակ-

ների մի սիստեմ, որոնց օգնությամբ ըմբռնում և արտահայտում է օբյեկտիվ աշխարհի զարգացումը։ Այսպես, իմացության փորձը վկայում է, որ իրի էության մեջ թափանցելու համար շատ բան է տալիս նրա ծագման, առաջացման ուսումնասիրումը։ Պատահական չէ, որ մարքսիզմ-լենինիզմը այնքան մեծ նշանակություն է նվիրել, ասենք, պետության առաջացման հարցին։

Մյուս կողմից, բարձր, առավել զարգացած ձևերի ուսումնասիրումը թույլ է տալիս ավելի լավ ըմբռնել ցածր ու քիչ զարգացած ձևերը։ «Մարդու անատոմիան կապիկի անատոմիայի բանալին է»,— այսպես է Մարքսը պատկերավոր կերպով բնորոշել ուսումնասիրման այդ եղանակը։ Եվ, իրոք, Մարքսի կողմից կապիտալիզմի վերլուծությունը նախորդ ֆորմացիաների ըմբռնման բանալին է։

Հետազոտման այս և մյուս եղանակները իրենցից ներկայացնում են մտածողության կառուցվածքի ու եղանակի հարմարեցումը օբյեկտիվ աշխարհի զարգացման դիալեկտիկային։ Հիրավի, իրի ծագումն ուսումնասիրելը արդյոք չի՞ նշանակում այն դիտել որպես ծագող, զարգացող։

Սակայն զարգացման յուրահատկություններ ունեն իրականության ո՛չ միայն երկու ամենամեծ ոլորտները՝ կեցությունն ու իմացությունը, այլև մատերիայի շարժման յուրաքանչյուր առանձին ձև, որովհետև այն տեղի է ունենում որպես կոնկրետ՝ ֆիզիկական, քիմիական, բիոլոգիական կամ սոցիալական շարժում, ընդ որում դրանցից ոչ մեկը չի կարող լիովին հանգեցվել մյուսին, նույնացվել մեկ ուրիշ ձևի հետ։

Մատերիայի տարբեր կերպ կազմավորված ձևերն օժտված են տարբեր բնույթի շարժումով և էներգիայով։ Աշխարհի ճանաչման և վերափոխման պատմությունը մատերիայի շարժման ու զարգացման օրենքների ճանաչման և նրա էներգիայի օգտագործման պատմությունն է։ XX դարը հազարամյակներ շարունակ կաշկանդված աներևակայելի վիթխարի էներգիայի՝ ժողովրդական մասսաների էներգիայի և ատոմային միջուկի էներգիայի ծավալման դարն է։

Մատերիալիստական «դիալեկտիկան որպես մի ուսմունք համակողմանի ու հակասություններով լի պատմական զարգացման մասին», մարքսիզմ-լենինիզմի ռևոլյուցիոն ոգին է, աշխարհը կոմունիստորեն վերակերտող նրա անփոխարինելի զենքը։

---

# ԵՐԴՎՅԱԼ ՋՐՊԱՐՏԻՉԸ ԳՐԱԿԱՆԱԳԵՏԻ ԴԻՄԱԿՈՎ

ՍՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ

Նոր չէ, որ «արվեստը արվեստի համար» ռեակցիոն սկզբունքի բուրժուական երկրպագուները թուղթ են մրոտ սովետական կարգերի և սոցիալիստական կուլտուրայի դեմ։ Հայկական բուրժուազիայի փշրանքներով սնված դաշնակ գրչակներն էլ 37 տարի է ինչ վայրահաչում են, որ իբր թե սովետական գրականությունն ու արվեստը «վերևի ճնշման» ու «հարկադրանքի» արգասիք են։

Բայց մի՞թե սոցիալիստական ռեալիզմի ստեղծագործական մեթոդը ամենագույն չափով իսկ սահմանափակում է գրողի ազատությունը, նրա մտքերն ու հույզերը, նրա՝ որպես արվեստագետի տեսադաշտը։ Իհարկե, ո՛չ։ Իրականում սոցիալիստական ռեալիզմի գրականությունը, որ ծնվել ու զարգանում է նոր, ավելի բարձր հասարակության՝ սոցիալիստական հասարակության պահանջներից, ո՛չ միայն չի սահմանափակում ստեղծագործողի մտքերն ու հույզերը, նրա ստեղծագործական ֆանտազիան, այլ, ըստ ամենայնի, ընդարձակում է գրողի մտահորիզոնը, նրան ազատում է ստեղծագործական սահմանափակումներից, փաստագրությունից ու լուսանկարչությունից։

Սոցիալիստական ռեալիզմի ստեղծագործական մեթոդը չի կաշկանդում, չի նեղացնում գրողի անձնական նախաձեռնությունն ու անհատականությունը, այլ ընդհակառակը, դրանք ազատ, առողջ ու լայն հունի մեջ է դնում, գաղափարական և գեղարվեստական, նոր որակի ստեղծագործության ուղի է բաց անում գրողի առաջ։

Ինչպես անցյալում, այնպես էլ այսօր բուրժուական մոլի էսթետները անվերջ ճիգեր են թափում՝ հերքելու սովետական գրականության և արվեստի մեծագույն նվաճումները։ Հասկանալի է, որ սովետական գրականությունն ու արվեստը զրպարտելու ասպարեզում չէին կարող ետ մնալ և դաշնակ հատ ու կենտ «գրականագետները», որոնք բառեր և միջոցներ չեն խնայում, որպեսզի սևացնեն սովետահայ սոցիալիստական գրականության հսկայական նշանակությունը։

Լենինը նշել է, որ միայն սոցիալիստական հասարակարգում կարող է իսկապես ազատ գրականություն լինել, որովհետև նյութական կարիքից ազատ գրողը կծառայի ո՛չ թե ճարպակալումից տառապող «վերին տասը հազարին», այլ միլիոնավոր աշխատավորներին, կստեղծի նրանց շահերին համապատասխանող հումանիստական, ազատ գրականություն։

Ընդգծելով գրականության հասարակական վերափոխիչ վիթխարի նշանակությունից, մեծագույն ուշադրություն նվիրելով գրականությանը՝ «Պարտիական կազմակերպություն և պարտիական գրականություն» ծրագրային հոդվածում Լենինը գրում էր. «Յուրաքանչյուր արվեստագետ, յուրաքանչյուրը, ով

իրեն այդպիսին է համարում, իրավունք ունի ստեղծագործել ազատորեն, համաձայն իր իդեալի, ամեն բանից անկախ»: Այնուհետև Լենինն ասում էր. «Անվիճելի է, որ գրական գործն ամենից քիչ է ենթարկվում մեքենայական հավասարեցման, համահարթման, մեծամասնության գերիշխանության՝ փոքրամասնության նկատմամբ: Անվիճելի է, որ այս գործում անպայման անհրաժեշտ է ապահովել անձնական նախաձեռնության, անհատական հակումների առավել ազատություն, մտքի ու երևակայության, ձևի ու բովանդակության առավել ազատություն»:

Լենինը միաժամանակ նշում էր, որ գրականությունն ու արվեստը արվեստագետի անձնական գործը չեն, այլ պարտիական աշխատանքի կարևոր մասը, ուստի կոմունիստները «չպետք է կանգնեն ձեռքները ծալած և թույլ տան, որ քաոսն ինչ ուղղությամբ ուզես զարգանա», այլ «պետք է միանգամայն պլանաչափորեն ղեկավարեն այդ պրոցեսը և ձևակերպեն նրա արդյունքները»:

Այսպիսին է կոմունիստների պահանջը գրականությունից: Այստեղ ստեղծագործական մտահորիզոնի նեղացում, անհատական հակումների ճնշում կամ ստեղծագործական ազատության վերացման մասին խոսք անգամ չի կարող լինել:

Գրականության պարտիականությունը, որ աշխատավորության ամենալայն խավերի շահերն արտահայտելով՝ ժողովրդայնության բարձրագույն աստիճանն է, բուրժուական-ինտելիգենտական կեղծ ազատության և սահմանափակության փոխարեն գրողի առաջ բաց է անում ստեղծագործական արձակ հորիզոններ, նրան մղում է ոչ թե ամուլ, գաղափարազուրկ, ճղճիմ ու, վերջին հաշվով, հասարակության համար վնասակար ստեղծագործության, այլ ներգրավում կենսահաստատ, ակտիվ պայքարի, նոր հասարակարգ կառուցող մարդկանց ոգեշնչելու:

«Ազատություն» լոզունգը օգտագործող գրչակներին առաջին հերթին անհանգստացնում է սովետական գրողների ստեղծագործությունների իդեական նպատակասլացությունը, իդեական միասնությունը, որ ուղղված է գիշատիչ կապիտալի դեմ, նրանց մտահոգում ու անհանգստացնում է գրականությունը ժողովրդի շահերին ծառայեցնելու սրբազան սկզբունքը:

«Սովետական գրականությունը տենդենցիոզ է. սովետական գրողները սոցիալական պատվեր են կատարում, իսկ այդ գրականություն չէ»,— աղաղակում են կապիտալի սպասարկու դաշնակ գրչակները:

Այս «մեղադրանքները», իհարկե, շատ հին են և բոլորովին զուրկ են որևէ հիմքից: «Տենդենցի» մասին խոսելիս, նրանք միամիտ ձևանալով անտեսում են այն օրինաչափ իրողությունը, որ կյանքը հենց ինքն ունի տենդենց և կյանքին հավատարիմ ու նրան ծառայող գրականությունը չի կարող տենդենց չունենալ: Մի՞թե համաշխարհային կլասիկների գրականությունը, որը ծառայում է կյանքին, զուրկ է տենդենցից: Հասկանալի է, որ սոցիալիզմի և կապիտալիզմի միջև տեղի ունեցող գաղափարական կատաղի պայքարից արվեստը չի կարող դուրս մնալ, ուստի և արվեստագետը, գրողը պետք է իր որոշակի տեղն ունենա այդ պայքարում:

Ռեակցիոն էսթետները սովետական գրողներին մեղադրում են, որ նրանք սոցիալական պատվեր են կատարում: Բայց բուրժուական աշխարհի ո՞ր առաջավոր, հումանիստ գրողը, անցյալի ո՞ր մեծ կլասիկը սոցիալական պատվեր չի կատարել: Միայն թե նրանք աշխարհայացքի որոշ սահմանափակության



պատճառով այդ կատարել են տարերայնորեն, անգիտակցաբար: Մինչդեռ մարքսիզմ-լենինիզմի ամենապարփակ աշխարհայացքով զինված սովետական առաջավոր գրողը «սոցիալական պատվերներ» կատարում է ոչ թե այս կամ այն դոգմաներով, այլ՝ ինքնաբուխ կերպով, կյանքի անմիջական թելադրանքով: Կյանքի հետ համընթաց գնացող, նրա զարգացման տենդենցները տեսնող գրողը այլ կերպ էլ չի կարող վարվել, չի կարող գրականությունն արհեստականորեն զրկել իր քաղաքացիական նպատակասլացությունից, նրա ազնըվագույն ու էական դերից՝ հասարակական վերափոխիչ ու դաստիարակիչ ակտիվությունից:

Պարտիան նշել է, որ սովետական գրականության ուժն այն է, որ նա չունի և չի կարող ունենալ այլ շահեր, բացի ժողովրդի շահերից, պետության շահերից: Այս սրբազան նպատակով է տոգորված մեր գրականությունը. այս է մեր գրականության միակ թելադրող միտումը:

Այո՛, պարտիան ղեկավարելով գրականությունը, ապահովելով ստեղծագործական ազատություն, գրողի, արվեստագետի ստեղծագործական առանձնահատկությունների լայն դրսևորում, միաժամանակ պահանջում է, որ գրականությունը տուրք չտա գաղափարազրկության-անկումայնության, նացիոնալիզմին, հոռետեսությանը, նատուրալիզմին, չտառապի հակագեղարվեստականությամբ, հակադաստիարակչական, հակաժողովրդական չլինի: Այո՛, գրողին այսպիսի «ազատություններ» չեն տրվում:

Իսկական գրողը, իսկական արվեստագետը, առաջավոր մտքերի և մեծ զգացումների դրոշակակիրը պետք է լինի, իր ստեղծագործությամբ հաստատի մարդկային վեհ գաղափարները, պայծառացնի ընթերցողի միտքն ու սիրտը, ազնիվ զգացմունքներ ներշնչի նրան: Այսպես ենք հասկանում մենք առաջավոր գրողի դերը հասարակության մեջ:

Սովետական կարգերի հաստատումից հետո արտասահման ճողոպրած դաշնակ մինիստրները, գրողներն ու գրականագետները, սփյուռքահայության մեջ վայնասուն բարձրացրին, թե Հայաստանում իշխանության գլուխ անցած կոմունիստները, որպես օտարներ, ժխտում են հայկական կուլտուրան, գրականությունն ու արվեստը, կործանում են այն:

Սակայն կյանքը ցույց տվեց, որ դաշնակները շանտաժ էին անում՝ չարաշահելու համար սփյուռքահայության հայրենասիրական զգացումները: Այսօր արդեն բոլորն էլ տեսնում են, որ Սովետական իշխանության 37 տարիներին հայ ժողովրդի կուլտուրան «հայանուն բոլշևիկների» ղեկավարությամբ, Սովետական կառավարության ամենօրյա հոգատարությամբ հասավ այնպիսի բարձունքների, որ գերազանցեց հայ մեծ լուսավորիչների լավագույն երազանքներն անգամ: Ո՛չ միայն չոչնչացվեց այն, ինչ որ հայկական էր, այլ դուրս բերվեց մոռացությունից, վերագնահատվեց, ժողովրդական լայն զանգվածների սեփականությունը դարձավ և մեծապես նպաստեց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական հայ կուլտուրայի, գրականության և արվեստի զարգացմանը: Խորենացուց մինչև Նարեկացին, Քուչակից մինչև Ֆրիկն ու Նաղաշ Հովնաթանը, Աբովյանից մինչև Նալբանդյանը, Րաֆֆին ու Պատկանյանը վերաարժեքավորվեցին և ժողովրդի սեփականությունը դարձան:

Տարված լինելով հայ ժողովրդի տնտեսական ու կուլտուրական վիթխարի նվաճումները վատաբանելու մոլուցքով, դաշնակ «գրականագետները» սովետահայ գրականության մեջ ամբողջ լավը վատ են տեսնում:

Այս առումով խիստ բնորոշ է վերջերս Եգիպտոսում լույս տեսած մոլի դաշնակցական Մ. Թյոլեյլյանի «Դար մը գրականություն» (1850—1950 թթ.) երկհատոր գիրքը։ Թույցե բոլորովին հարկ չլիներ անդրադառնալ այս ստվարածավալ հատորներին, քանի որ հեղինակը լակեյի հավատարմությամբ հետևում է միջազգային ռեակցիոն գրականագետների «տեսություններին», նրանց հակասովետական բարբաջանքներին՝ գրականության ձեռնարկը վերածելով ընդհանրապես հակասովետական լուտանքների մի ժողովածուի։ Սակայն, նկատի ունենալով, որ դա «գրականության» ձեռնարկ է և քողարկված է «անաչառության» և զուտ գրական ձեռնարկ լինելու ծխածածկույթով, նկատի ունենալով, որ արտասահմանում կգտնվեն միամիտներ, որ կցանկանան օգտագործել հայ գրականությունն ընդհանրապես և սովետական գրականությունը մասնավորապես արատավորող այս ձեռնարկը, մենք հարկ համարեցինք ցույց տալ դրա հեղինակի դաշնակցական դեմքը։

Բավական է միայն թերթել պարոն Թյոլեյլյանի «ձեռնարկը», որպեսզի համոզվել, որ և ոչ մի մարդ մինչև այժմ այնքան խիստ դաշնակցական նկրտումներով չի գրել հայ գրականության պատմությունը, ինչպես վարվել է վերոհիշյալ հեղինակը։ Գրականության անպարտիականության նշանաբանով այս անձնավորությունն ամենանեղ պարտիական և քաղաքական հարցերով է ծանրաբեռնել իր գիրքը։ Պարզ է, որ պ. Թյոլեյլյանը մի նպատակ ու մի տենդենց է ունեցել՝ գրականագետի ամբիոնից նողկալի լուտանքներ թափել «բոլշևիզմի» դեմ։ Նա հաճախ դիմում է նենգ պրիոմի, գրելով՝ «այդ հարցի վրա մենք չենք ուզեր կանգ առնել», «մեզ անմիջականորեն չեն հետաքրքրեր այդ հարցերը», «դարձյալ այս գրքին կոչումին մեջ չիյնար խոսիլ այդ մասին»։ Միաժամանակ շատ բնորոշ է, որ նա խոստովանում է, թե «Բոլշևիզմը, իբրև իշխանություն մեր երկրին, Սփյուռքի մեջ հոգեփոխության լայրծուն գետին մը ստեղծած է մեզմե ոմանց համար»։ Դա՞ որ խոստովանություն։

Ինչքան էլ ճիգ թափեն դաշնակները, ինչպիսի ախ ու վախ անեն, «բոլշևիզմի ենթահողը»՝ դա հայ ժողովրդի ազատ ու երջանիկ ապրելու դարավոր ձգտումն է, ազգային և սոցիալական բռնություններից ու շահագործումից ազատ լինելու ձգտումը, որն իրականացավ սովետական իրավակարգում։

Ամբողջ աշխարհին հայտնի է, որ հայ ժողովուրդը իբրև ազգ ֆիզիկապես փրկվեց և ազգային վերածննդի հնարավորություն ստացավ միայն սովետական կարգերի շնորհիվ։ Այս ընդունում են ո՛չ միայն մեր բարեկամները, այլև իրատես թշնամիները։ Ամեն տարի Հայաստան այցելող օտարերկրյա հյուրերն իսկ հիացմունքով են արտահայտվում վերածնված Հայաստանի մասին։ Սակայն դաշնակ պարագլուխների համար փույթ չէ. Նրանք շարունակում են վայրահաչել։

Բացարձակապես կեղծում է դաշնակ նորաթուխ «գրականագետը», երբ հայտարարում է, թե ինքն է հայ գրականության պատմության անդրանիկ հեղինակը։ Իսկ ո՞վ չգիտե, որ նրանից շատ առաջ Սովետական Հայաստանում լույս են տեսել հայ գրականության պատմության մի շարք ձեռնարկներ և բազմաթիվ մենագրություններ։

Գրականության պարտիականության սկզբունքի դեմ ծառս եղած պարոն Թյոլեյլյանը դաշնակների պատվերն է կատարում, երբ մեր գրականության կարկառուն ներկայացուցիչներին ներկայացնում է իր քիմքի համեմատ։ Այսպես, օրինակ, նրա հրատարակած գրքում միայն Լ. Շանթին այնքան տեղ է



հատկացված (29 էջ), որքան Մ. Նալբանդյանին, Ռ. Պատկանյանին, Րաֆֆուն,
Ս. Շահազիզին, Հ. Հովհաննիսյանին և Մ. Մեծարենցին միասին վերցրած։
Դաշնակցական Օշականին գրքում հատկացված է 26 էջ (շիրմաքարի լուսա-
նկարով հանդերձ), իսկ Ավ. Իսահակյանին, Վ. Տերյանին, Հ. Թումանյանին և
Շիրվանզադեին՝ 6-ական էջ։ Նալբանդյանի պես մեծ մտածողին հատկացված
է 2 և կես էջ, Րաֆֆու պես խոշոր գրողին՝ 4 էջ, իսկ Ավ. Ահարոնյանին՝ 15 էջ,
Տ. Չրաքյանին՝ 7 էջ և Տեմիրճիպաշյանին՝ 8 ու կես էջ։ Ամբողջ գրքի կառուց-
վածքում աղաղակող է հեղինակի պարտիական-դաշնակցական միտումը։

Հենց նախաբանից կեղծելով իր բուն նպատակադրումը, միամիտ ընթեր-
ցողին թյուրիմացության մեջ գցելու համար, ավելորդ հագնում է գառան մորթի
և անաչառություն խաղալով, «գրականության պատմությունը» շարադրելու իր
«սևեռումների», «կշռույթների», իր մեկնաբանությունների սիստեմի մասին
գրում է.

«Այդ բացատրությունները կբխեն աշխարհագրական, քաղաքական-ընկե-
րային և ճակատագրական տարբեր իրողությանց և իրադրություններու փաս-
տեն, և երբեք նույն ժողովրդի տարբեր հատվածներում իմացական, հոգեկան,
ազգային ու անհատական ապրումները ունայնամտորեն հակադրելու միտումե
մը։ Այս ձևով պիտի չներկայացնեինք գրականության պատմություն մը»։

Սակայն իր այս կեղծ «հավատո հանգանակը» շատ շուտով մոռանում է
«գրականության պատմագիրը», գառան մորթին ընկնում է նրա վրայից, և նա
ընթերցողին ներկայանում է իր իսկական արտաքինով ու ներքինով, սովետա-
կան կարգերն ու սովետական գրականությունը ատող դաշնակցականի դեմքով։

Մոռանալով նախորդ էջերում գրածը, «գրականության անաչառ ու լայ-
նախոհ պատմագիրը» շարունակում է շարադրել իր քաոսային մտքերը, երկ-
րորդ պարբերությունը հակադրել իր սեփական ձեռքով գրած առաջին պարբե-
րությանը, որտեղ նա ընթերցողին խոստանում է իր գրական բացատրություն-
ները բխեցնել սոցիալական, քաղաքական և աշխարհագրական իրողություն-
ներից և երբեք հայ ժողովրդի «տարբեր հատվածներում իմացական, հոգեկան,
ազգային ու անհատական ապրումները ունայնամտորեն հակադրելու միտու-
մե մը»։

Սակայն այս խաբուսիկ խոստումներից հետո նա շարունակում է. «...Մըտ-
քի ու սրտի մեր անկախության վրա կբռնանա վարչակարգ մը, որ գրականու-
թյունը ևս կուզե տեսնել տնտեսական ու ընկերային դավանանքի մը քարո-
զիչ, անկամ և անազատ սպասավորը ըլլալու դերին մեջ։ Չըսենք այստեղ
ծած, անկամ և անազատ սպասավորը ըլլալու դերին մեջ։ Չըսենք այստեղ
ավելին։ Բայց շեշտենք, որ արվեստի և գրականության մեր հասկացողության
հետ հաշտ չեն այդ հանգանակները, ու, առավ իսկ խորթ են հայու մեր ար-
յունին. մեր բնազդին ալ։ Չենք հուսահատ ու հոռետես, եզրակացնելու հա-
մար, որ խորհրդահայ գրագետն ու բանաստեղծը պարտված են իրենց վերա-
պահված չարիքին առջև։ Ընդհակառակը ավելի փաստ մը կնկատենք ի հաշիվ
հայուն անբռնաբարելի կենսունակության խորհրդահայ գրողներու նվաճում-
ները»։

Այսպիսով, մոռանալով իր «հավատո հանգանակը», մոռանալով այն, որ
գրականության իր բացատրությունները պետք է բխեին «քաղաքական, ընկե-
րային, աշխարհագրական իրողություններէ», Թյոլեյլյանն իր զույգ հատոր-
ների բազմաթիվ էջերում «մեղադրում է» սովետական իրավակարգը, որ գրա-
կանությունը ժողովրդին է ծառայեցնում, որ գրականությունը ենթարկում է

«տնտեսական և ընկերային դավանանքին», որոնք խորթ են դաշնակ գրականագետի արյանն ու բնազդին։

Իհարկե, մեզ համար տարօրինակ անակնկալ չէ նման խոստովանություն լսել դաշնակ Թյոլեյանի բերանից։ Նա կրկնում է միայն իր քաղաքական գաղափարակիցներին, միջազգային բոլոր գույնի ռեակցիոներներին, սովետական գրականության դեմ նրանց ունեցած ելույթները։

Մի ուրիշ ոչ անհայտ դաշնակցական գրող Շավարշ Նարդունին, Թյոլեյանից դեռ շատ առաջ, ժխտելով արվեստի ու գրականության ժողովրդայնությունն ու այն հակադրելով ժողովրդին, առանց քողարկելու իր մտքերը, բացահայտ գրել էր. «Ծառայել ժողովրդին, համակերպիլ անոր ճաշակին, հասկանալի ըլլալ Խոյին ու Մոսին,— ամբոխավարական պահանջներ են սակայն ատոնք, որ կվիրավորեն իմացական թռիչքները. արժանինոց գրականության սկզբունքներ են ատոնք, որ անարգանք կհասցնեն իմացականության... Հրավիրել հայ գրողը, որ գրե ժողովրդին հասկանալի լեզվով, կնշանակե ուրանալ մեծասքանչին փառքը»։

Գրական այս ամենառեակցիոն տեսակետները քարոզելուց հետո «Մեղեդիներ, մեղեդիներ» գրքում նույն մարդուկ Նարդունին ցինիկորեն բարբաջում է. «Արդ, ինչ որ կկոչվի մարդկություն, հիվանդություն մըն է»։

Այսպիսով, ըստ Նարդունու ու Թյոլեյանի գրականությունը չպետք է ծառայի «հիվանդության, որ մարդկություն կկոչվի»։

Դժգոհ լինելով այն բանից, որ սփյուռքահայ աշխատավոր զանգվածները ջերմորեն համակրում են իրենց Սովետական Հայրենիքին, դաշնակները զրպարտելով, նրանց անվանում են «ընկերային նախիր», «հոգևոր ճահիճ» և այլն, որոնց ծառայող և հասկանալի գրականություն ստեղծելու կարիք էլ չկա։

Բայց դառնանք «գրականության պատմագիր» պարոն Թյոլեյանին։ Նա հարկադրված է մասամբ խոստովանել «խորհրդահայ գրողներու նվաճումները», բայց դրանք իբրև թե ձեռք են բերվել՝ հաղթահարելով «չարիքը»։

Ի՞նչ չարիք է այդ։ Ըստ վայ գրականագետի դա Սովետական իշխանությունն է։ Սովետական հասարակությունը, որի ծոցում ծաղկում են հայ նոր կուլտուրայի առողջ ու պայծառ ծաղիկները, դաշնակները համարում են չարիք, իսկ դաշնակ խմբապետների արյունոտ, սանձարձակ տիրապետությունը, որտեղ խոսք անգամ չէր կարող լինել գրականության և արվեստի ծաղկման մասին, համարվում է երկնային բարիք։ Նման բարբաջանքներով է համեմված խիղճն ու բանականությունը կորցրած Թյոլեյանի հայ գրականության պատմությունը։

Իր «գրական ըմբռնումների» քաոսի մեջ մոլորված Թյոլեյանը հայ գրականության զարգացման ընթացքը «վերլուծելիս» հաճախ հարկադրվում է ընդունել, որ գրականությունը հրահանգներով չէ, որ ստեղծվում է, որ «քաղաքական, ազգային և ընկերային նոր պայմանները» որոշում են նրա զարգացման ընթացքը, որ «գրական զարթոնքը արդյունք էր կենսունակ մեր ժողովրդի ընդհանուր շահագրգռություններուն»։ Կամ՝ «Գրական մտահոգություններու առարկան է Թրքահայ ընկերային կյանքի բարեշրջումը, ազգային կյանքի կազմակերպումը՝ ժողովրդավարական հիմերու վրա»։

Պարոն Թյոլեյանի գեղագիտական հայացքների խառնաշփոթը զգացվում է աշխատության սկզբից մինչև վերջ։ Ինչպես ժողովուրդն է ասում, նա թե՛ նալին է խփում, թե՛ մեխին։ Մեկ ընդունում է, որ «քերթողը այնքան մեծ է,



որքան մոտ է իր ժողովրդին», մեկ՝ ժխտում է այն, մոլի պաշտպան կանգնելով «արվեստը ժողովրդից վեր» ռեակցիոն լոզունգին։

Մ. Թյոլեյանն այնքան հեռու է գնում, որ Լեոյին խստորեն հանդիմանում է այն բանի համար, որ նա «կհավատար, թե գրականությունը դաստիարակիչ դեր ունի, առավելաբար օգտապաշտական մտահոգություններով կկշռեր բանաստեղծական, վիպական, թատերական գործերու արժեքը...»։

Ժողովրդի ձգտումների թարգման գրականությունը իսկական գրականություն չէ, իսկ արևմտահայ միստիկ և դեկադենտական Տիրան Չրաքյանի բացահայտ զառանցանքները «մեր գրականության ամենեն թանկագին մատյաններ են»։ Այսպես է դատում պ. Թյոլեյանը։ Քանի՞ գրոշ արժի նման «գրականագիտությունը»։

Պարոն Մ. Թյոլեյանի գրած գրականության ձեռնարկում խոսում է ոչ թե «անաչառ ու լայնախոհ պատմաբանը», այլ՝ խավարամիտ ռեակցիոները, մոլի դաշնակցականը, որն ատելությամբ է լցված այն ամենի հանդեպ, ինչ զերծ է կապիտալիզմի արատներից, ինչ մերկացնում է դաշնակցության իդեոլոգիայի հակահեղափոխական էությունը։ Նա նույնիսկ վատաբանում է արևմըտահայ ականավոր գրող, երգիծաբան Երվանդ Օտյանին, որի լավագույն ստեղծագործությունները քաջ հայտնի են սովետահայ ընթերցողին։ Հասկանալի է, որ հայ ազգայնական կուսակցությունների հանդեպ նրա ժխտական, ծաղրական վերաբերմունքը դուր չի գալիս պարոն Թյոլեյանի քիմքին, դուր չի գալիս այն, որ մեծանուն երգիծաբանը մերկացրել է դաշնակցության կեղծ սոցիալիզմը, մերկացրել է «հեղափոխության մակաբույծներին»։

Սփյուռքահայ գրականության տաղանդավոր դեմքերից մեկի՝ Շահան Շահնուրի գնահատության մեջ էլ երևում է պարոն Թյոլեյանի անբարեխիղճ սուբյեկտիվիզմը։ Որպես թե Շահնուրը «հայության ամենեն մեծ նվիրականությունները չճանչցավ, ու չճանչնալուն համար ալ անարգեց, մարդ, որ չվարանեցավ սրբություններ ուրանալու կամ ոտնակոխելու»։

Ո՞րն է Շահնուրի «զարհուրելի մեղքը»։ Այն, որ նա մերժել է դաշնակցական գրականության «սրբությունները», կյանքի հորձանուտից առանձնանալու, անցյալի վերհուշերով ապրելու, ազգայնական պատյանի մեջ ներամփոփվելու դաշնակ գրականագետների քարոզները և իր «Նահանջ առանց երգի» վիպակում ու «Հարալեզներու հաշտությունը» պատմվածքների ժողովածուի մեջ տվել է սփյուռքահայ իրականության, ազգայնական պատրանքների սնանկությունը։ Շահան Շահնուրն արվեստագետի վարպետ գրչով, տխրության քողով պարուրված նուրբ հումորով տալիս է ֆրանսահայ երիտասարդության ռեալ կյանքը, նրա բարքերի վերասերումը, նոր սերնդի մութ ապագան, կյանքի դաժան պայմանները. հեղինակի դժբախտությունը միայն այն է, որ չի տեսնում այդ վտանգից ելք գտնելու միջոցները, ընթերցողին չի մղում պայքարի, չի ներարկում փրկարար սեր դեպի իր Սովետական Հայրենիքը։

«Դար մը գրականություն» ձեռնարկի երկրորդ հատորը ավելի մակերեսային, ավելի հակասական դատողություններով ու «վերլուծումներով» խաթարված և գրականության աղավաղված պատմություն է, որտեղ հեղինակի հակասովետական մոլեգնությունն անցնում է ամեն չափ ու սահման։

Շողոմ կեցվածք ընդունելով և զրպարտելով սովետահայ գրողներին, պարոն Թյոլեյանը քրթմնջում է ինչ-որ «պատվերների» և «հրահանգների» մասին. Նա գրում է. «Եթե կցավինք ճակատագրական այդ պարտադրանքին հա-

մար, պատճառն այն է, որ անհատական անկախության տարրական իրավունքը զլացված է հայ գրողին։ Հրահանգի մը ենթարկումով գրականություն մշակել՝ կարելի է նկատել պարտականություն մը»։

Բայց բարեխիղճ ընթերցողն այս տողերը կարդալուց հետո բնականորեն հարց է տալիս պարոն Թյոլեկյանին. իսկ ինչպիսի՞ ազատություն ունեին գրողները ձեր գովերգած «ազատ ու անկախ Հայաստանում» 1918—1920 թթ., ինչպիսի՞ տաղանդներ են ծաղկել այդ «ազատության մեջ», ինչպիսի՞ վերելք է ապրել «Հայաստանի հանրապետության» գրականությունը։ Կամ ներկայումս կապիտալիստական «ազատ» պայմաններում ինչպիսի՞ հայկական գրականություն են «ծաղկեցնում» դաշնակները։

Եվ ահա դարը փաստերի առաջ Թյոլեկյանը ստիպված է լռել։

Հասկանալի է, որ նախ գրականություն պետք է լինի, որպեսզի հնարավոր լինի խոսել նրա «ազատության», գրողի «անկախության» մասին։

Ամենից առաջ ծիծաղելի կլիներ խոսել ֆիզիկական գոյությունն իսկ վտանգված, անապահով ու կիսաքաղց գրողի ազատության մասին։ Մարդ հոգեպես ազատ լինելու համար նախ պետք է կարիքից ազատ լինի, մտքի և սրտի վրա ճնշող արյունից ու ավերից ազատ լինի։ Իսկ այդպիսի ազատություն չի եղել պարոն Թյոլեկյանի գովերգած «Հայաստանի հանրապետությունում» 1918—1920 թվականներին։ Փաստորեն գեղարվեստական գրականություն էլ չի եղել, որ հնարավոր լիներ խոսել գրողի ստեղծագործական ազատության և անկախության մասին։ Պարոն Թյոլեկյանը ոչ մի գրական ուշագրավ երկ չի կարող թվել, որ լույս տեսած լինի «ազատության» այդ տարիներին, կամ նշել մի ուշագրավ հեղինակի տպագրված գործ։ Մինչդեռ հարկավոր կլիներ մի քանի հատոր գրել՝ ցույց տալու համար մեր գրականության և արվեստի նվաճումները սովետական տարիներին։ Միամիտներն էլ հասկանում են, որ առանց ազատության, «պարտադրանքով» և «հրահանգով» չէր զարգանա գրականությունը, չէր ծաղկի հայկական խորապես ժողովրդային արվեստը, չէր աճի գրական այն տաղանդավոր սերունդը, որը առաջ է մղում մեր բազմահարուստ ու բազմաբովանդակ գրականությունը։

Հայ ժողովրդի, նրա տաղանդավոր զավակների ստեղծագործական ազատության մասին է խոսում այն փաստը, որ գիտության, գրականության և արվեստի բնագավառներում աճել են այնպիսի մարդիկ, որոնց համբավը ռեսպուբլիկայի և Միության սահմաններից դուրս է եկել, որոնք համաշխարհային հեղինակություններ են արդեն։

Սովետական գրողի հոգեկան աշխարհը, որ պայմանավորված է (Թյոլեկյանի բառով՝ թելադրված) սովետական իրականությամբ, մաքուր է, պայծառ, օպտիմիստական, ուստի և ենթակա չէ ոչ մի «կաշկանդումի», ոչ մի «զանցումի»։

Անդրադառնալով «ստեղծագործական ազատություն» կեղծ լոզունգին՝ շատ ճիշտ, շատ խորիմաստ և ուղղակի էր գրում սովետահայ տաղանդավոր արձակագիր հանգուցյալ Դ. Դեմիրճյանը. «Խնդիրն այն չէ, թե ինչ իրավունք ունենք գրելու, ինչ իրավունք չունենք։ Ազնիվ գրողը ինքը լավ կտեսնի, թե ինչ գրի։ Օրինակ՝ լավ է, որ մենք իրավունք չունենք գրելու պոռնոգրաֆիական, ղավաճանական, անբարոյական երկեր, այսինքն՝ հակաժողովրդական, հակաէսթետիկական, հակաբնական, հակամարդկային բաներ։ Արգելվում է



պաշտպանել բուրժուական կարգերը, միլիտարիզմը, թշնամանքը դեպի այլ ժողովուրդները»։

Ահա թե ինչպիսի «անհատական անկախության» սահմանափակում ունեն սովետական գրողները։

Բոլոր ողջամիտ մարդիկ ընդունում են, որ ամբողջ աշխարհի ժամանակակից գրականության մեջ սովետական գրականությունը ամենահումանիստական գրականությունն է, որի մտահոգության հիմնական օբյեկտը մարդն ու մարդկայինն է։ Մի գրականություն, որ տոգորված է վեհ գաղափարներով, ինտերնացիոնալիզմով, որ ձգտում է բարձրացնել մարդուն, նպաստել աշխարհի բոլոր ճնշված ժողովուրդների ազատագրությանը։ Դրա համար էլ աշխարհի առաջավոր մարդկությունը ջերմ սիրով է կարդում սովետական ականավոր գրողների երկերը, դրա համար էլ շատ երկրների առաջավոր գրողների ստեղծագործությունները բեղմնավորվում ու ծաղկում են համաշխարհային կլասիկ գրականության լավագույն տրադիցիաները շարունակող սովետական գրականության բարերար ազդեցությամբ։

Պարտիան սովետական գրողից պահանջում է այնպես գրել, որ ընթերցողը իր հերոսի հետևից ընթանա կոմունիզմի վեհ գործի համար մղվող պայքարի ուղիով։ Պարտիան պահանջում է կյանքն արտացոլել օպտիմիզմով ու բարձր մարդկայնությամբ, ստեղծարարության պաթոսով, կոլեկտիվիզմի ոգով, սովետական մարդկանց աշխարհազգացողության բոլոր հատկանիշներով տոգորված հուզիչ, բանաստեղծական հիասքանչ կերպարներով։

Այս է իրողությունը։ Հետևաբար, որքան էլ զրպարտի մեր երդվյալ թշնամի պ. Թյոլեկյանը, սոցիալիստական ռեալիզմի գրականությունը սկսած Գորկուց մինչև սովետահայ յուրաքանչյուր գրող, խորապես մարդկային է և ճըշմարտացի։ Եվ այդ գրականությունը ծաղկում է ու փթթում ի հեճուկս պ. Թյոլեկյանների։

* * *

«Խորհրդահայ վերադիրը ժամանակաշրջան մը կբնութագրե, և ոչ գրականության պատմաբանը»։ Սակայն հեկան նկարագիր մը»,— գրում է «գրականության պատմաբանը»։ Սակայն հետագա էջերում, մոռանալով իր այս «ողորմելի մտահղացումը», նա հաճախ խոսում է «գրական նկարագրի» մասին։

Սովետահայ գրականության նկարագրի ակունքները հասնում են մեր հնադարյան ու կլասիկ գրականությանը, որ հարուստ է դեմոկրատական տրադիցիաներով, ազգային և դասակարգային շահագործման ու բռնությունների դեմ բողոքի բուռն արտահայտություններով։ Այդպիսին է իրողությունը Ֆրիկի «Գանգատ»-ից մինչև Պերճ Պռոշյանի «Ցեցերն» ու «Հունոն», մինչև Թումանյանի «Գիքորը»։ Հայ գրականության դեմոկրատական այդ տրադիցիաներն է հարազատորեն ժառանգել ու զարգացրել սովետահայ ժամանակակից գրականությունը՝ հավատարիմ մնալով ամեն ազգի կուլտուրայի մեջ երկու կուլտուրա տեսնելու լենինյան դրույթին։

Պայքարելով դաշնակ ազգայնական ռեակցիոն գրականության, ֆորմալիզմի, պեսիմիզմի, միստիցիզմի և բուրժուական գրականության այլ արատների դեմ, սովետական ռուս գրականության բարերար ազդեցությամբ սովետահայ գրողներն ստեղծեցին նոր որակի գրականություն՝ սոցիալիստական

ռեալիզմի գրականությունը։ Նրա մեջ ազգայինն ու միջազգայինը ներդաշնակորեն միահյուսվում են, ազգային ձևն ու սոցիալիստական բովանդակությունը մերվում են միմյանց հետ և հայ գրականության դեմոկրատական տրադիցիաների զարգացումը հասցնում նոր մակարդակի։ Դա համապատասխանում է սովետահայ ընթերցողի նոր ձգտումներին, նոր մտահորիզոնին, հոգեկան նոր կառուցվածքին։ Ուստի, սովետահայ գրականության նվաճումները զուտ ազգային նվաճումներ չեն։ Սովետական ածականը մի նոր որակ է մտցնում նրա մեջ, խորապես ինտերնացիոնալ, օպտիմիստական, ռևոլյուցիոն որակ։ Եվ սփյուռքահայությանը չի կարելի խաբել, թե ամեն ինչ հին է, թե սովետահայ բանաստեղծը կրկնում է Պատկանյանին կամ Ալիշանին։

Դաշնակ Թյոլեկյանն ազգային գրականության ծաղկումը փորձում է ցույց տալ ծուռ հայելու մեջ։ Նա ազգայինն ուզում է հակադրել սոցիալիստական նոր բովանդակությանը, ազգայինը մեկնում է որպես ազգայնական, շովինիստական, նենգափոխում է մեր սովետահայ գրականության բուն էությունն ու նվաճումները։

Ո՞ր միամիտը կհավատա, թե Չարենցի կամ սովետահայ մի այլ գրողի խորապես ինտերնացիոնալ ու ռևոլյուցիոն երկերը ազգայնական են։

Այո՛, սովետահայ գրականության մեջ «հայուն հոգին խորունկ իրականություն է», այնպես ինչպես սովետահայ գրողներն են հասկանում իսկական հայի հոգին, որը տրամագծորեն հակառակ է դաշնակների պատկերածին։ Դաշնակների համար այդ «հոգին» ռասայական ատելությունն է այլ ժողովուրդների հանդեպ, թթու շովինիզմ, իմպերիալիստական արկածայնություն, անկումայնություն, ատելություն դեպի Սովետական իշխանությունը։ Դա, իհարկե, ոչ թե «հայու հոգին» է, այլ դաշնակ արկածախնդրի հոգին, որը խարազանել է Եղիշե Չարենցը հատկապես իր «Իմպերիալիստական Շավարշը» պոեմում։

Շատ լավ է գրել Չարենցը դաշնակ քաղաքական արկածախնդիրների մասին.

> Օ, դուք ողբալի պնակալեզներ,
> Բռնակալների մի հետին քուրջում
> Կծկված արդյոք կարո՞ղ եք տեսնել,
> Թե ինչո՞վ ենք մենք ապրում ու շնչում...

Ժամանակակից մեր գրականությունը, որ յուրացրել է հայկական հնադարյան ու կլասիկ գրականության լավագույն տրադիցիաները, ո՛չ միայն ազգային է, այլև սոցիալիստական-համամարդկային, որովհետև դա մեր էպոխայի շնչով է տոգորված և ծառայում է համայն մարդկության։

Մի՞թե բացահայտ հակասություն չէ, մի կողմից հայտարարել, որ սովետահայ գրողներն իբր վերապահ են մնացել «բոլշևիզմի գրական հանգանակներուն հանդեպ», և որ «Խորհրդային գրականությունը ուրիշ բան չէ, բայց եթե տարափողումը համայնավար գաղափարներու, հետևաբար, գրականություն չէ, այլ՝ հասարակ քարոզություն», մյուս կողմից՝ նույն գրքի այլ էջերում խոստովանել, որ ո՛չ միայն գոյություն ունի սովետահայ գրականություն, այլև այն ակնհայտ նվաճումների է հասել, «տիրական դեմքեր է տվել»։

Պարոն Թյոլեկյանը փաստերի առաջ հարկադրված է նահանջել և, մոռացության տալով իր նույն գրքում արտահայտած կարծիքները, ընդունել, որ ռևո-



լյուցիայի մեծ երգիչ, սովետական բանաստեղծության ականավոր ներկայացուցիչ Ե. Չարենցը «հսկայաքայլ նվաճումներ արձանագրեց խորհրդային գրականության մեջ՝ ռազմաշունչ և փոթորկոտ գրագետի քերթողական և արձակ գործերով։ Զորեղ անհատականություն մը, ինքնատիպության շեշտ գծերով, գրականության մեջ մեծություն մը կարենալ ըլլալու համար անհրաժեշտ խորքի, թե արտահայտության հատկանիշներով»։

Թյոլեկյանը ստիպված նույնպիսի բարձր գնահատական է տվել Ա. Բակունցի ստեղծագործություններին, նրան անվանելով «խորհրդային գրականության ամենեն մեծատաղանդ արձակագիրը»։

Իսկ որո՞նք են հիշյալ հեղինակների ստեղծագործությունների հատկանշական կողմերը։ Անսահման նվիրվածությունը ժողովրդին, սովետական հայրենասիրությունը, ռևոլյուցիոն կրքոտությունը, այն բոլորը, ինչ կազմում է սոցիալիստական ռեալիզմի էությունը, գրականության պարտիականության էությունը։

Չկարողանալով ժխտել Եղիշե Չարենցի մեծությունը, պարոն Թյոլեկյանը նենգափոխում է իրականությունը, երբ նրան «գերազանցապես ազգայնական» պիտակով է կնքում։ Դեռ ավելին։ Նա հանդգնում է Չարենցի «Երկիր Նաիրի» վեպի հերոս Մազութի Համոյին «համակրելի ու հիացման» արժանի գրական կերպար համարել։ Սակայն նա «մոռացել է», որ Չարենցի համար «Մազութի Համոն» արգահատելի մեկն էր, և որ «համոզված համայնավար» Չարենցը իր այդ հոյակապ վեպում մերկացրեց դաշնակների գծուծ, արյունախում և ավանտյուրիստական էությունը։

«Դար մը գրականություն» ձեռնարկի II հատորի 408—414 էջերում պարոն Թյոլեկյանը «վերլուծում է» ՀԿԳ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Սուրեն Թովմասյանի ելույթը՝ սովետահայ գրողների III համագումարում։

Իր ելույթում ընկ. Ս. Թովմասյանը սովետահայ գրողների առջև խնդիր էր դրել՝ ավելի մոտ կանգնել կյանքին և այն պատկերել իր հակասություններով, իր ռևոլյուցիոն զարգացման պրոցեսում։ Գրականության պարտիականության խնդիրը դնելիս նա շեշտել է, որ պետք է ստեղծել լիարյուն կերպարներ։

Լիարյուն գրական կերպարը բոլորովին դուր չի գալիս մեր գրականության վայ «պատմագրին»։ Ուրեմն, եզրակացնում է նա, այժմ այդ կերպարները «թերի համայնավարներ են», և Թովմասյանը պահանջում է, որ «լրիվ համայնավարներ» լինեն։ Այդ սարսափելի է թվում «գրականության պատմագրին», որը երևի ուզում է գրական դրական հերոսները լինեն անսկզբունք, անկամ, արատավոր մարդիկ։

Պարոն Թյոլեկյանին զայրացնում է նաև գրողների համագումարում ընկ. Ս. Թովմասյանի այն հայտարարությունը, թե՝ «ոչ մի շեղում չենք թույլ տա իդեոլոգիայի բնագավառում»։ Ուրեմն, եզրակացնում է Թյոլեկյանը, ուզում են սպանել հայոց ոգին, «ուրեմն պիտի աղավաղեն հին գրողներին»։

Նենգ ու խղճալի՜ մտայնություն։

Հասկանալի է, որ իդեոլոգիայի բնագավառում շեղում չկատարել՝ նշանակում է խստորեն պահպանել գրականության պարտիականության սկզբունքները։ Այդ սկզբունքները ոչ թե հակասում են ազգային գրականության առանձնահատկություններին, այլ զարգացնում են այն սոցիալիստական բովանդակությամբ։

Շարունակելով իրենց բեղմնավոր վերելքը, սովետական գրողներն ու արվեստագետները ելնում են լենինյան այն սկզբունքից, որ իրենց «ստեղծագործություններում հասարակության, ժողովրդի կյանքի ճշմարտացի լուսաբանումը ենթադրում է ցույց տալ ինչպես սոցիալիստական իրականության դրական, լուսավոր և վառ կողմերը, որոնք նրա հիմքն են կազմում, այնպես էլ քննադատել թերությունները, բացահայտել և դատապարտել բացասական երևույթները, որոնք արգելակում են մեր առաջընթացը» (Ն. Խրուշչով)։

Ինչ էլ գրեն գրականության դաշնակ «տեսաբանները», ինչքան էլ հայհոյեն սովետական և սովետահայ գրականության հասցեին, խորապես հումանիստական և ժողովրդային մեր գրականությունը առաջ է գնում, աճում են երիտասարդ, տաղանդավոր արձակագիրներ ու բանաստեղծներ, որոնք հարստացնում են ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական հայ գրականությունն ու կուլտուրան։

«Կհավատանք վերջապես, որ ամենազոր ժամանակը հարդը պիտի տա հովուն, ու ցորենը պիտի թողու Ամենայն հայոց գրականության հունձքին», գրում է պարոն Թյուլելյանը ձեռնարկի վերջում։

Այս մի հարցում մենք ևս համաձայն ենք պարոն Թյուլելյանին, միայն մի «փոքրիկ» ճշտումով։ Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի մաքրագործող մրրիկը վաղուց հարդը տվել է քամուն, ոչնչացրել գրականության դաշնակ վնասատուներին ու ցորենը թողել Սովետական Հայաստանի աշխատավորներին, որոնք խաղաղ վայելում են սովետահայ կուլտուրայի հունձի արտերի առատ բերքը։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Ս. ԱՌԱՔԵԼՅԱՆ

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեն վերջին տարիների ընթացքում նախատեսել
և հաջողությամբ իրագործում է խոշոր միջոցառումներ՝ մեր երկրում գյուղա-
տնտեսության շեշտակի վերելքն ապահովելու և գյուղատնտեսական մթերքնե-
րի առատություն ստեղծելու ուղղությամբ։ Հենվելով այդ գործում ձեռք բերված
հաջողությունների և տեղական կազմակերպությունների նախաձեռնության
վրա, պարտիան խնդիր է դրել մոտակա տարիներում բնակչության մեկ շնչին
ընկնող մսի, կաթի, յուղի արտադրությամբ հասնել ԱՄՆ-ին։ Այդ խնդրի լուծ-
ման գործում մեծ անելիքներ ունեն նաև սովետական տնտեսությունները։

Վ. Ի. Լենինը դեռ 1919 թվականին, հանդես գալով Պետրոգրադի նահան-
գի գյուղատնտեսական բանվորների առաջին համագումարում, սովետական
տնտեսությունների դերի և նշանակության մասին ասել է.

Սովետական տնտեսությունները մեր երկրում ստեղծվել են նրա համար,
«որպեսզի խոշոր տնտեսությունների մեջ ընդհանուր աշխատանքով ավելի լավ
արտադրվի, քան առաջ, ավելի էժան, քան առաջ, և ավելի շատ, քան առաջ»
(Երկեր, հ. 29, էջ 36)։

ՍՄԿԿ Կենտկոմը հետևողականորեն կենսագործելով Լենինի ցուցումները,
միշտ էլ մեծ ուշադրություն է նվիրել սովետական տնտեսությունների զարգաց-
ման և նրանց աշխատանքների բարելավման հարցերին։ ՍՄԿԿ XX համագու-
մարին Կենտկոմի տված հաշվետվության մեջ ասված է.

«Լուծելով գյուղատնտեսության հետագա վերելքի անհետաձգելի խնդիր-
ները, մենք պետք է հատուկ ուշադրություն նվիրենք սովետական տնտեսու-
թյունների զարգացմանը, որոնք սոցիալիստական գյուղատնտեսության կազ-
մակերպման բարձրագույն ձևն են»։

Վերջին տարիների ընթացքում պարտիան և կառավարությունը գործնական միջոցառումներ ձեռնարկեցին սովետական տնտեսությունների ցանցն ընդարձակելու, նրանց աշխատանքն արմատապես բարելավելու, այդ տնտեսություններում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն զգալիորեն ավելացնելու և բոլոր սովետական տնտեսությունները շահութաբեր դարձնելու ուղղությամբ։

Սովետական տնտեսությունների զարգացման և նրանց աշխատանքը բարելավելու գործում նկատելի աշխատանք է կատարվել նաև մեր ռեսպուբլիկայում։ Վերջին չորս տարիների ընթացքում ինչպես նոր յուրացվող հողերի, այնպես էլ տնտեսապես թույլ կոլտնտեսությունների բազայի վրա ընդարձակվել

է սովետական տնտեսությունների ցանցը: Եթե 1953 թվականին ռեսպուբլիկայում կար ընդամենը 25 սովետական տնտեսություն, ապա այժմ նրանց թիվը հասնում է 55-ի, որից 40-ը մտնում է Ժողտնտխորհի, իսկ 15-ը՝ Գյուղատնտեսության մինիստրության սիստեմի մեջ: Նրանց մեծ մասը խաղողագործական, խաղողապտղաբուծական և անասնապահական տնտեսություններ են:

Սովետական տնտեսություններում զգալի չափով ավելացել են ինչպես գյուղատնտեսական կուլտուրաների ցանքերը, խաղողի և պտղատու այգիների տարածությունները, այնպես էլ անասունների գլխաքանակը, որի շնորհիվ բարձրացել է գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքը: 1956 թվականին, 1953 թվականի համեմատությամբ խաղողի արտադրությունը աճել է 50,8 տոկոսով, կաթինը՝ 45,7 տոկոսով, մսինը՝ 22,6 տոկոսով, բրդինը՝ 71 տոկոսով: 1953 թվականին պետությանը հանձնված 96.680 ցենտներ խաղողի դիմաց 1956 թվականին հանձնվել է 145.632 ցենտներ, 28.045 ցենտներ բանջարեղենի դիմաց՝ 49.460 ցենտներ: 1956 թվականին սովետական տնտեսությունները պետությանը հանձնել են կաթ՝ 61 տոկոսով, միս՝ 33,1, բուրդ՝ 116,6 տոկոսով ավելի, քան 1953 թվականին:

1956 թվականին ռեսպուբլիկայի սովետական տնտեսությունները գինու և պահածոների արդյունաբերությանը հանձնել են նրանց կողմից մշակվող խաղողի 22,4 տոկոսը, պտղի՝ 46,3 տոկոսը, բանջարեղենի՝ 26,9 տոկոսը: Ռեսպուբլիկայի մի շարք սովետական տնտեսություններ աշխատում են շահութաբեր և տարեցտարի ավելացնում շահույթների քանակը: Այդպիսիների թվին են պատկանում՝ Վեդու շրջանի Կիրովի անվան, Հոկտեմբերյանի շրջանի Շահումյանի անվան, Նոյեմբերյանի շրջանի խաղողագործական, Ալավերդու շրջանի ոչխարաբուծական սովետական տնտեսությունները և շատ ուրիշներ: Վեդու շրջանի Կիրովի անվան սովետական տնտեսությունը սիստեմատիկաբար կատարում է պետական առաջադրանքները՝ բոլոր ցուցանիշներով: 1956 թվականին նրա շահույթները կազմել են 4158 հազար ռուբլի: Այստեղ ինչպես տնտեսական ղեկավարությունը, այնպես էլ պարտիական կազմակերպությունը լուրջ ուշադրություն են դարձնում այգիների բերքատվության բարձրացմանը, որի շնորհիվ էլ 1956 թվականին 403 հեկտար խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 109,5 ցենտներ բերք, պլանով նախատեսված 72 ցենտների դիմաց: Կոմունիստներ Կուռանյանի, Մնացականյանի և կոմերիտական Գուլոյանի ղեկավարած բրիգադաները յուրաքանչյուր հեկտարից ստացան 120—180 ցենտներ խաղող: Բերքատվության բարձրացման հետ միասին իջել է խաղողի ինքնարժեքը: Մեկ ցենտներ խաղողի ինքնարժեքը պլանով նախատեսված 151 ռուբլի 4 կոպեկի փոխարեն կազմել է 108 ռ. 75 կոպեկ: Սովետական տնտեսությունը պետությանը հանձնել է 4381 տոննա խաղող, պլանով նախատեսված 3096 տոննայի փոխարեն:

Չնայած ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները և սովետական օրգանները սովետական տնտեսություններում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման նպատակով բավական աշխատանք են կատարել, բայց այն դեռ հեռու է բավարար լինելուց: Չի կարելի մոռանալ, որ ռեսպուբլիկայի սովետական տնտեսությունների մի զգալի մասն աշխատում է վնասով և չի ապահովում պարտիայի ու կառավարության կողմից առաջադրված խնդիրների բազմակողմանի լուծումը: Անցած տնտեսական տարին վնասով են փակել Ժողտնտխորհի 40 սովետական տնտեսությունից 15-ը, Գյուղատնտեսության մինիստրության սիստեմի 15 սովետական տնտեսություններից՝ 9-ը:



Սովետական տնտեսություններում խաղողի միջին բերքատվությունը 1956 թվականի հոկտեմբերին կազմել է 62,4 ցենտներ, երբ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում այն կազմել է 64,2 ցենտներ, պտղատու այգիների բերքատվությունը չի անցնում 47, իսկ առանձին սովետական տնտեսություններում՝ 15—20 ցենտներից:

Խաղողի մեկ ցենտների ինքնարժեքը 1956 թվականին կազմել է 190 ռուբլի, նախատեսված 164 ռուբլու փոխարեն: Ժողտնտխորհի սիստեմի սովետական տնտեսություններում հսկայական հողային տարածություններ մնում են անօգտագործելի և խիստ դանդաղ է գնում նոր հողերի յուրացումը, խաղողի և պտղատու այգիների ընդարձակումը:

Գյուղատնտեսության մինիստրության սիստեմի սովետական տնտեսություններում անթույլատրելի կերպով ցածր է յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրվող մթերքների քանակը, չի կատարվում կաթի համախառն արտադրանքի և հանձնման պլանը: 1954 թվականին կաթի հանձնման պլանը կատարվել է 90,1 տոկոսով, 1956 թվականին՝ 76,1 տոկոսով: Այս սիստեմում դեռ բարձր է արտադրվող կաթի և մսի ինքնարժեքը. կաթի մեկ ցենտների ինքնարժեքը 1956 թվականին 97 ռ. փոխարեն կազմել է 125 ռ. 69 կոպեկ: Բարձր է նաև մսի և բրդի ինքնարժեքը:

Այսպիսի վիճակը բացատրվում է նրանով, որ ինչպես սովետական տնտեսությունների պարտիական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները, այնպես էլ պարտիայի շրջկոմները և շրջսովետների գործկոմները սովետական տնտեսությունների արտադրության հարցերով ինչպես հարկն է չեն զբաղվում և կտրուկ միջոցներ չեն ձեռնարկում՝ ապահովելու պարտիայի ու կառավարության կողմից նրանց առջև դրված խնդիրների լուծումը:

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի 1954 թվականի փետրվար-մարտյան պլենումը մեծ նշանակություն տալով սովետական տնտեսությունների աշխատանքների արմատական բարելավմանը՝ պարտիական օրգաններին պարտավորեցրեց ավելի մեծ ուշադրություն նվիրել սովետական տնտեսությունների ղեկավարմանը, ուժեղացնել վերահսկողությունը նրանց գործունեության նկատմամբ, ամենօրյա աշխատանք կատարել սովետական տնտեսությունների պարտիական կազմակերպություններն ամրապնդելու, գյուղատնտեսական մթերքների արտադրության վերելքի գործում նրանց դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու, պարտիական-քաղաքական աշխատանքն ուժեղացնելու, սովետական տնտեսությունները որակյալ կադրերով ապահովելու համար:

ՍՄԿԿ XX համագումարի և Կենտրոնական Կոմիտեի 1954 թվականի փետրվար-մարտյան պլենումի՝ սովետական տնտեսությունների աշխատանքը բարելավելու մասին որոշումների կատարումն ապահովելու գործում պարտիայի շրջանային կոմիտեների աշխատանքներում դեռ կան խոշոր և լուրջ թերություններ:

Առաջին և ամենահիմնական թերությունն այն է, որ պարտիայի շրջանային կոմիտեները պահանջված չափով խորամուխ չեն լինում սովետական տնտեսությունների աշխատանքների մեջ, թույլ են ղեկավարում նրանց և պարտիական կազմակերպությունների ու աշխատավորության ուժերը լրիվ չեն մոբիլիզացնում՝ եղած ռեզերվներն ամբողջապես օգտագործելու, արտադրությու-

նը բարձրացնելու և դրանով իսկ սովետական տնտեսությունները շահութաբեր դարձնելու համար։

Հայտնի է, որ գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում վճռական նշանակություն ունի սովետական տնտեսություններին ամրացված հողատարածությունների արդյունավետ օգտագործումը. բայց այդ հարցի վրա սովետական տնտեսությունների մի զգալի մասում հարկ եղած ուշադրություն չեն դարձնում։ Դրանով պետք է բացատրել այն, որ մինչև հիմա շատ հողատարածություններ, այդ թվում նույնիսկ ջրարբի հողերը, մնում են անօգտագործելի։

Բավական է ասել, որ Թալինի, Արղնի-Շամիրամ, Ներքին Ջանգվի ջրանցքների, ինչպես նաև Արմաշի ջրային կայանի շառավիղում գտնվող Ժողտնտխորհի սիստեմի սովետական տնտեսություններում 3680 հեկտար ջրարբի հողերից առ այսօր բազմամյա տնկիների տակ օգտագործվում է միայն 2033 հեկտարը։ Պարտիայի շրջանային կոմիտեները և շրջսովետների գործադիր կոմիտեները այդ գործում երբեմն հաշտվում են առանձին սովետական տնտեսությունների պարտիական կազմակերպությունների և տնտեսական ղեկավարների անբավարար աշխատանքի հետ։

Հողերի լրիվ և արդյունավետ օգտագործումը խոշոր ռեզերվ է գյուղատընտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու համար։ Պարտիայի շրջանային կոմիտեները և սովետական տնտեսությունների սկզբնական կազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները պետք է լրջությամբ զբաղվեն այդ հարցով, լիկվիդացնեն այդ գործում եղած թերությունները, ապահովեն հողային տարածությունների լրիվ օգտագործումը։

Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու մյուս կարևոր ռեզերվը գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացումն է։ Բայց պարտիայի շրջանային կոմիտեներն այդ հարցի վրա անհրաժեշտ չափով չեն բևեռում սովետական տնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների, տնտեսական ղեկավարների և ողջ բանվոր-ծառայողների ուշադրությունը, որի հետևանքով էլ սովետական տնտեսություններում այդ ուղղությամբ լարված աշխատանք չի կատարվում։ Տարիներ շարունակ մի շարք սովետական տնտեսություններ ցածր բերք են ստանում, չեն կատարում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման առաջադրանքները, իսկ պարտիայի շրջանային կոմիտեները և սկզբնական պարտիական կազմակերպությունները հանդուրժում են այդ։

Ինչպես հայտնի է, սովետական տնտեսությունների մեծ մասում հիմնական և վճռական ուղղությունը՝ խաղողագործությունը և պտղաբուծությունն է։ Բերքատվության բարձրացումը խոշոր ռեզերվ է խաղողի և մրգի համախառն արտադրանքն ավելացնելու գործում։ Բայց այս հանգամանքի վրա դեռևս լուրջ ուշադրություն չեն դարձնում։ Խաղողի բերքատվությունը հատկապես ցածր է Էջմիածնի շրջանի Միկոյանի անվան և № 4 սովետական տնտեսություններում, որտեղ յուրաքանչյուր հեկտարից վերջին տարիների ընթացքում ստացվել է ոչ ավելի, քան 40—60 ցենտներ բերք, իսկ Կոտայքի սովետական տնտեսությունում այն չի գերազանցում 20—30 ցենտներից։ Այդպես է դրությունը Հոկտեմբերյանի շրջանի Արաքս և Ստալինի անվան, Շահումյանի շրջանի Թայիրովի անվան սովետական տնտեսություններում։ Ցածր բերքատվության պատճառն այգիների



վատ մշակումն է, նրանց նոսրությունը և աշխատանքի անբավարար կազմակերպումը։ Այգիների գույքագրման վերջին տվյալներով նրանց նոսրությունը սովետական տնտեսություններում հասնում է 11 տոկոսի, կամ պակասում է 628.000 վազ, որը կազմում է մոտ 210 հեկտար այգի, իսկ Էջմիածնի շրջանի № 4, Հոկտեմբերյանի շրջանի Ժդանովի և Վորոշիլովի անվան սովետական տնտեսություններում այգիների նոսրությունը կազմում է 18—22 տոկոս։ Այգիների ջրման ռեժիմը չպահպանելու հետևանքով նույնպես զգալի չափով իջնում է բերքատվությունը և տասնյակ հեկտարներով այգիներ դուրս են գալիս շարքից՝ հսկայական վնասներ պատճառելով պետությանը։

Բերքատվության բարձրացման գործում խոշոր նշանակություն ունի առաջավոր ագրոտեխնիկական մեթոդների կիրառումը, որը նույնպես անբավարար է ընթանում։ Ինչպես հայտնի է, խաղողի վազերի տնկաշարքային սիստեմը հնարավորություն է տալիս լայն կերպով մեքենայացնելու այգիների մշակման պրոցեսները և բարձրացնելու բերքատվությունը։ Բայց չնայած դրան, ռեսպուբլիկայի սովետական տնտեսություններում դեռ 660 հեկտար այգու վազեր տնկաշարքային սիստեմով չեն մշակված։ Բերքատվությունը ցածր է նաև բանջարաբուծական սովետական տնտեսություններում, որի պատճառով էլ նրանք տարեցտարի թերակատարում են պլանները։

Իսկ ինչպե՞ս են այդ հարցերով զբաղվում պարտիական կազմակերպությունները։ Կարելի է ասել՝ անբավարար։ Նրանք այդ բոլորը տեսնում են, բայց փոխանակ գործնական միջոցներ ձեռք առնեն դրանց վերացման համար, բավարարվում են իրենց ժողովներում այդ կարգի թերություններն արձանագրելով։ Պարտիայի շրջանային կոմիտեներն էլ խոր անալիզի չեն ենթարկում այդ գործում գոյություն ունեցող թերությունները և անհրաժեշտ միջոցառումներ չեն ձեռնարկում դրանց վերացման համար։

Էջմիածնի շրջանում կան խաղողագործական և խաղողա-պտղաբուծական 5 սովետական տնտեսություններ, որոնց բերքատվությունը նվազել է։ Օրինակ, Միկոյանի անվան սովետական տնտեսությունը (դիրեկտոր՝ Սարգսյան, պարտկազմակերպության քարտուղար՝ Խանոյան) 1955 թվականին մեկ հեկտար խաղողի այգուց ստացել է 79,4 ցենտներ բերք, իսկ այս տարի՝ մոտ 46 ցենտներ, պլանով նախատեսված 66,4 ցենտների դիմաց։ Բերքատվությունը միանգամայն ցածր է շրջանի նաև մյուս սովետական տնտեսություններում։

Խաղողի մեկ ցենտների ինքնարժեքը 1956 թվականին № 4 սովետական տնտեսությունում կազմել է 211 ռուբլի, պլանով նախատեսված 150 ռուբլու դիմաց, Միկոյանի անվան սովետական տնտեսությունում՝ 206ռ. 46 կոպեկ, 129ռ. 85 կոպեկի դիմաց, Բաղրամյանի անվան սովետական տնտեսությունում՝ 164ռ. 12 կոպեկ, 140 ռ. 90 կոպեկի դիմաց։

Թվում էր, թե պարտիայի շրջանային կոմիտեն պետք է լուրջ ուշադրություն դարձներ այս թերությունների վերացման վրա, միջոցառումներ ձեռնարկեր դրությունը բարելավելու համար։ Թեև 1954—1957 թվականների ընթացքում պարտիայի շրջկոմի պլենումներում, բյուրոյի նիստերում քննարկվել են սովետական տնտեսությունների արտադրության բարձրացմանը վերաբերող որոշ հարցեր, բայց ընդունված որոշումները մնացել են թղթի վրա։

Շրջանային կոմիտեն սովետական տնտեսությունների պարտիական կազմակերպությունների ուշադրությունը չի ուղղում այդ տնտեսությունների մեջ գոյություն ունեցող խոշոր ռեզերվների օգտագործման վրա։ Շրջկոմի աշխա-

տողները քիչ են լինում սկզբնական պարտիական կազմակերպություններում և անբավարար օգնություն են ցույց տալիս նրանց, որի հետևանքով էլ նրանք աշխատանքում անհրաժեշտ չափով նախաձեռնություն հանդես չեն բերում, թույլ են իրականացնում ադմինիստրացիայի տնտեսական գործունեության նկատմամբ իրենց վերահսկողության ֆունկցիան և չեն բարձրացնում կոմունիստների պատասխանատվությունը տնտեսության վիճակի համար։

Պարտիայի շրջանային կոմիտեները սովետական տնտեսությունների պարտկազմակերպությունների նկատմամբ ղեկավարությունը և օգնությունը ուժեղացնելու միջոցով պետք է բարձրացնեն նրանց դերը և պատասխանատվությունը՝ սովետական տնտեսությունների առաջ դրված խնդիրների հաջող լուծման գործում։

***

Պարտիայի շրջանային կոմիտեները և անասնապահական սովետական տնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպությունները մինչև օրս էլ համապատասխան միջոցներ ձեռք չեն առնում անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու համար գոյություն ունեցող ռեզերվներն ամբողջապես գործի դնելու ուղղությամբ։

Սովետական տնտեսություններում ռեալ հնարավորություններ կան՝ մեծ չափով ավելացնելու 100 հեկտար հողատարածության դիմաց ստացվող անասնաբուծական մթերքների արտադրությունը, բայց այդ հնարավորությունները վատ են օգտագործվում։ Դրանով է բացատրվում այն, որ 1956 թվականին անասնապահական սովետական տնտեսությունները յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել են ընդամենը 117,4 ցենտներ կաթ, 18,1 ցենտներ միս և 1,4 ցենտներ բուրդ, որն անբավարար է։

Ինչպես նշեցինք, անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու համար սովետական տնտեսություններում կան բոլոր հնարավորությունները։ Դրանցից առաջինը՝ յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով անասունների և, հատկապես, կովերի գլխաքանակի ավելացումն է։ Ռեսպուբլիկայի անասնապահական սովետական տնտեսություններում, 1957 թվականի հունվարի 1-ի դրությամբ, 100 հեկտար հողատարածության դիմաց կար 16,9 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, որից կով՝ 6,2 գլուխ, ոչխար՝ 62,4 գլուխ, խոզ՝ 14 գլուխ։ Խոշոր եղջերավոր անասունների ընդհանուր հոտի մեջ կովերի տեսակարար կշիռը կազմում է ընդամենը 33 տոկոս։

Այդ ցուցանիշներն ավելի ցածր են, քան ռեսպուբլիկայի մի շարք շրջանների և կոլտնտեսությունների ցուցանիշները։ Եթե պարտիայի շրջանային կոմիտեները, սովետական տնտեսությունների պարտիական կազմակերպությունները և տնտեսական ղեկավարները լրջորեն զբաղվեն և եղած հնարավորությունների համապատասխան նպաստեն անասունների գլխաքանակի ավելացմանը, մեծ չափով կաճի անասնաբուծական մթերքների արտադրությունը։

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու ամենագլխավոր ռեալ միջոցը անասունների մթերատվության բարձրացումն է։ Բայց, ցավոք սրտի, մի քանի սովետական տնտեսություններում անասնաբուծության



մթերատվությունը ցածր է։ Կովերի կաթնատվությունը 1953 թվականի համեմատությամբ նվազել է մոտավորապես 30 տոկոսով։ Այս բնագավառում ամենից անմխիթար վիճակումն է Լոռվա անասնապահական սովետական տնտեսությունը, որտեղ կաթնատվությունը իջել է 50 տոկոսով, իսկ մսի արտադրությունը պակասել է մոտ 2 անգամ։ Կաթնատվության իջեցման պատճառն այն է, որ վատ է կազմակերպվում կովերի խնամքը, մեծ է ստերջ կովերի թիվը, չի ապահովվում խտացրած և հյութալի կերի արտադրությունը։ Բավական է ասել, որ խտացրած կերի դեֆիցիտը կազմում է 650—700 տոննա։ Լոռվա սովետական տնտեսությունը 1956 թվականի սիլոսային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստացել է միայն 27,8 ցենտներ կանաչ մասսա, իսկ 1957 թ.՝ 12,8 ցենտներ, ամեն մի հեկտար կարտոֆիլի բերքատվությունը չի անցել 25—28 ցենտներից, այսինքն՝ ստացել են այնքան բերք, որքան սերմացու են ցանել։

Լոռվա սովետական տնտեսության սկզբնական պարտիական կազմակերպությունը տնտեսության հարցերով վատ է զբաղվում, մանրամասն չի խորանում տնտեսության գործունեության մեջ, չի վերլուծում նրա ետ մնալու պատճառները, լռությամբ է անցնում թերությունների կողքով և հաշտվում է գոյություն ունեցող անմխիթար վիճակի հետ։

Պարտիական կազմակերպության մեջ հաշվվում է 47 կոմունիստ, բայց 5 անասնապահական և 2 դաշտավարական բրիգադներում պարտիական խմբեր չեն կազմակերպված։ Կոմունիստներից միայն 15-ն են աշխատում անասնապահության մեջ, իսկ 80 կոմերիտականից՝ միայն 12-ը։ Կազմակերպության ժողովներում քննարկված հարցերի վերաբերյալ ընդունված որոշումների կատարման ստուգումը չի կազմակերպված։ Պարտիական կազմակերպությունն անբավարար է զբաղվում սոցիալիստական մրցության կազմակերպման հարցերով, սիստեմատիկաբար չի ստուգվում վերցրած պարտավորությունների կատարման ընթացքը։

Նշված և մյուս թերություններն են պատճառը, որ այս սովետական տնտեսությունը 1955—1956 թվականների տնտեսական տարին փակել է վնասով։

Անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու խոշոր ռեզերվ է կովերի ստերջության վերացումը։ Այդ ուղղությամբ նույնպես անբավարար աշխատանք է կատարվում։ Սովետական տնտեսություններում կովերի ստերջությունը հասնում է 25—30 տոկոսի։ Դա նշանակում է, որ յուրաքանչյուր տարի զգալի չափով նվազում է անասնահոտի աճը և կովերի կաթնատվությունը։

Լրիվ չեն օգտագործվում նաև մսի արտադրության ռեզերվները. 100 հեկտար հողատարածության դիմաց 1956 թվականին արտադրվել է 18,1 ցենտներ միս, իսկ Սիսիանի կաթնաանասնապահական սովետական տնտեսությունը արտադրել է 8,9 ցենտներ, Մարտունունը՝ 13,9, Կրասնոսելսկի սովետական տնտեսությունը՝ 13,4 ցենտներ և այլն։

Մսի համախառն արտադրանքի ավելացման վրա բացասաբար են ազդում անասունների մեծ չափերի հասնող անկումները, բտման և գիրացման անբավարար կազմակերպումը։

Անասունների բտման և գիրացման վատ կազմակերպման հետևանքով ամեն տարի մեծ քանակությամբ անասուններ պետությանը հանձնվում են ցածր կոնդիցիայով. միայն 1956 թվականին հանձնված խոշոր եղջերավոր

անասունների 40,4 տոկոսը, ոչխարների 18,6 տոկոսը եղել են միջակից ցածր գիրությամբ։

Ռեսպուբլիկայի սովետական տնտեսություններն իրենց հնարավորությունները լավ չեն օգտագործում նաև խոզաբուծության զարգացման ուղղությամբ։ Բավական է ասել, որ անասնապահական սովետական տնտեսություններում 1957 թվականի սեպտեմբերի 1-ի դրությամբ ընդամենը կար 1647 գլուխ խոզ, այդ թվում խոզամայրեր՝ 220 գլուխ, կամ յուրաքանչյուր սովետական տնտեսություն միջին հաշվով պահում է 15 գլուխ խոզամայր և այդ այն դեպքում, երբ նրանք ունեին շատ ավելի մեծ հնարավորություններ։ Այգեպտղաբուծական սովետական տնտեսություններում ընդամենը կա 340 գլուխ խոզ, կամ յուրաքանչյուրը միջին հաշվով ունի 9—19 գլուխ խոզ։ Դրա համար էլ պատահական չէ, որ խոզի միսը կազմում է պետությանը հանձնվող ամբողջ մսի միայն 5—6 տոկոսը։

Խոզաբուծության արագ զարգացման համար անհրաժեշտ է ավելացնել խոզերի գլխաքանակը, բարելավել նրանց խնամքի, բտման ու կերակրման գործը, ամեն կերպ ավելացնել ստացվող խոճկորների քանակը։ Խոզաբուծության զարգացումը պետք է դառնա մեր սովետական տնտեսությունների ղեկավարների և սկզբնական պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրներից մեկը։

Անասնաբուծության մթերատվության բարձրացման, անասունների գլխաքանակի անկորուստ պահպանման ու ավելացման հարցերը անմիջականորեն կախված են կերի բազայից։

Չնայած հացահատիկային և բազմամյա կերային կուլտուրաների ցանքատարածությունների ավելացմանն ու ցանքերի ստրուկտուրայի փոփոխմանը, այնուամենայնիվ, սովետական տնտեսություններում դեռ լրիվ չի լուծված կերի կայուն բազայի ստեղծման հարցը։ Հատկապես անբավարար է խտացրած կերի ապահովումը՝ սեփական արտադրության հաշվին։ Ինչպես բազմամյա խոտաբույսերի, այնպես էլ կերային արմատապտուղների ու սիլոսային կուլտուրաների ցանքատարածությունների տեսակարար կշիռը սովետական տնտեսությունների ամբողջ ցանքատարածությունների մեջ դեռ քիչ տոկոս է կազմում, և այդ ուղղությամբ ունեցած լայն հնարավորությունները լրիվ չեն օգտագործվում։

Հողատարածությունների ոչ լրիվ և ոչ արդյունավետ օգտագործման հետ միասին ցածր է նաև մշակվող տարածություններից ստացվող հացահատիկային կուլտուրաների և խոտաբույսերի բերքատվությունը։ Շատ սովետական տնտեսություններում հացահատիկային ցանքատարածության ամեն մի հեկտարի բերքատվությունը չի գերազանցում 5—6 ցենտներից, բազմամյա խոտերինը՝ 20—40 ցենտներից, սիլոսային կուլտուրաներինը՝ 50—70 ցենտներից։ Պետք է ձեռք առնել վճռական միջոցներ վերոհիշյալ կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու և կերի կայուն բազա ստեղծելու համար։

***

Ինչո՞վ բացատրել, որ սովետական տնտեսություններում եղած հարուստ ռեզերվները և հնարավորությունները վատ են օգտագործվում։ Արդյոք կարելի՞ է ասել, որ դրա հիմնական պատճառն անհրաժեշտ ֆինանսական ներդրումների բացակայությունն է։ Իհարկե, կան որոշ ռեզերվներ, որոնց օգտագործումն իսկապես պահանջում է ներդրումներ, բայց խոսքը վերաբերում է այնպիսի հնարավորությունների օգտագործման, որոնք մեծ մասամբ և հիմնականում կախված են ժողտնտխորհի սննդարդյունաբերության սովետական տնտեսությունների տրեստի, անասնաբուծական սովետական տնտեսությունների վարչության, տեղական տնտեսական ղեկավարների աշխատանքից, ինչպես նաև պարտիայի շրջանային կոմիտեներից, շրջանային Սովետների գործկոմներից, նրանց կողմից սովետական տնտեսություններին ցույց տրվող ղեկավարության մակարդակից։



Շատ հաճախ սովետական տնտեսությունների պարտիական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները, պարտիայի շրջանային կոմիտեները իրավացի կերպով առաջ քաշելով սովետական տնտեսությունների զարգացման հեռանկարային մի շարք կարևոր հարցեր, աչքաթող են անում այսօրվա խնդիրների լուծումը, չեն նկատում, որ վատ է օգտագործվում այն, ինչ արդեն ստեղծված է։

Պարտիայի Հոկտեմբերյանի շրջանային կոմիտեն իր պլենումներում, բյուրոներում սովետական տնտեսությունների աշխատանքը բարելավելու մասին բազմաթիվ հարցեր է քննել և ընդարձակ որոշումներ ընդունել, բայց շրջանի մի շարք սովետական տնտեսություններում դեռ խոշոր թերություններ կան. անբավարար աշխատանք է տարվում այգիների նոսրության վերացման, այգեգործության մեջ առաջավոր տեխնիկայի կիրառման, առաջավոր այգեգործների փորձի ուսումնասիրման, տարածման ու արմատավորման, ինչպես նաև սոցիալիստական մրցության կազմակերպման ուղղությամբ։

Ժդանովի, Վորոշիլովի, Շահումյանի, Մյասնիկյանի անվան սովետական տնտեսությունների պարտիական կազմակերպությունները ամիսներով ժողովներ չեն գումարում։ Նրանք անբավարար են զբաղվում կոմունիստների ուժերը արտադրության մեջ ճիշտ տեղաբաշխելու և ունեցած հնարավորությունները օգտագործելու հարցերով։ Շահումյանի անվան սովետական տնտեսությունում 31 կոմունիստից արտադրության մեջ անմիջապես աշխատում են 3-ը, Վորոշիլովի անվան սովետական տնտեսությունում 31 կոմունիստից՝ 6-ը, Ժդանովի անվան սովետական տնտեսությունում 19 կոմունիստից՝ մեկը։ Ավելի լավ կլիներ, փոխանակ բազմաթիվ որոշումներ կայացնելու, շրջանային կոմիտեն ստուգեր իր որոշումների կատարումը և ուժեղացներ օգնությունը սկզբնական կազմակերպություններին, բարձրացներ նրանց նախաձեռնությունն ու մարտունակությունը։

Պարտիայի Նոյեմբերյանի շրջանային կոմիտեն սովետական տնտեսություններին և նրանց սկզբնական պարտիական կազմակերպություններին ղեկավարում է դեկլարատիվ բնույթի որոշումներ ընդունելով։ Ինչպես հայտնի է, Նոյեմբերյանի շրջանում կա 4 սովետական տնտեսություն, որոնք ունեն հսկայական հողային տարածություններ, մեծ հեռանկարներ խաղողագործության, պտղաբուծության և մերձարևադարձային կուլտուրաների զարգացման համար։ Նոյեմբերյանի շրջկոմի ընկերները սովետական տնտեսությունների մասին որոշումներ ընդունելիս ունեն նախօրոք մշակված որոշման մի պատրաստի կետ, որը բառացիորեն կրկնված է պարտիական վերջին երեք կոնֆերանսների որոշումների մեջ։

Սովետական տնտեսությունների նկատմամբ անբավարար ղեկավարության օրինակներ կարելի է բերել նաև ուրիշ շրջանային կոմիտեներից:

Պարտիայի շրջանային կոմիտեները, շրջսովետի գործկոմները և սկզբնական պարտիական կազմակերպությունները անբավարար են զբաղվում սովետական տնտեսությունների աշխատավորության շրջանում սոցիալիստական մրցության կազմակերպման, առաջավորների փորձի ուսումնասիրման, ընդհանրացման և արտադրության մեջ ներդնելու հարցերով: Սոցիալիստական մրցության կազմակերպման նկատմամբ հաճախ հանդես է բերվում ձևական, բյուրոկրատական մոտեցում, որի հետևանքով էլ ստանձնած պարտավորությունները լրիվ չեն կատարվում: Այսպես, Հոկտեմբերյանի շրջանի Արաքսի խաղողագործական սովետական տնտեսության կոլեկտիվը պարտավորություն է վերցրել արտադրելու 12.900 ցենտներ խաղող, բայց առ 1-ը հոկտեմբերի պետությանը հանձնել է ընդամենը 4650 ցենտներ: Դրությունը նույնն է նաև Շահումյանի շրջանի Թայիրովի անվան սովետական տնտեսությունում: Մի շարք սովետական տնտեսություններում անբավարար են կատարվում նաև մսի, կաթի և յուղի արտադրությունն ավելացնելու վերաբերյալ վերցրած սոցիալիստական պարտավորությունները: Ախտայի կաթնաանասնապահական սովետական տնտեսությունը (դիրեկտոր Ս. Ստեփանյան, պարտկազմակերպության քարտուղար Զ. Սահակյան) պարտավորվել է 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել՝ կաթ 300 ցենտներ, միս՝ 30 ցենտներ, բուրդ՝ 90 կիլոգրամ, բայց առ 1-ը հոկտեմբերի արտադրվել է՝ կաթ 146 ցենտներ, միս՝ 6 ցենտներ և բուրդ՝ 70 կիլոգրամ: Շատ օրինակներ կարելի է բերել, թե ինչպես սովետական տնտեսությունների պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպությունները սոցիալիստական մրցության կազմակերպման և ղեկավարման հարցերով թույլ են զբաղվում, իսկ պարտիայի շրջանային կոմիտեները հանդուրժում են այդ:

Պարտիայի շրջանային կոմիտեները պետք է ձեռք առնեն բոլոր միջոցները և ապահովեն կաթի, մսի, յուղի արտադրության ավելացման և գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման գծով վերցրած պարտավորությունների կատարումը, լրջությամբ զբաղվեն սոցիալիստական մրցության կազմակերպման հարցերով, ամեն կերպ խրախուսեն և արմատավորեն առաջավորների փորձը:

Պարտիայի շրջանային կոմիտեները և սկզբնական կազմակերպությունները պատշաճ ուշադրություն չեն դարձնում նաև սովետական տնտեսությունների բանվոր-ծառայողների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական, կուլտուր-մասսայական աշխատանքներին: Շրջանային կոմիտեների, շրջսովետի գործկոմների աշխատողները քաղաքական զեկուցումներով քիչ են հանդես գալիս սովետական տնտեսությունների կոլեկտիվների առաջ, անցկացվող քաղաքական-մասսայական աշխատանքը չի շաղկապվում տվյալ տնտեսության առաջ դրված խնդիրների և վերցրած պարտավորությունների կատարման հետ: Բազմաթիվ սովետական տնտեսությունների ավաններում չկա ռադիոհաղորդման ցանց, ամիսներով կինոնկարներ չեն ցուցադրվում:

Քաղաքական-դաստիարակչական աշխատանքների թուլությամբ կարելի է բացատրել աշխատանքային և արտադրական կարգապահության ցածր մակարդակը մի շարք սովետական տնտեսություններում: Բազմաթիվ բանվոր-ծառայողներ, ապրելով սովետական տնտեսությունների բնակելի շենքերում,



օգտվում են բոլոր արտոնություններից, բայց արտադրության մեջ չեն աշխատում: Արտաշատի շրջանի բանջարաբուծական սովետական տնտեսությունում 190 մարդուց աշխատանքի են դուրս գալիս միայն 30—40 մարդ: Այստեղ հողերը լավ չեն մշակվում, շատ հաճախ բերքը փչանում է դաշտում: Այս տարի 1570 տոննա բանջարեղեն արտադրելու փոխարեն արտադրվել է ընդամենը 643 տոննա: Արտաշատի շրջկոմը այդ սովետական տնտեսության մասին մեկը մյուսի հետևից որոշումներ է ընդունում, բայց դրությունը չի փոխվում:

Պարտիայի շրջանային կոմիտեները և սկզբնական կազմակերպությունները բոլոր միջոցներով բանվոր-ծառայողների շրջանում պետք է ուժեղացնեն քաղաքական-դաստիարակչական աշխատանքը և այդ ճանապարհով սովետական տնտեսություններում բարձրացնեն արտադրական և աշխատանքային կարգապահությունը:

Պարտշրջկոմները և սկզբնական կազմակերպությունները անբավարար աշխատանք են կատարում և թույլ են կապված սովետական տնտեսություններում աշխատող անպարտիական ակտիվի հետ: Դրանով է բացատրվում այն, որ 1957 թվականի ընթացքում սովետական տնտեսությունների 53 պարտիական կազմակերպություններից 32-ը պարտիայի շարքերի աճ չեն ունեցել:

Դեռ բավարար աշխատանք չի տարվում կոմունիստների ուժերը արտադրության վճռական տեղամասերում տեղադրելու համար. այդ է պատճառը, որ սովետական տնտեսություններում աշխատող կոմունիստների մի զգալի մասն անմիջապես արտադրության մեջ չի աշխատում, որի հետևանքով էլ մի շարք բրիգադաներում և ֆերմաներում չկան պարտիական խմբեր:

Սովետական տնտեսությունների շահութաբերությունը բարձրացնելու գործում մեծ նշանակություն ունի տնտեսության օժանդակ և լրացուցիչ ճյուղերի զարգացումը, բայց այդ հարցի վրա տնտեսական ղեկավարները և պարտիական կազմակերպությունները դեռ անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում: Չնայած եղած հնարավորություններին, մի շարք սովետական տնտեսություններում այդպիսի ճյուղեր չեն ստեղծված, իսկ որտեղ էլ կան, մղված են հետին պլանի վրա և նրանցից քիչ արդյունք է ստացվում, իսկ առանձին դեպքերում՝ նույնիսկ վնաս:

Ինչպես Ժողտնտխորհի սննդարդյունաբերության վարչության սովետական տնտեսությունների տրեստի, այնպես էլ Գյուղատնտեսության մինիստրության սովետական տնտեսությունների վարչության ղեկավարները դեռ լավ չեն խորանում իրենց ենթակայության տակ գտնվող սովետական տնտեսությունների աշխատանքների մեջ, տնտեսություններում գոյություն ունեցող թերությունները քիչ անհանգստություն են պատճառում նրանց: Առանձին սովետական տնտեսություններ տարիներ շարունակ ետ են մնում, որոնց հարցով վերոհիշյալ օրգանները կոնկրետորեն չեն զբաղվում:

Չի կարելի մոռացության տալ այն կարևոր հանգամանքը, որ որոշ սովետական տնտեսություններում (հատկապես նոր կազմակերպված) միանգամայն վատ է կազմակերպված բանվոր-ծառայողների կուլտուր-կենցաղային սպասարկումը: Այս ուղղությամբ շատ անելիքներ ունեն ո՛չ միայն պարտիական ու տնտեսական օրգանները, այլև Կուլտուրայի մինիստրությունն ու Հայկոոպը:

Անհրաժեշտ է նշել, որ մինչև օրս էլ պլանային աշխատանք չի տարվում սովետական տնտեսությունների կադրերի տնտեսագիտական և մասնագիտա-

կան ուսուցումը կազմակերպելու համար։ Նկատվում է կադրերի, հատկապես մասնագիտական կադրերի, հոսունություն։ Միայն Ժողտնտխորհի սովետական տնտեսություններում 1956 թվականին աշխատանքից հեռացվել են 45 մասնագետ, իսկ 1957 թվականի 9 ամսվա ընթացքում՝ 96 մասնագետ, այդ թվում 22 գյուղատնտես, 10 շինարար-ինժեներ։ Անասնապահական սովետական տնտեսությունների վարչության սիստեմում վերջին մեկ տարում փոխվել է սովետական տնտեսությունների դիրեկտորների մոտավորապես 50—60 տոկոսը։ Ժամանակն է, որպեսզի սովետական տնտեսությունները ունենան իրոք բանիմաց և գործին նվիրված ղեկավար կադրեր։

Պարտիայի շրջանային կոմիտեները դեռ թույլ են հսկում ու պահանջկոտություն հանդես չեն բերում սովետական տնտեսությունների ղեկավարների նկատմամբ, երբեմն հանդուրժում են առանձին դիրեկտորների անգործունեությունը և անտնտեսվարությունը։ Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Վեդու, Աշտարակի շրջանների սովետական տնտեսությունների դիրեկտորներից շատերը հաճախակի բացակայում են իրենց պաշտոնավայրից. աշխատելով շրջաններում, նրանք ապրում են Երևանում և շատ ժամանակ են կորցնում ամեն օր քաղաք գնալ-գալու համար։

Պարտիայի շրջանային կոմիտեները պետք է սիստեմատիկաբար ստուգեն սովետական տնտեսությունների ղեկավարների գործունեությունը, պարզեն, թե այս կամ այն ղեկավարը ինչպես է կազմակերպում աշխատանքը, գործի դնում եղած ռեզերվները և ապահովում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումը։ Անհրաժեշտ է, որպեսզի պարտիայի շրջանային կոմիտեներն ուշադրություն դարձնեն այդ հարցերի վրա և բարելավեն կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործը։ Սովետական տնտեսությունների ղեկավար կադրերին ամենօրյա օգնություն ցույց տալու հետ միասին, բոլոր միջոցներով պետք է բարձրացնել նրանց պատասխանատվությունը տնտեսության գործունեության համար։

ՀԿՊ Կենտկոմի պլենումը վերջերս քննելով սովետական տնտեսությունների նկատմամբ պարտիայի շրջկոմների ղեկավարության հարցը, համապատասխան որոշում ընդունեց սովետական տնտեսություններին ցույց տրվող ղեկավարությունը ուժեղացնելու և այդ գործում եղած թերությունները վերացնելու մասին։ Մնում է, որ պարտիայի շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները և սովետական օրգանները կոնկրետ ու գործնական աշխատանք ծավալեն կյանքում կենսագործելու Կենտկոմի պլենումի որոշումը, հասնելով այն բանին, որ ռեսպուբլիկայի բոլոր սովետական տնտեսությունները պատվով կատարեն պարտիայի ու կառավարության կողմից իրենց առջև դրված խնդիրները։

---

# ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐՆ ՈՒ ԿՈՆՖԵՐԱՆՍՆԵՐԸ

*Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ*

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններում հաշվետու-ընտրական ժողովները և շրջանային կոնֆերանսները անցան ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կենսագործման ուղղությամբ կատարված աշխատանքները հանրագումարի բերելու նշանաբանով։

Հաշվետու-ընտրական ժողովների և կոնֆերանսների արդյունքներից բխող հիմնական հետևությունն այն է, որ պարտիական մասսաները ավելի խորն են գիտակցում ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումների վիթխարի նշանակությունը մեր երկրի առաջխաղացման, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա ստեղծելու գործում և լարված աշխատանք են կատարում այդ որոշումների կենսագործման ուղղությամբ։

Պարտիական կյանքի լենինյան նորմերի վերականգնումը և նրանց հետևողական կիրառումը նոր լիցք հաղորդեցին պարտիական-կազմակերպական և պարտիական-քաղաքական աշխատանքներին, պարտիայի անդամների ստեղծագործական նախաձեռնության և ներպարտիական դեմոկրատիայի ծավալմանը։

Պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները և քաղաքային, շրջանային կոնֆերանսները հիմնականում անցան գործարար քննադատության ու ինքնաքննադատության նշանաբանով։ Տնտեսական և կուլտուրական շինարարության կարևորագույն հարցերն արծարծելիս պարտիական մասսաները բարձր սկզբունքայնություն և պահանջկոտություն ցուցաբերեցին պարտիական, սովետական և տնտեսական օրգանների և նրանց ղեկավարների նկատմամբ։

Պարտիական ժողովներում և կոնֆերանսներում արմատական հարցերի խոր և բազմակողմանի քննարկման ժամանակ դրսևորվեց կոմունիստների բարձր ակտիվությունը, նրանց պատասխանատվության խոր գիտակցումը՝ յուրաքանչյուր գործարանի, ֆաբրիկայի, կոլտնտեսության, սովետական տնտեսության, ՄՏ կայանի, պետական հիմնարկի, ուսումնական և գիտական հաստատությունների առջև կանգնած խնդիրների կենսագործման նկատմամբ։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում ներկա գտնվող կոմունիստների մոտ 40 տոկոսը ակտիվորեն մասնակցել է բյուրոների և քարտուղարների հաշվետվությունների քննարկմանը։ Իսկ Էջմիածնի, Արտաշատի, Ախուրյանի, Ծամշադինի, Երևանի, Լենինյան, Ստալինյան և այլ շրջանների պարտիական կազմակերպություններում

*հաշվետվությունների քննարկմանը մասնակցողների թիվը կազմում է ավելի բարձր տոկոս։*

*Հաշվետու ժողովները և կոնֆերանսները ցույց տվին, որ տնտեսության նկատմամբ պարտիական ղեկավարությունը բարելավելու շնորհիվ հաշվետու ժամանակաշրջանում լուրջ հաջողություններ են ձեռք բերվել արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման բնագավառներում։*

*Արդյունաբերության և շինարարության կառավարումը վերակառուցելու ուղղությամբ պարտիայի և կառավարության ձեռնարկած միջոցառումներն ավելի բարձրացրին տեղական պարտիական կազմակերպությունների պատասխանատվությունը արդյունաբերության և շինարարության ձեռնարկությունների աշխատանքների ղեկավարման գործում։ Հաշվետու ժողովները ցույց տվին, որ պարտիական կազմակերպությունները ներկայումս ավելի մոտիկից են զբաղվում արդյունաբերության և շինարարության ղեկավարման հարցերով։ Այժմ աշխատավորական լայն մասսաներն ակտիվ մասնակցում են արդյունաբերության կառավարմանը, որը լուրջ խթան է հանդիսանում նրանց ստեղծագործական ուժերի բազմակողմանի զարգացման և արտադրական պլանների հաջող կատարման գործում։*

*Նախնական տվյալներով, ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը 1957 թվականին՝ նախորդ տարվա համեմատությամբ աճում է մոտ 12 տոկոսով։ Ժողտնտխորհի սիստեմում եղած արդյունաբերական ձեռնարկություններն անցած 10 ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել են 103,4 տոկոսով, կամ անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ 111,6 տոկոսով։*

*Աչքի ընկնող հաջողություններ են ձեռք բերել մեքենաշինության, դազգահաշինության, պրիբորաշինության, էլեկտրատեխնիկական, ռեզինի, կարի, փայտամշակման և մի շարք այլ արդյունաբերական ճյուղեր։*

*Արդյունաբերության ղեկավարման, տեխնիկական պրոգրեսի, աշխատանքի արտադրողականության բարձրացման բնագավառում առանձնապես ուսանելի է Երևանի Կիրովի անվան կոմբինատի, ավտոդողերի և կաբելի գործարանների, Լենինականի տեքստիլ կոմբինատի, Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմկոմբինատի և այլ արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների աշխատանքի փորձը։ Այդ պարտիական կազմակերպությունների հաշվետու ժողովներում և կոնֆերանսներում նշվեց, որ նրանք կարողացել են բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների շրջանում հաջող կազմակերպել սոցիալիստական մրցությունը, մոբիլիզացնել կոլեկտիվները արտադրական բարձր ցուցանիշների հասնելու, պետական առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու գործում։*

*Երևանի շրջանային պարտիական կոնֆերանսներում մի շարք պատգամավորներ իրենց ելույթները նվիրեցին շինարարության հարցերին և լուրջ թերություններ նշեցին շինարարական կազմակերպությունների աշխատանքում։ Ստալինյան շրջանի պարտիական կոնֆերանսում պատգամավորներ Ս. Բոյախչեր, Ռ. Թումանյանը և ուրիշներ կոնկրետ օրինակներով ցույց տվին, որ առանձին օբյեկտների շինարարությունը ձգձգելու հետևանքով արդյունաբերությունը տուժում է։*

*Նշելով, որ շինարարական կազմակերպությունների հասցեին եղած քննադատությունը ճիշտ է, պատգամավոր Հ. Ղազարյանը միաժամանակ ասաց, որ*



*պարտիայի շրջկոմը, ինչպես նաև քաղկոմը, անբավարար են զբաղվում շինարարության աշխատանքի բարելավման հարցով։ Պարտիական օրգանների առանձին ղեկավար ընկերներ շինարարական հրապարակներում չեն լինում և կտրված են կառուցողների կյանքից։ Այդ է պատճառը, որ նրանք լավ չգիտեն, թե շինարարական հրապարակներում ինչպես է ընթանում աշխատանքը, ինչ կարիքներ ու պահանջներ ունեն շինարարները։*

*Բացահայտելով շինարարական կազմակերպությունների աշխատանքում եղած թերությունները, կոնֆերանսները կոնկրետ միջոցառումներ նշեցին դրանց վերացման և շինարարության պլանի կատարման համար։*

*Գյուղական պարտիական կազմակերպությունների հաշվետու ժողովները և շրջանային կոնֆերանսները ամենայն խորությամբ քննարկեցին այն հարցը, թե ինչ աշխատանք է կատարված ՍՄԿՊ XX համագումարի որոշումները գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու, ինչպես նաև մսի, կաթի, յուղի արտադրության գծով ԱՄՆ-ին հասնելու վերաբերյալ պարտիայի Կենտրոնական Կոմիտեի առաջադրանքը կենսագործելու ուղղությամբ։*

*Ընթացիկ գյուղատնտեսական տարվա նախնական արդյունքները վկայում են, որ կոլտնտեսային աշխատավորությունը, ՄՏ կայանների, սովետական տնտեսությունների բանվորները, գյուղատնտեսության մասնագետները այս տարի զգալի չափով բարձրացրել են գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, որը ռեսպուբլիկային հնարավորություն տվեց ժամկետից շուտ կատարելու հացահատիկի, ճակնդեղի, մսի, կաթի, բրդի, բանջարեղենի հանձնման պետական առաջադրանքները։*

*Գյուղատնտեսական մթերքների արտադրության բնագավառում ավելի նշանակալից հաջողություններ ունեն Շահումյանի, Էջմիածնի, Շամշադինի, Ախուրյանի, Բասարգեչարի, Սպիտակի, Կալինինոյի և այլ շրջանների պարտիական կազմակերպությունները։*

*Պարտիական մասսաների ստեղծագործական ակտիվության բարձրացման, գյուղատնտեսության մեջ նորի, առաջավորի ընդհանրացման և արմատավորման ուղղությամբ դրական աշխատանքի օրինակ է ցույց տալիս Շամշադինի շրջանային պարտիական կազմակերպությունը։ Շրջանի պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսում կոմունիստները կոնկրետ օրինակներով ցույց էին տալիս, որ պարտիայի շրջանային կոմիտեն և սկզբնական կազմակերպությունները զգալիորեն բարելավել են ղեկավարությունը գյուղատնտեսության նկատմամբ, որի շնորհիվ շրջանը ընթացիկ գյուղատնտեսական տարին ավարտում է բարձր ցուցանիշներով։ Բավական է նշել, որ ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումից հետո շրջանի կոլտնտեսություններն իրենց դրամական եկամուտը ավելացրել են մոտ հինգ անգամ։ Այդ շրջանի Մովսես գյուղի կոլտնտեսությունը (պարտկազմակերպության քարտուղար Գ. Այվազյան, կոլտնտեսության նախագահ Ս. Պապյան) 90 հեկտար ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստացել է 25 ցենտներ ծխախոտ, պլանով նախատեսված 16,5 ցենտների փոխարեն։ Կոլտնտեսությունը ամեն մի հեկտարից ստացել է խաղող՝ 105 ցենտներ, եգիպտացորեն՝ 27 ցենտներ։ Իսկ նույն շրջանի Նորաշենի կոլտնտեսությունը մեկ հեկտարից ստացել է հացահատիկ՝ 19 ցենտներ, եգիպտացորեն՝ 68,5 ցենտներ և կարտոֆիլ՝ 148 ցենտներ։*

*Գյուղատնտեսական մթերքների արտադրության բարձր ցուցանիշների*

մասին խոսվեց Ախուրյանի շրջանի Ղարիբջանյան գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպության հաշվետու ժողովում։ Ընթացիկ տարում կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից միջին թվով ստացել է 14 ցենտներ հացահատիկ, 442 ցենտներ շաքարի ճակնդեղ և յուրաքանչյուր ֆուրաժային կովից՝ 1600 կգ կաթ։ Սպիտակի շրջանի Արտագյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության քարտուղար Ն. Ոսկանյանը բյուրոյի աշխատանքների մասին տված հաշվետու զեկուցման մեջ նշեց, որ գյուղատնտեսության մեջ առաջավոր փորձը և ագրոզոոտեխնիկական միջոցառումները անշեղորեն կիրառելու շնորհիվ կոլտնտեսությունը պլանով նախատեսված 11 ցենտներ հացահատիկի փոխարեն յուրաքանչյուր հեկտարից ստացել է 18 ցենտներ, շաքարի ճակնդեղ՝ 206 ցենտների փոխարեն 353 ցենտներ, յուրաքանչյուր կովից՝ 1600 լիտր կաթի փոխարեն 2000 լիտր և յուրաքանչյուր ոչխարից 3,5 կգ բրդի փոխարեն՝ 4,1 կգ։ Կոլտնտեսության դրամական եկամուտը անցյալ տարվա 1,5 միլիոնի փոխարեն այս տարի կազմում է 2.300.000 ռուբլի։

Այս կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում խոսելով հաջողությունների մասին, կոմունիստները միաժամանակ բացահայտեցին եղած թերությունները և կոնկրետ առաջարկություններ արին պարտիական աշխատանքի հետագա բարելավման համար։

Հաշվետու ժողովները կոմունիստների ակտիվ մասնակցությամբ անցան նաև Թալինի շրջանի Աշնակ, Քյալաշբեկ, Մաստարա, Ցամաքասար, Սևանի շրջանի Նորաշեն, Ցայջի, Բասարգեչարի շրջանի Ակունք, Զախրլու, Նորակերտ, Աղինի շրջանի Բագրավան, Ջիթհանքով, Լուսաղբյուր և այլ շրջանների կոլտնտեսային պարտիական կազմակերպություններում։

Թալինի շրջանի Քյալաշբեկ գյուղի պարտիական կազմակերպության հաշվետու ժողովում ելույթ ունեցող կոմունիստները խիստ քննադատության ենթարկեցին պարտիական կազմակերպության բյուրոյին և նրա քարտուղարին (Ա. Ռզգոյան), որոնք չէին ապահովել կոլտնտեսության վարչության նկատմամբ պարտկազմակերպության վերահսկողության ֆունկցիան, չէին կարողացել կոմունիստների ուժերը մոբիլիզացնել կոլտնտեսային արտադրությունը բարձրացնելու համար, ինքնահոսի էին մատնել կոմունիստների մարքս-լենինյան ուսուցման գործը։ Այդ է պատճառը, որ կոլտնտեսությունը խիստ ետ է մնում գյուղատնտեսական մթերքների արտադրությամբ։ Այսպես, օրինակ, հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը ամեն մի հեկտարից 11 ցենտների փոխարեն կազմել է 9,9 ցենտներ, յուրաքանչյուր կովից 1100 կգ կաթի փոխարեն ստացվել է 875 կգ։ Եվ բնավ էլ պատահական չէ, որ ժողովը կազմակերպության բյուրոյի աշխատանքը գտավ անբավարար։

Աշտարակի շրջանի Փարպիի կոլտնտեսության սկզբնական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովը բյուրոյի աշխատանքը գնահատել է անբավարար նրա համար, որ նա աչքաթող է արել պարտիական-քաղաքական և կազմակերպական աշխատանքը։ Պարտիական կազմակերպությունը բազմաթիվ որոշումներ է ընդունել կոլտնտեսությունում աշխատանքային կարգապահությունը բարձրացնելու համար, բայց բյուրոն չի հետևել այդ որոշումների կատարմանը, որի պատճառով կոլտնտեսականների մի մասը չի մասնակցել կոլտնտեսային աշխատանքներին, չի կատարել աշխօրերի պարտադիր մինիմումը։ Պարտիական բյուրոն չի ապահովել կոմունիստների և կոմերիտականների ավանգարդային դերը արտադրության մեջ։ Կոլտնտեսության



այգիների մշակման և բուժման աշխատանքների վատ կազմակերպման հետևանքով շատ ցածր է այգիների բերքատվությունը։ Ցածր է նաև հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը. թերակատարվել են անասունների գլխաքանակի աճեցման և կերի կուտակման պլանային առաջադրանքները։

Պարտիական աշխատանքների թույլ դրվածքի, արտադրության, հատկապես այգեգործության նկատմամբ անհոգություն ցուցաբերելու համար Արտաշատի շրջանի Մրգավան և Ջրվաշեն գյուղերի կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու ժողովները պարտիական բյուրոների աշխատանքը գտել են անբավարար։

Հաշվետու-ընտրական ժողովներում և պարտիական կոնֆերանսներում հանգամանորեն քննարկվեցին պարտիական կոմիտեների, բյուրոների, քաղկոմ-շրջկոմների և նրանց քարտուղարների աշխատանքի ոճի հարցերը։ Առանձնապես կոմունիստների ուշադրության կենտրոնում էին գտնվում տնտեսության նկատմամբ պարտիական կազմակերպությունների ղեկավարությունն ապահովելու ձևերի ու մեթոդների, կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակման, կատարման ստուգման, պետական ու պարտիական կարգապահության ամրապնդման և պարտիական կազմակերպությունների կողմից տարվող իդեոլոգիական աշխատանքի հարցերը։

Այնտեղ, որտեղ պարտիայի շրջանային կոմիտեները սիստեմատիկաբար խորամուխ են եղել սկզբնական կազմակերպությունների գործունեության մեջ, կատարելագործել են պարտիական աշխատանքների ձևերն ու մեթոդները, կարճ ժամանակամիջոցում լուրջ արդյունքների են հասել տնտեսական և քաղաքական խնդիրների լուծման բնագավառում։

Հայտնի է, որ վերջին տարիների ընթացքում Արթիկի շրջանը տևականորեն ետ էր մնում։ Շրջկոմը և շրջգործկոմը լրջորեն չէին զբաղվում ՄՏ կայանների և կոլտնտեսությունների հարցերով, չէին թափանցում նրանց գործունեության մեջ, անհրաժեշտ չափով չէին օգտագործում շրջանում եղած ռեզերվները։ Գյուղատնտեսության ղեկավարությունը նրանք իրագործում էին պարտիայի կողմից դատապարտված մակերեսային-ձևական և դեկլարատիվ մեթոդներով։ Դժբախտաբար աշխատանքի այդ ոճն ընդօրինակում էին նաև շատ սկզբնական պարտիական կազմակերպություններ և կոլտնտեսության վարչություններ։

Շրջանային կազմակերպությունները լուրջ սխալներ էին թույլ տալիս նաև գյուղատնտեսության պլանավորման հարցերում։ Պարտիայի Արթիկի շրջկոմը ճիշտ չէր կողմնորոշում սկզբնական կազմակերպություններին և կոլտնտեսություններին՝ նրանց գործունեության ընթացքում։ Նա հաշտվել էր այն բանի հետ, որ գյուղատնտեսական աշխատանքները պլանավորելիս հաշվի էին առնվում ոչ թե շրջանի և յուրաքանչյուր կոլտնտեսության ռեալ հնարավորություններն ու ռեզերվները, այլ անցած տարիների ոչնչով չարդարացված ցածր ցուցանիշները, որի հետևանքով արմատացել էր կոլտնտեսությունների տարեկան արտադրական առաջադրանքների սիստեմատիկ իջեցման վտանգավոր պրակտիկան։ Շրջանում բացակայում էր սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը, թուլացել էր պարտիական կազմակերպությունների մարտունակությունը, շրջանում ընկած էր պարտիական և պետական կարգապահությունը, շրջանի ղեկավար աշխատողները փոխադարձաբար կոծկում էին սխալներն ու թերությունները ի վնաս պարտիական և պետական շահերի։

Ահա թե ինչու ՀԿՊ Կենտկոմը այս տարի հունիսին, քննության առնելով գործերի վիճակը Արթիկի շրջանում, խիստ կերպով դատապարտեց Արթիկի շրջկոմի աշխատանքի սխալ ոճը և միջոցառումներ ձեռնարկեց շրջանի պարտիական կազմակերպությունների աշխատանքներն արմատապես բարելավելու ուղղությամբ: Վերջերս տեղի ունեցած շրջանային պարտիական կոնֆերանսում պատգամավորներ՝ Ն. Առաքելյանը, Փ. Դարբինյանը, Հ. Եդիգարյանը, Ա. Հովհաննիսյանը և ուրիշներ կոնկրետ օրինակներով ցույց տվին, որ պարտիայի շրջկոմը և սկզբնական պարտիական կազմակերպությունները ճիշտ հետևություն հանելով Կենտկոմի բյուրոյի որոշումից, կարողացան հաջողությամբ կատարել շրջանի առջև դրված խնդիրները: Շրջանը այս տարի ժամկետից շուտ կատարեց հացահատիկի, կաթի, մսի, բրդի հանձնման պետական առաջադրանքները: Պատգամավորները միաժամանակ նշում էին, որ դրանք դեռևս նախնական քայլերն են և կոնկրետ առաջարկություններ էին անում Կենտրոնական Կոմիտեի բյուրոյի որոշումը մինչև վերջ կենսագործելու համար:

Հաշվետու ժամանակաշրջանում նկատելիորեն աշխուժացել է պարտիական կազմակերպությունների կողմից տարվող իդեոլոգիական աշխատանքը, զգալի չափով հաղթահարվել է պրոպագանդիստական և ագիտացիոն-մասսայական աշխատանքների կտրվածությունը կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրներից: Բարձրացել է կոմունիստների հետաքրքրությունը դեպի ՍՄԿՊ համագումարների, կոնֆերանսների և պլենումների որոշումները, որոնցում ընդհանրացված են սոցիալիստական շինարարության փորձը և մարքսիստական-լենինյան թեորիայի հարցերը:

Պարտիական կազմակերպությունները առանձնակի ուշադրություն են դարձնում կադրերի տնտեսագիտական ուսուցմանը: Գնալով ավելի լայնորեն են կիրառվում ուսուցման այնպիսի ձևեր, ինչպիսիք են՝ արդյունաբերության և գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկայի հարցերին վերաբերող կոնֆերանսները, սեմինար պարապմունքները, որտեղ ակտիվորեն մասնակցում են գիտնականները, ինժեներա-տեխնիկական աշխատողները, գյուղատնտեսության մասնագետները, ինչպես նաև արտադրության առաջավորները: Սակայն հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսներում լուրջ թերություններ բացահայտվեցին գաղափարական և ագիտացիոն-մասսայական աշխատանքների բնագավառում:

Այսուհետև արդյունաբերության և գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակների, սեմինարների և կոնֆերանսների խնդիրը պետք է լինի՝ տնտեսությունը վարելու կոնկրետ ձևերն ու մեթոդներն ուսումնասիրելիս հաշվի առնել տեղական պայմանները և ամբողջ պարտիական-կազմակերպական և քաղաքական աշխատանքն ի սպաս դնել տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների հաջող լուծմանը:

Արտադրության առաջավոր փորձը պրոպագանդելու և կադրերի տնտեսագիտական ուսուցումը կազմակերպելու ժամանակ վճռական նշանակություն ունի դոգմատիզմի, շաբլոնի, քարացածության հաղթահարումը:

Եղեգնաձորի շրջանային պարտիական կոնֆերանսում նշվեց, որ շրջանի շատ կոլտնտեսությունների ետ մնալու պատճառն այն է, որ ղեկավար կադրերից շատերի մոտ բացակայում է նորի զգացումը, չեն ընդհանրացվում և ներդրվում գյուղատնտեսական գիտության նվաճումները և առաջավորների փորձը: Պարտիայի շրջկոմը անբավարար է ղեկավարում պարտիական կազ-



մակերպությունների և սովետական օրգանների աշխատանքը և միջոցառումներ չի ձեռնարկում բարձրացնելու կադրերի քաղաքական և տնտեսագիտական գիտելիքները:

Գաղափարական-քաղաքական աշխատանքը տնտեսական խնդիրներին ծառայեցնելու ուղղությամբ լուրջ թերություններ գոյություն ունեն նաև Հոկտեմբերյանի, Աշտարակի, Նոյեմբերյանի և Կրասնոսելսկի շրջանային պարտիական կազմակերպություններում: Այս շրջանները գյուղատնտեսության մի շարք կարևոր մթերքների արտադրության գծով ետ են մնում: Դա վերաբերում է նաև որոշ արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպություններին: Միայն Ժողտնտխորհի սիստեմի 40 արդյունաբերական ձեռնարկություններ չեն կատարել անցած 10 ամիսների պլանները: Այս առումով դրությունն առանձնապես վատ է տեղական Սովետներին ենթակա արդյունաբերական ձեռնարկություններում, որոնց մեծ մասն ինչպես համախառն արտադրանքի, այնպես էլ ասորտիմենտի ու ինքնարժեքի իջեցման գծով թերակատարել են պետական պլանային առաջադրանքները:

Հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսներում պարտիական աշխատանքի կարևոր հարցերը քննարկելիս, կոմունիստները քննադատական լուրջ դիտողություններ արին ռեսպուբլիկական պարտիական և սովետական օրգանների հասցեին:

Սևանի շրջանի տեղարդ կոմբինատի պարտկազմակերպության կոմունիստներն իրենց ելույթներում խոսում էին այն մասին, որ Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը և Պետպլանը դեռևս չեն լուծել տեղական արդյունաբերության ձեռնարկությունների մի քանի կարևոր հարցեր, որի հետևանքով ծագում են ֆինանսական դժվարություններ: Նույն շրջանի Լճաշենի կոլտնտեսության պարտիական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում կոմունիստները քննադատեցին Գյուղատնտեսության մինիստրության ցանքաշրջանառության վարչությանը՝ կոլտնտեսությունում ոչ ճիշտ ցանքաշրջանառություն կիրառելու համար:

Երևանի հացի առևտրի սկզբնական պարտիական կազմակերպության ժողովում ելույթ ունեցող կոմունիստները նշեցին, որ հացի տրեստի վարչությունը վատ է զբաղվում հացի որակի բարելավման հարցով:

Վեդու շրջանի մի շարք պարտիական կազմակերպությունների ժողովներում քննադատեցին Կուլտուրայի մինիստրությանը՝ գյուղական ազգաբնակչության կուլտուրական սպասարկումը վատ կազմակերպելու համար, ինչպես նաև Հայկոոպին և Առևտրի մինիստրությանը, որոնց աշխատողները հազվադեպ են լինում շրջանում, գրեթե կտրված են տեղական առևտրական կազմակերպություններից:

Պարտիական ղեկավար օրգանները պետք է պարբերաբար ստուգեն կոմունիստների արած քննադատական դիտողությունների կիրառումը և հասնեն այն բանին, որպեսզի քննադատության բարձրացրած հարցերին որևէ մեկի կողմից ձևական մոտեցում չլինի:

Բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատությունների պարտիական կազմակերպությունների ժողովներում վեր հանվեցին ուսումնա-դաստիարակչական գործի լուրջ թերությունները: Դեռևս առանձին ուսանողներ խախտում են մեր հասարակական կարգ ու կանոնը: Պարտիական կոմիտեները, բյուրոները և նրանց քարտուղարները անհրաժեշտ չափով չեն հետաքրքր-

վում կոմերիտական կազմակերպությունների աշխատանքներով, թույլ են զբաղվում ուսանող երիտասարդության, դպրոցականների դաստիարակության հարցերով։ Ուսումնական հաստատությունների պարտիական կազմակերպությունները պետք է լուրջ հետևություն անեն այս բոլորից և բարելավեն երիտասարդ սերնդի ուսման, կրթության ու դաստիարակության գործը։

Պետք է նշել, որ առանձին պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները անցան ցածր մակարդակով։ Աղինի շրջանի Սառնաղբյուր գյուղի կոլտնտեսային պարտիական կազմակերպության ժողովում գրեթե բացակայում էր քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Պարտիական բյուրոյի հաշվետվությունում վեր չհանվեցին կազմակերպության աշխատանքի կարևորագույն հարցերը։ Այդ էր պատճառը, որ կոմունիստների ելույթները նվիրված էին ոչ թե սկզբունքային, այլ երկրորդական հարցերի քննարկմանը։

Գաղափարական ցածր մակարդակով անցան նաև Նոյեմբերյանի շրջանի Բաղանիս, Ոսկեպար, Սևանի շրջանի Չկալովկա, Ծաղկունք, ինչպես նաև այլ շրջանների առանձին գյուղերի կոլտնտեսային պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները։

Պարտիական ղեկավար օրգանների հաշվետվություններն ու ընտրությունները մեծ չափով նպաստեցին պարտիական կազմակերպությունների մարտունակության բարձրացմանը, ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումների ավելի հաջող կատարմանը։ Դրանք միաժամանակ օգնեցին պարտիական-քաղաքական և կազմակերպական աշխատանքների է՛լ ավելի բարելավմանը. կոմիտեների, բյուրոների, հատկապես քարտուղարների կազմը համալրեցին նոր, ավելի հասուն և կոփված կոմունիստներով։

Հայաստանի պարտիական կազմակերպությունները նորանոր նվաճումներով և կուռ միասնությամբ ընթանում են դեպի իրենց XIX համագումարը։

---

# ԼՈՒՐՋ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆԸ

Մ. ՄԻՆԱՍՅԱՆ

Մեծ է բանվոր երիտասարդության դերը կոմունիզմի կառուցման գործում։ Առանց խնայելու իր ուժերն ու կորովը, նա պայքարում է ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումների կենսագործման համար՝ տնտեսական շինարարության բոլոր բնագավառներում ներդնելով իր աշխատանքն ու եռանդը։

Արդյունաբերության մեջ աշխատանքի լավագույն օրինակ է ցույց տալիս Երևան քաղաքի 26 կոմիսարների անվան շրջանի բանվոր երիտասարդությունը, որի օգնությամբ շրջանի արդյունաբերական ձեռնարկություններն այս տարվա 11 ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել են 102,2 տոկոսով, երկրին տալով 9,5 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ շրջանում արդյունաբերության արտադրանքը աճել է 10 տոկոսով։

Ալյումինի գործարանը համախառն արտադրանքի 1957 թվականի 10 ամսվա պլանը կատարել է 101,5 տոկոսով, աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը՝ 102 տոկոսով։ Լուրջ հաջողությունների է հասել Հայկական ՍՍՌ Շինարարության մինիստրության № 9 շինարարական տրեստը, որը շինմոնտաժային աշխատանքների 10 ամսվա պլանը կատարել է 106 տոկոսով, աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը՝ 116,5 տոկոսով։ Շինարարության արժեքի իջեցման շնորհիվ ստացվել է 929 հազար ռուբլու արտապլանային խնայողություն։ Կոլեկտիվը գերակատարել է բնակարանային շինարարության պլանը և շահագործման է հանձնել 3100 քառ. մետր բնակելի տարածություն։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման համար համառորեն պայքարում են ժամացույցի, էլեկտրաճշգրիտ չափիչ գործիքների, յուղի սառցարանի և այլ ձեռնարկությունների կոլեկտիվները։

Արդյունաբերական ձեռնարկություններում բազմաթիվ երիտասարդներ կատարում և գերակատարում են արտադրական պլանները, պայքարում են տեխնիկական պրոգրեսի, արտադրության ռեզերվների ռացիոնալ օգտագործման ու խնայողության ռեժիմի կիրառման համար և հանդես են գալիս որպես խելացի ռացիոնալիզատորներ։ Շրջանում որպես առաջավորներ հայտնի են երիտասարդ բանվորներ՝ Լ. Ասրյանը (ալյումինի գործարան), Հ. Ավագյանը (ժամացույցի գործարան), Հ. Գեղամյանը (էլեկտրալամպերի գործարան), Ժ. Ասատրյանը (Շինարարության մինիստրության № 9 շինտրեստ) և շատ ուրիշներ։ Արտադրական լուրջ նվաճումների հասնելու համար ՀԼԿԵՄ Կենտ-

կոմի փոխանցիկ դրոշին են արժանացել № 9 շինտրեստի և ալյումինի գործարանի ընկ. ընկ. Մ. Բալայանի և Կ. Սարգսյանի ղեկավարած երիտասարդական բրիգադները։

Շրջանի բանվոր երիտասարդությունն իր աշխատանքային հաջողությունները ձեռք է բերել պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ։ Պարտիական կազմակերպությունները կոմերիտական կազմակերպությունների միջոցով երիտասարդ բանվորների մեջ դաստիարակում են սեր դեպի աշխատանքը, հավատ կոմունիզմի հաղթանակի նկատմամբ, պատասխանատվության զգացում՝ պետական պլանի կատարման ու գերակատարման համար։

Երիտասարդ բանվորների շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքը կատարվում է մի քանի միջոցներով։ Դրանցից ամենակարևորը քաղաքական ուսուցումն է։ Քաղաքական լուսավորության ցանցի այս ուսումնական տարում ալյումինի, էլեկտրաճշգրիտ չափիչ գործիքների գործարանների, «Գալանտերեա», «Հայրենիք» արտելների մի քանի խմբակներում, որոնցում ընդգրկված ունկնդիրների ճնշող մեծամասնությունը երիտասարդ բանվորներ և բանվորուհիներ են, լավ է ուսուցման դրվածքը։ Պրոպագանդիստներ Վ. Ռոստոմյանը, Ռ. Մանուկյանը, Ի. Խաչատրյանը և Լ. Պետրոսյանը ջանք չեն խնայում պարապմունքները բովանդակալից և հետաքրքրական դարձնելու համար։

Պարտիայի պատմությունն ուսումնասիրող խմբակների պրոպագանդիստներ Հ. Հովսեփյանը (էլեկտրալամպերի գործարան), Օ. Կարապետյանը (ժամացույցի գործարան) ուսուցման գործը կազմակերպել են այնպես, որ մեծ չափով նպաստում է երիտասարդներին ռևոլյուցիոն տրադիցիաներով դաստիարակելու գործին։ Այս պրոպագանդիստների հաջողությունների հիմնական պայմանն այն է, որ նրանք պարապմունքները վարում են մատչելի ձևով, լավ են ուսումնասիրել ունկնդիրների աշխատանքային պայմանները, ընդունակությունները ու ցանկությունները։ Նրանք իրենց գիտելիքներով և անձնական օրինակով վայելում են երիտասարդ ունկնդիրների համակրանքը։

Սակայն գինու և մետաղյա իրերի գործարանների՝ պարտիայի պատմությունն ուսումնասիրող խմբակներում, որտեղ պրոպագանդիստներ էին Լ. Վանեցյանը և Ա. Կիրակոսյանը, անցյալ ուսումնական տարում պարապմունքներն անցնում էին անհետաքրքիր։ Այս ընկերները պրոպագանդիստի պարտականությանը նայում էին մատների արանքով։ Նրանք բավարարվում էին միայն «լեկցիա» կարդալով, առանց հաշվի առնելու, թե այն որևէ մեկին հետաքրքրո՞ւմ, տեղ հասնո՞ւմ է, թե ոչ։

Պարտիական լուսավորության ցանցի այս ուսումնական տարվա առաջին ամիսների արդյունքները ցույց են տալիս, որ առանձին տեղերում նման թերությունները դեռ չեն վերացված։

Կահույքի ֆաբրիկայի պարտիական և կոմերիտական կազմակերպությունները անպատրաստ դիմավորեցին ուսումնական տարին, որի հետևանքով ընթացիկ մոմենտն ուսումնասիրող երկու խմբակի առաջին պարապմունքներն անցան անկազմակերպ։ Բավական է ասել, որ այդ խմբակների 30 ունկնդիրներից պարապմունքին մասնակցում էին միայն 8 հոգի։ Անկազմակերպ անցավ նաև այդ ֆաբրիկայի՝ պարտիայի պատմությունն ուսումնասիրող խմբակի առաջին պարապմունքը։ Ալյումինի և էլեկտրաճշգրիտ չափիչ գործիքների գործարաններում կազմակերպված քաղաքատնտեսության սեմինարների առաջին պարապմունքները ձախողվեցին նրա համար, որ պրոպագանդիստներ Գ. Սարգսյանը և Բ. Օհանյանը (Պոլիտեխնիկական ինստիտուտից) չներկայացան պարապմունքի։



Պարտիայի XX համագումարը նշեց, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման և ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի լուծման համար առաջին պլանի վրա են մղվում մարքսիզմի թեորիայի տնտեսագիտական կողմը, կոնկրետ էկոնոմիկայի հարցերը։ Չնայած այս պարզ ցուցումին՝ անցյալ ուսումնական տարում շրջանի երիտասարդ բանվորների համար կազմակերպված էր կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող ընդամենը 4 խմբակ։ Մինչդեռ երիտասարդ բանվորների ավելի լայն շրջանների կողմից կոնկրետ էկոնոմիկայի ուսումնասիրությունը կարևոր նշանակություն կունենար նրանց որակավորման, քաղաքական ու կուլտուրական մակարդակի բարձրացման համար։ Այս ուսումնական տարում այդ սխալն արդեն ուղղված է. ստեղծված են կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրողների 10 խմբակ։ Այդ խմբակներում հաջող է ընթանում երիտասարդների տնտեսագիտական ուսուցումը։

Երիտասարդ բանվորների քաղաքական դաստիարակության մյուս կարևոր օղակը ագիտացիոն-մասսայական աշխատանքն է։ Այս գործում որոշ հաջողությունների են հասել էլեկտրալամպերի, էլեկտրաճշգրիտ չափիչ գործիքների և ժամացույցի գործարանների պարտիական կազմակերպությունները։

Ժամացույցի գործարանի վերահսկող-փորձարկող կայանի ագիտատոր Հ. Փափազյանը, էլեկտրալամպերի գործարանի սպիրալի ցեխի ագիտատոր Ս. Դիլանյանը, էլեկտրաճշգրիտ չափիչ գործիքների գործարանի հավաքման ցեխի ագիտատոր Ա. Նազարչուկը և ուրիշներ ագիտացիոն զրույցները դարձրել են երիտասարդ բանվորների քաղաքական դաստիարակության կարևոր միջոցներից մեկը։ Այս ագիտատորները շատ լավ են ճանաչում իրենց ունկնդիրներին, գիտեն, թե ինչպիսին են նրանք արտադրության մեջ, ընտանիքում, ինչպիսի հաջողություններ ունեն կամ ինչ դժվարությունների են հանդիպում։ Հիշյալ ագիտատորները երիտասարդ բանվորներին սիստեմատիկաբար տեղյակ են պահում ժամանակակից քաղաքական կարևոր իրադարձություններին։ Ելնելով իրենց ցեխերի ռեալ պայմաններից, նրանք զրույցներ են կազմակերպում տեխնիկական պրոգրեսի, ինքնարժեքի իջեցման, աշխատանքի առաջավոր մեթոդների, ինչպես նաև բանվորների կենցաղին վերաբերող հարցերի մասին։

Բայց շրջանի որոշ պարտիական կազմակերպություններում ագիտացիոն-մասսայական աշխատանքը դիտվում է որպես երկրորդական գործ։ «Արագած» արտելում, № 9 շինարարական տրեստի որոշ տեղամասերում և շրջանի այլ արտադրական ձեռնարկություններում վաղուց է, ինչ բանվորները ագիտատորի երես չեն տեսել։

Առանձին պարտիական կազմակերպություններ լուրջ ուշադրություն չեն դարձնում ագիտատորների ընտրությանը, որի հետևանքով ագիտատորներ են նշանակվում անհրաժեշտ գիտելիքներ չունեցող ընկերներ։ Օրինակ՝ «Արաբկիր» գործվածքային ֆաբրիկայում ագիտատոր է նշանակվել Հ. Սերոբյանը, «Արագած» արտելում՝ Վ. Մանուկյանը, որոնց քաղաքական գիտելիքների մակարդակը շատ ցածր է։

Բանվոր երիտասարդության դաստիարակության գործում կարևոր դեր է խաղում դասախոսական պրոպագանդան։ Շրջանի շատ արտադրական ձեռ-

նարկություններում երիտասարդության համար դասախոսություններ են կազմակերպվում մարքսիստական-լենինյան թեորիայի տարբեր հարցերի, մեր երկրի միջազգային ու ներքին դրության, սովետական հայրենասիրության, կոմունիստական բարոյականության, ժողովուրդների բարեկամության, ժամանակակից տեխնիկայի նվաճումների և այլ թեմաների շուրջը։ Սակայն պետք է նշել, որ առանձին դասախոսություններ կտրված են լինում կյանքից և չեն ծառայում իրենց նպատակին։

Կասկածից վեր է, որ երիտասարդ բանվորների քաղաքական դաստիարակության գործում եղած նման թերությունները բարենպաստ պայմաններ են ստեղծում բուրժուական իդեոլոգիայի համար։ Մի շարք պարտիական կազմակերպությունների կողմից կատարվող գաղափարական անբավարար աշխատանքի հետևանքով որոշ երիտասարդներ քաղաքական հասունություն չունեն, սխալ են գնահատում տեղի ունեցող իրադարձությունները, ընկնում են խորթ ազդեցության տակ։

Կարևոր նշանակություն ունի նաև երիտասարդների գեղարվեստական դաստիարակությունը։ Գեղարվեստական և կուլտուր-մասսայական աշխատանքների հիմնական նպատակն այն է, որ թատրոնը, կինոն, գրքերի քննարկումը, գեղարվեստական ինքնագործունեությունը, փեստիվալները, արվեստի և գրականության գործիչների հետ հանդիպումները և նման այլ միջոցառումներ ընդարձակեն երիտասարդների մտահորիզոնը, բարձրացնեն նրանց ճաշակը, նպաստեն ստեղծագործական ընդունակությունների հայտաբերմանը ու զարգացմանը։

Այս տեսակետից ուսանելի է ժամացույցի գործարանի կոմերիտական կազմակերպության աշխատանքը։ Այստեղ գործում են երգի-պարի անսամբլ, թատերական և գրական խմբեր, փողային ու ժողովրդական գործիքների նվագախմբեր և այլն։ Կոմերիտական կազմակերպությունն այդ աշխատանքներում ընդգրկել է շատ երիտասարդ բանվորների։ Գործարանի երիտասարդ բանվորների համար կազմակերպվում են երիտասարդական և ժողովրդական երգերի մասսայական ուսուցում, երեկոներ, հավաքներ։ Գործարանի երիտասարդ բանվորները Պիոներների պալատում հանդիպում ունեցան «Հայֆիլմի» երիտասարդ արվեստագետների հետ։

Նման նախաձեռնությամբ հանդես են գալիս նաև ալյումինի գործարանի, № 9 շինտրեստի կոմերիտական կազմակերպությունները։ Շրջանի շատ արտադրական ձեռնարկությունների (էլեկտրալամպերի, էլեկտրաճշգրիտ չափիչ գործիքների գործարաններ, «Արաբկիր» գործվածքային ֆաբրիկա և այլն) աշխատողների համար սիստեմատիկաբար կազմակերպվում են էքսկուրսիաներ, կինոնկարների ու ներկայացումների կոլեկտիվ դիտումներ և այլ միջոցառումներ, որոնք, անշուշտ, մեծ դեր են խաղում բանվոր երիտասարդության գեղարվեստական դաստիարակության և նրանց կոլեկտիվիզմի ոգով դաստիարակելու գործում։

Սակայն գեղարվեստական ինքնագործունեության աշխատանքները վատ են կազմակերպված մետաղյա իրերի գործարանում, «Կարմիր ջուլհակ» գործվածքային ֆաբրիկայում և այլ ձեռնարկություններում։

Առանձին պարտիական, կոմերիտական և պրոֆմիութենական կազմակերպություններ անուշադրության են մատնել գեղարվեստական գրքի պրոպագանդան, որի հետևանքով շատ երիտասարդ բանվորներ գեղարվեստական



գրքեր չեն կարդում։ Մեծ նշանակություն ունեն գրողների հետ կազմակերպված հանդիպումները։ Սակայն մի քանի գրողներ երբեմն խուսափում են երիտասարդ բանվորների դաստիարակության գործում անձնական մասնակցություն ունենալուց։ Գրողների միության պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ շրջկոմը մի շարք գրողների հանձնարարեց՝ արտադրական ձեռնարկություններում աշխատանք կատարել աշխատավորների գեղարվեստական դաստիարակության ուղղությամբ։ Բայց, ցավոք սրտի, որոշ գրողներ ոչ մի աշխատանք չկատարեցին։

Միության խոշոր քաղաքներում գոյություն ունի լավագույն տրադիցիա. արվեստի հիմնարկները շեֆական աշխատանք են կատարում արտադրական ձեռնարկություններում, որը մեծ չափով նպաստում է երիտասարդ բանվորների գեղարվեստական դաստիարակությանը։ Օրինակ, Մոսկվայի Գեղարվեստական ակադեմիական թատրոնը «Կրասնի պրոլետարի» գործարանի շեֆն է։ Սակայն այդ փորձը Երևանում չի կիրառվում, և արվեստի աշխատողները կապված չեն բանվորական կոլեկտիվների հետ։

Լուրջ թերություններ կան բանվոր երիտասարդության ֆիզիկական դաստիարակության գործում։ Շրջանի այնպիսի ձեռնարկություններ, ինչպիսիք են՝ ալյումինի, ժամացույցի գործարանները և № 9 շինտրեստը, չունեն սպորտային կայուն կոլեկտիվներ, որի հետևանքով ֆիզկուլտուրայով զբաղվում են շատ քչերը, այն էլ միայն մրցումների ժամանակ։

Ֆիզկուլտուրան և սպորտը մասսայական դարձնելու, սպորտասեր բանվորներին օգնություն ցույց տալու գործում լուրջ անելիքներ ունեն կամավոր սպորտ ընկերությունները։ Բայց «Մետալուրգ», «Էներգիա», «Տորպեդո» և այլ կամավոր սպորտ ընկերությունների ղեկավարները մասնագետ սպորտսմեններից բացի ուրիշ ոչ ոքի չեն տեսնում և փաստորեն չեն զբաղվում այն ձեռնարկությունների սպորտային աշխատանքներով, որոնց ղեկավարումը նրանց անմիջական պարտականությունների մեջ է մտնում։

Բանվոր երիտասարդության դաստիարակության ամենակարևոր օղակներից մեկը աշխատանքային դաստիարակությունն է։

Լենինը բազմիցս նշել է, որ կոմունիստական դաստիարակության էությունը բարոյական նորմաների քարոզի մեջ չէ, այլ աշխատանքի մեջ է, կոմունիզմի կառուցման մեջ։ Աշխատանքային դաստիարակության կազմակերպման գործում կան որոշ հաջողություններ։ Էլեկտրալամպերի գործարանի սպիրալի ցեխում (ցեխի պետ Օ. Թադևոսյան, պարտկազմակերպության քարտուղար Ս. Դիլանյան) երիտասարդ բանվորների դաստիարակության հիմքում դրված է աշխատանքը։ Հատուկ ուշադրություն է դարձվում տեխնիկական պրոպագանդայի վրա, անցկացվում է տեխնիկական ուսուցում, կազմակերպվում են դասախոսություններ, զրույցներ, ռացիոնալիզատորական փորձի ուսումնասիրում ու մասսայականացում։ Այս ցեխում կազմակերպված է աշխատանքի առաջավոր մեթոդների ուսումնասիրման դպրոց, որը ղեկավարում է ինժեներ Օ. Թադևոսյանը։ Ցեխի երիտասարդ բանվորների շրջանում առաջավոր փորձի ուսումնասիրման և ներդրման գործում մեծ դեր են կատարում նաև մյուս ինժեներա-տեխնիկական աշխատողները։

Ռացիոնալիզատորական շարժման ծավալման նկատմամբ հոգատար վերաբերմունք են ցույց տալիս ցեխի պարտիական կազմակերպությունը և ղեկավարությունը։ Երիտասարդ ռացիոնալիզատորներ Մ. Նալբանդյանը, Ռ.

Պողոսյանը, Մ. Մուրադյանը, Ս. Հակոբյանը և ուրիշներ իրենց խելացի առաջարկություններով մեծ հեղինակություն են ձեռք բերել ամբողջ գործարանում։ Մ. Նալբանդյանի և Ռ. Պողոսյանի առաջարկները գործարանին հնարավորություն են տվել տարեկան տնտեսելու 200 հազար ռուբլի։

Ցեխի պարտիական կազմակերպությունը լուրջ ուշադրություն է դարձնում նաև սոցիալիստական մրցության կազմակերպման վրա։ Այդ մեծ չափով նպաստում է բանվորների գիտակցական, ստեղծագործական աշխատանքին, որի շնորհիվ ընթացիկ տարվա սկզբից մինչև այժմ ցեխը սիստեմատիկաբար կատարում և գերակատարում է արտադրական պլանները. այստեղ 1957 թվականի անցած տասն ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարված է 109 տոկոսով։

Երիտասարդ բանվորների աշխատանքային դաստիարակության գործում որոշակի հաջողություններ կան նաև «Կարմիր ջուլհակ» գործվածքային ֆաբրիկայում, էլեկտրաճշգրիտ չափիչ գործիքների գործարանում և այլ արտադրական ձեռնարկություններում։

Սակայն առանձին ձեռնարկություններում այս գործում դեռ լուրջ թերություններ կան։ Կահույքի ֆաբրիկայում և մետաղյա իրերի գործարանում անուշադրության է մատնված կադրերի պատրաստման և բանվորների որակի բարձրացման գործը։ Մետաղյա իրերի գործարանի ղեկավարներին չի մտահոգում տեխնիկական պրոպագանդայի կազմակերպումը. այստեղ տեխնիկական թեմաների շուրջը գրեթե չեն կազմակերպվում զրույցներ, դասախոսություններ և ղեկուցումներ։

Տեխնիկական պրոպագանդայի կազմակերպման և երիտասարդ բանվորների մեջ դեպի տեխնիկական գրականությունը սեր առաջացնելու գործում շատ անելիքներ ունեն տեխնիկական գրադարանները։ Սակայն շրջանի արտադրական ձեռնարկությունների տեխնիկական գրադարանների մեծ մասը անբավարար աշխատանք է կատարում երիտասարդ բանվորների շրջանում։ Տեխնիկական գրադարաններից հիմնականում օգտվում են ինժեներա-տեխնիկական աշխատողները, իսկ բանվորները դեպքից-դեպք են լինում գրադարաններում։ Դրա հիմնական պատճառը բանվորների համար մատչելի, հայերեն լեզվով տեխնիկական գրքերի պակասն է։

Որոշ ձեռնարկություններում թույլ է ինժեներա-տեխնիկական աշխատողների և բանվորների կապը։ Առաջավոր երիտասարդ բանվորները բավարար չափով ընդգրկված չեն գիտա-տեխնիկական ընկերությունների և տեխնիկական խորհուրդների աշխատանքներում։

Երիտասարդ բանվորների դաստիարակության վրա բացասաբար են անդրադառնում նաև աշխատանքի կազմակերպման գործում եղած թերությունները։ Կահույքի ֆաբրիկայում բացակայում է ռիթմիկ աշխատանքը. այստեղ ամսվա առաջին կեսում բանվորները թերաբեռնված են աշխատում, իսկ երկրորդ կեսում աշխատում են մինչև ուշ երեկո։ Այս բանը խախտում է աշխատանքային կարգապահությունը և զգալի չափով իջեցնում արտադրանքի որակը։ Աշխատանքը լավ չի կազմակերպված նաև մետաղյա իրերի գործարանում, «Արագած» և «Գալանտերեա» արտելներում։

Բարդ մեքենաները ղեկավարելու, նորագույն տեխնիկային տիրապետելու համար երիտասարդ բանվորներին անհրաժեշտ են գիտելիքներ, որի համար մեզ մոտ լայն հնարավորություններ են ստեղծված (հեռակա բուհեր, տեխ-



նիկումներ, բաներիտ դպրոցներ և այլն)։ Այս ուղղությամբ շրջանի արտադրական ձեռնարկություններում որոշ հաջողություններ կան։ Օրինակ, ալյումինի, ժամացույցի, էլեկտրաճշգրիտ չափիչ գործիքների և այլ գործարանների հարյուրավոր երիտասարդ բանվորներ սովորում են Պոլիտեխնիկական ինստիտուտի հեռակա բաժնում, մասնագիտական տեխնիկումներում և բաներիտ դպրոցներում։

Սակայն պետք է նշել, որ շրջանի բանվոր երիտասարդության կրթության գործում լուրջ թերություններ կան։ Էլեկտրալամպերի, գինու գործարանների, «Արաբկիր» գործվածքային ֆաբրիկայի երիտասարդ բանվորների որոշ մասը բաներիտ դպրոցներից դուրս է մնացել, իսկ սովորողների նկատմամբ էլ չկա հոգատարություն, որի հետևանքով նրանք մաղվում են դպրոցներից։

Երիտասարդ բանվորի քաղաքական և աշխատանքային դաստիարակության գործում մեծ է վարպետի դերը։ Այս առումով էլ ուշադրության արժանի է վարպետի և բանվորի փոխհարաբերության հարցը։ Շատ վարպետներ, ինչպես, օրինակ, Ն. Իսահակյանը (էլեկտրաճշգրիտ չափիչ գործիքների գործարանի հավաքման ցեխից), Կ. Մելիքսեթյանը (էլեկտրալամպերի գործարանի նախապատրաստման ցեխից), Խ. Փիլթակյանը (ալյումինի գործարանի էլեկտրոլիզի ցեխից) և ուրիշներ զբաղվում են երիտասարդ բանվորների դաստիարակությամբ, մտահոգվում նրանց կենցաղով, բայց կան նաև վարպետներ՝ Գ. Գյոզալյանը (մետաղյա իրերի գործարանից), Ջ. Մկրտչյանը (ժամացույցի գործարանից), որ աչքաթող են արել իրենց հետ աշխատող երիտասարդ բանվորների դաստիարակությունը։ Վարպետն ամենից մոտ է կանգնած երիտասարդ բանվորներին, նա բոլոր հնարավորություններն ունի թափանցելու նրանց հոգեբանության մեջ, ճանաչելու նրանց բոլոր կողմերով։ Պարտիական և կոմերիտական կազմակերպությունները, հատկապես ցեխային, պետք է հետևողական աշխատանք տանեն երիտասարդ բանվորների դաստիարակության գործում՝ վարպետի, ինչպես նաև ցեխի պետի դերը և պատասխանատվությունը բարձրացնելու ուղղությամբ։ Ցեխերի պետերը պետք է հանդես գան ո՛չ միայն որպես վարչական ղեկավարներ, այլև որպես երիտասարդ բանվորների դաստիարակության գործի կազմակերպողներ։

Երիտասարդ բանվորների և բանվորուհիների դաստիարակության համար կարևոր նշանակություն ունի նրանց վարքով, ընտանիքով, կենցաղով հետաքրքրվելը։ Սակայն որոշ ձեռնարկություններում չի բարձրացվում կոլեկտիվների պատասխանատվությունը՝ բանվորների վարքի համար։ Դեռևս քիչ չեն արտադրական ձեռնարկություններում աշխատող բանվոր երիտասարդների կողմից թույլ տրվող հակահասարակական երևույթները։ Այդպիսիներից են՝ երիտասարդ բանվոր Մ. Խախամյանը (№ 9 շինտրեստից), Ժ. Բաղդասարյանը (շինվերանորոգման գրասենյակից)։ Հակահասարակական երևույթներ կատարվում են նաև գործարանի ներսում, աշխատանքի ժամանակ։ Այդպիսի դեպքեր տեղի են ունեցել էլեկտրաճշգրիտ չափիչ գործիքների գործարանում։

Այս ամենը խոսում են այն մասին, որ որոշ սկզբնական պարտիական և կոմերիտական կազմակերպություններ, տնտեսական ղեկավարներ, ցեխերի պետեր և առանձին կոմունիստներ խորամուխ չեն լինում երիտասարդ բանվորների հոգեբանության մեջ, չեն ձգտում լավ ճանաչել նրանց, ծանոթ չեն նրանց բնավորությանը և ապրելակերպին։

Շրջանի որոշ արտադրական ձեռնարկություններում ընկած է աշխատան-

քային կարգապահությունը. այդ բացասաբար է անդրադառնում պլանների կատարման, երիտասարդության դաստիարակության վրա։ Ձեռնարկությունների ղեկավարները աշխատանքային կարգապահությունը բարձրացնելու համար մեծ մասամբ կիրառում են վարչական միջոցներ և հաճախ չեն բացահայտում կարգապահության խախտումների պատճառները։ Մինչդեռ փաստերը ցույց են տալիս, որ կարգապահության խախտման հիմնական պատճառներից մեկը բանվորների նկատմամբ հասարակական կազմակերպությունների և տնտեսական ղեկավարների անտարբերությունն է և հոգատարության պակասը։ Օրինակ, բանվորը մի քանի օր աշխատանքի չի գալիս, ոչ ոք չի մտածում այցելել այդ բանվորին, պարզել աշխատանքի չներկայանալու պատճառը և կարիքի դեպքում օգնել նրան։ Բերենք մի փաստ. գինու գործարանի կոմերիտական Ժ. Ահարոնյանը հեռանում է գործարանից, բայց ոչ ոք չի հետաքրքրվում, թե ուր գնաց նա և ինչով է զբաղվում։ Նրա հեռանալուց վեց ամիս հետո միայն, երբ «ընկերները» հետաքրքրվում են Ահարոնյանի բախտով, պարզվում է, որ նա իբրև քրեական հանցագործ՝ բանտարկված է։

Երիտասարդ բանվորների դաստիարակության գործում որոշ արտադրական ձեռնարկությունների պարտկազմակերպություններ անբավարար են օգտագործում կոմերիտականների ուժերը։ Դա պետք է բացատրել ինչպես կոմերիտական կազմակերպությունների նկատմամբ պարտիական անբավարար ղեկավարությամբ, այնպես էլ առանձին կոմերիտական կազմակերպությունների անմարտունակությամբ։

Արդյոք հանդուրժելի՞ է, երբ մետաղյա իրերի և գինու գործարանների, «Արագած» արտելի և այլ ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները կոմերիտմիության նկատմամբ իրենց ղեկավարությունը սահմանափակում են միայն պարտբյուրոներում կոմերիտական կազմակերպությունների ղեկավարների հաշվետվությունները լսելով, չեն խորանում նրանց աշխատանքների բովանդակության մեջ և հոգ չեն տանում՝ բարձրացնելու կոմերիտական կազմակերպությունների դերը։ Կամ առանձին կոմերիտական կազմակերպություններ (շինմոնտաժ, կալէլեկտրամոնտաժ, «Հաշմկոոպ» արտելներ և այլն) վատ են օգտագործում ՍՄԿՊ Կանոնադրությամբ իրենց տրված լայն նախաձեռնության իրավունքը՝ քննարկելու և համապատասխան կազմակերպությունների առջև դնելու այն բոլոր հարցերը, որոնք կապված են հիմնարկ-ձեռնարկությունների աշխատանքներում տեղ գտած թերությունների վերացման հետ։

Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի պարտիական և կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ արմատապես բարելավել բանվոր երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործը և նրանց ուժերը լրիվ ի սպաս դնել պարտիայի ու կառավարության առաջադրանքների հաջող կատարմանը։

---

# ՕՐԻՆԱԿԵԼԻՈՐԵՆ ՎԱՐԵԼ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

Ա. ՋԱԼԻՆՅԱՆ

Պարտիական կազմակերպության գործունեության մեջ չափազանց կարևոր նշանակություն ունի պարտիական տնտեսությունը վարելու կանոնների խըստագույն պահպանումը։ Դա հնարավորություն է տալիս տեսնելու պարտիական կազմակերպությունում տեղի ունեցած քանակական և որակական փոփոխությունները, ճանաչելու կոմունիստներին, նրանց ճիշտ տեղաբաշխելու աշխատանքի առանձին բնագավառներում, նպաստում է պարտիական կարգապահության ամրապնդմանը, ամբողջ պարտիական աշխատանքի մակարդակի բարձրացմանը, ինչպես նաև օգնում է կարգավորելու պարտիայի շարքերի աճը և կանխում է թշնամական ու պատահական տարրերի ներթափանցումը պարտիայի շարքերը։

Պարտիական տնտեսության օրինակելի վարումը՝ կոմունիստներին հաշվառման վերցնելը, հաշվառումից հանելը, պարտիական ժողովների, բյուրոյի նիստերի արձանագրությունները, որոշումները խնամքով կազմելը, անդամավճարները ժամանակին գանձելը, պարտիական փաստաթղթերը ձևակերպելը, հանձնելը, պահպանելը և այլն երբեք չեն դիտվել և չեն դիտվում որպես տեխնիկական գործ։

Ներպարտիական այդ կարևոր աշխատանքի նկատմամբ առանձին պարտիական ղեկավար աշխատողների ունեցած ոչ ճիշտ վերաբերմունքը շատ անգամ է դատապարտվել պարտիայի Կենտրոնական Կոմիտեի որոշումներում։

Պարտիական տնտեսությունը պահելու վերաբերյալ Կենտկոմի պահանջկոտությունը լիովին համապատասխանում է ՍՄԿՊ Կանոնադրության սկզբունքներին։ ՍՄԿՊ Կենտկոմի հրահանգներում ու որոշումներում միշտ ընդգծվել է, որ շրջանային, քաղաքային պարտիական կազմակերպություններում կոմունիստների ճիշտ հաշվառման դրվածքի, պարտիական փաստաթղթերի ձևակերպման, հանձնման և պահպանման պատասխանատվությունը դրվում է անձամբ քաղկոմ-շրջկոմների առաջին քարտուղարների վրա։ Թափթփվածությունն ու անկարգապահությունը երբեք չի կարելի հանդուրժել պարտիական տնտեսության մեջ։ Անցյալից հայտնի է, թե ինչպիսի բացասական հետևանքների են հասցրել պարտիական տնտեսության պահպանման կանոնների թեկուզ ամենափոքր խախտումները։ Այժմ էլ դրանից կարող են օգտվել միայն պարտիայի թշնամիները և ամեն տեսակի ժուլիկներ։ Ահա թե ինչու պարտիական տնտեսության օրինակելի վարումը հանդիսացել ու հանդիսանում է պարտիական բոլոր ղեկավարների անմիջական ու ամենօրյա պարտականությունը։

1954 թվականին կատարված պարտիական փաստաթղթերի փոխանակումով զգալիորեն բարելավվեց պարտիական տնտեսության վիճակը, հատկապես կոմունիստների հաշվառման գործը։ Ռեսպուբլիկայի շատ սկզբնական պար-

տիական կազմակերպություններ, քաղկոմ-շրջկոմներ լուրջ եզրակացության հանգելով պարտիական փաստաթղթերի փոխանակման ժամանակ երևան եկած բազմապիսի սխալներից, խախտումներից ու թերություններից, որոնք թույլ էին տրվել նախկինում, սկսած դեռևս 1936 թվականից, խոշոր աշխատանք կատարեցին եղած թերությունները վերացնելու համար և այժմ օրինակելիորեն վարում են պարտիական տնտեսությունը։ Այսպես, օրինակ, Երևան քաղաքի Կիրովյան, 26 կոմիսարների անվան, Ստալինյան, Կիրովականի քաղաքային ու շրջանային, ինչպես նաև Նոր Բայազետի, Ստեփանավանի, Շահումյանի, Ալավերդու, Սևանի, Ղափանի և այլ շրջանային պարտիական կազմակերպություններ զգալիորեն բարելավել են պարտիական տնտեսությունը և հետևողական աշխատանք են կատարում նկատված առանձին թերությունները վերացնելու համար։

Սակայն պետք է նշել, որ ռեսպուբլիկայի ոչ բոլոր պարտիական կազմակերպություններն են լուրջ հետևություններ արել անցյալներում թույլ տրված սխալներից։ Ներկայումս էլ դեռ կան պարտիական կազմակերպություններ, որոնք պարտիայի անդամ-թեկնածուների հաշվառման, պարտիական փաստաթղթերի ձևակերպման, հանձնման ու պահպանման գործում թույլ են տալիս լուրջ սխալներ և հրահանգի խախտումներ։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի կողմից հաստատված «ՍՄԿՊ անդամների և անդամության թեկնածուների հաշվառման մասին» հրահանգով սահմանված է կոմունիստների հաշվառման միասնական սիստեմ։ Համաձայն այդ հրահանգի, պարտիայի անդամ-թեկնածուներին հաշվառման վերցնելիս կամ հաշվառումից հանելիս քաղկոմ-շրջկոմների առաջին քարտուղարները պարտավոր են անձամբ ընդունել նրանց, ծանոթանալ եկող յուրաքանչյուր կոմունիստի հետ, ստուգել նրա պարտիական փաստաթղթերը, համեմատել պարտիական տոմսը հաշվառման քարտի հետ և ապա լուծել նրան հաշվառման վերցնելու հարցը։

Սակայն փաստերը ցույց են տալիս, որ շատ պարտիական կազմակերպություններում այդպես չի արվում։ Էջմիածնի շրջանային կոմիտեն պարտիայի անդամներ Ուդումյանի և Իմրանովի հաշվառման քարտերը վերադարձրել է Արտաշատի շրջկոմին նրա համար, որ առաջինի հաշվառման քարտում լրացուցիչ աշխատանքային գործունեությունը ձևակերպված և հաստատված չի եղել, իսկ երկրորդինը ձևակերպված է եղել, բայց շրջկոմի քարտուղարի կողմից ստորագրված ու կնիքով հաստատված չի եղել։ Նույնանման պատճառներով Լենինականի քաղկոմը, Երևանի Սպանդարյան, Ստալինյան շրջկոմները հաշվառման չեն ընդունել և Արտաշատի շրջկոմին են վերադարձրել Դավթյանի, Թովմասյանի, Աբրահամյանի և ուրիշների հաշվառման քարտերը՝ լրացուցիչ ձևակերպումներ կատարելու համար։ Այդպիսի պատճառներով Երևանի Կիրովյան շրջկոմը և Լենինականի քաղկոմը հաշվառման չեն ընդունել և Թալինի շրջկոմին են վերադարձրել Մինասյանի, Սահակյանի, Ա. և Մ. Բադալյանների և ուրիշների հաշվառման քարտերը։

Այս բոլորը ցույց են տալիս, որ քաղկոմ-շրջկոմների առանձին քարտուղարներ պարտիայի անդամ-թեկնածուների տեղափոխման ժամանակ չեն ստուգում նրանց հաշվառման քարտերը, թե արդյոք բոլոր լրացուցիչ փոփոխությունները ճիշտ ձևակերպված, գրանցվա՞ծ են նրանց քարտերում, քարտերը իրենց ստորագրությամբ և շրջկոմի կնիքով հաստատվա՞ծ են, թե ոչ։



Կենտկոմի հրահանգով սահմանված է, որ կոմունիստը մի այլ պարտիական կազմակերպություն փոխադրվելիս պետք է քաղկոմից կամ շրջկոմից թույլտվություն և պարտիական հաշվառումից դուրս գրվելու տալոն ստանա, նոր միայն մեկնի շրջանից կամ քաղաքից։ Սակայն ստուգումները ցույց են տալիս, որ պարտիայի որոշ շրջկոմներ այդ գործին անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում։ Պարտիական մեկ կազմակերպությունից մյուսը փոխադրվելու վերաբերյալ կոմունիստների դիմումների քննարկումը 10 օրվա փոխարեն առանձին դեպքերում ձգձգվում է ամիսներ շարունակ և հետևանքը լինում է այն, որ կոմունիստն առանց պարտիայի շրջկոմի կամ քաղկոմի թույլտվության և պարտիական հաշվառումից դուրսգրման տալոն ստանալու մեկնում է մի այլ կազմակերպություն։ Այսպես, Արտաշատի, Թալինի շրջաններում հաշվառումից դուրս եկած կոմունիստների մեծ մասը այլ կազմակերպություն է մեկնել առանց սկզբնական պարտիական կազմակերպության համապատասխան եզրակացության, առանց դուրսգրման տալոն ստանալու և այդ այն դեպքում, երբ Կենտկոմի հրահանգով պահանջվում է, որ կոմունիստներն անմիջապես դիմեն սկզբնական պարտիական կազմակերպությանը և ապա, կազմակերպության եզրակացությունից հետո միայն դիմեն շրջկոմին՝ հաշվառումից դուրս գալու համար։ Քիչ չեն այնպիսի փաստերը, երբ կոմունիստների գնալուց հետո հաշվառման քարտերն ուղարկվում են շատ ձգձգումներով, իսկ երբեմն էլ առանձին շրջկոմներ անհիմն կերպով կոմունիստներին հաշվառման չեն վերցնում և նրանց հաշվառման քարտերը ետ են վերադարձնում։ Այսպես, օրինակ՝ Սպանդարյան շրջկոմը 1956 թվականի նոյեմբեր ամսին, համաձայն իր դիմումի, Արտաշատի շրջկոմ է ուղարկում պարտիայի անդամ Մ. Բադալյանի հաշվառման քարտը։ Սակայն Արտաշատի շրջկոմը նրան հաշվառման չի ընդունում, և նրա հաշվառման քարտը 4 ամիս պահելուց հետո՝ 1957 թվականի մարտին, վերադարձնում է, որպես դեֆեկտավոր, այն դեպքում, երբ հրահանգի համաձայն նրանք քարտը պետք է վերադարձնեին (եթե, իհարկե, դեֆեկտավոր է) ստանալուց անմիջապես հետո։ Սպանդարյան շրջկոմը քարտը ետ ստանալով՝ ստուգում և մարտին նորից ուղարկում է Արտաշատի շրջկոմին։ Սակայն Արտաշատի շրջկոմը կրկին ետ է վերադարձնում՝ նոր, անհիմն պատճառաբանություններով։ Երկար գրագրությունից և երրորդ անգամ քարտը վերադարձնելուց հետո միայն Արտաշատի շրջկոմը պարտանդամ Բադալյանին հաշվառման է վերցնում։

Կոմունիստների հաշվառման կանոնների խախտումներ են թույլ տրվում նաև Ախտայի, Արթիկի, Աշտարակի և այլ շրջանային պարտիական կազմակերպություններում։

Շատ դեպքերում քաղկոմ-շրջկոմները կոմունիստներից բացատրություն չեն պահանջում մեկ կազմակերպությունից մյուսը ինքնակամ փոխադրվելու պատճառների մասին և պարտիական պատասխանատվության չեն ենթարկում փոխադրման կարգը խախտողներին։

Համաձայն ՍՄԿՊ Կենտկոմի հրահանգի՝ առնվազն 6 ամիսը մեկ անգամ պետք է համեմատական ստուգումներ անցկացվեն պարտիական սկզբնական կազմակերպություններում։ Բայց առանձին քաղկոմ-շրջկոմներ (Էջմիածնի, Արթիկի և այլն) երկար ժամանակ սկզբնական պարտիական կազմակերպություններում եղած կոմունիստների առկա կազմը չեն համեմատում քաղկոմ-շրջկոմի հաշվառման տվյալների հետ։ Դրա հետևանքով էլ առանձին

սկզբնական պարտիական կազմակերպությունների անդամների առկա կազմի ու պարտիայի շրջկոմներում եղած հաշվառման տվյալների միջև տարբերություններ կան։ Դրա պատճառն այն է, որ առանց շրջկոմի գիտության կոմունիստներին հանում են հաշվառումից կամ առանց կցման տալոնի վերցնում են հաշվառման։ Այսպես, Արթիկի շրջանի Արթիկ-տուֆի սկզբնական պարտիական կազմակերպությունը կոմունիստ Ս. Հակոբյանին առանց շրջկոմի գիտության և համապատասխան կցման տալոնի վերցրել է հաշվառման և գանձել է մի քանի ամսվա անդամավճար այն դեպքում, երբ Մեղրաշենի կոլտնտեսային պարտիական կազմակերպությունը նրան փնտրում էր, որպեսզի նրա պարտիական հարցը քննության առներ՝ որպես պարտիական կարգապահությունը խախտողի, առանց թույլտվության կազմակերպությունից մեկնողի և երկար ժամանակ անդամավճար չմուծողի։

Ախտայի շրջանի Աթարբեկյան գէսի շինարարության պարտիական կազմակերպությունը խախտելով կանոնադրությունը, Սևանի շրջանի ՄՏ կայանի պարտկազմակերպության անդամ Ս. Վարդանյանին, որը առանց թույլտվության մեկնել էր շրջանից, 1956 թվականի վերջերին ընտրել է Գեղամավանի շինմասի պարտիական ցեխային կազմակերպության քարտուղար և գանձել պարտիական անդամավճար այն դեպքում, երբ նա Սևանի շրջանի պարտկազմակերպության անդամ է, և նրա հաշվառման քարտը դեռևս գտնվում է Սևանի շրջկոմում։

Նման դեպքեր կան նաև Սպանդարյանի, Մեղրու, Թալինի, Մարտունու և այլ շրջանային պարտիական կազմակերպություններում, որտեղ կոմունիստներին առանց կցման տալոնի վերցրել են հաշվառման և գանձել են անդամավճար, իսկ նախկին կազմակերպություններն այդ չիմանալով՝ փնտրում են կոմունիստներին։

Պարտիական հաշվառումը միաժամանակ պետք է արտահայտի կազմակերպության կազմի ո՛չ միայն քանակական, այլև որակական փոփոխությունները։ Դրա համար էլ անհրաժեշտ է, որ կոմունիստների հաշվառման քարտերում սիստեմատիկաբար մտցվեն նրանց աշխատանքային գործունեության, կրթության փոփոխությունները, պարգևատրումները, տույժերը և այլ տվյալներ։ Ստուգումները ցույց են տալիս, որ առանձին սկզբնական պարտիական կազմակերպություններ կոմունիստների հաշվառման տվյալներում տեղի ունեցած փոփոխությունները համապատասխան ձևով ժամանակին չեն ներկայացնում քաղկոմ-շրջկոմ։ Օրինակ՝ Էջմիածնի շրջանի շրջկոոպի պարտիական կազմակերպության անդամ Ա. Եղիազարյանի աշխատանքային գործունեության մեջ, 1955 թվականից սկսած, 3 անգամ փոփոխություն է տեղի ունեցել, բայց և ոչ մեկը չի հայտնվել շրջկոմին, որպեսզի նրա հաշվառման քարտում համապատասխան գրանցումներ կատարվեին։ Նույն կազմակերպության 44 անդամներից 16-ի հաշվառման տվյալներում նույնպես տեղի են ունեցել փոփոխություններ, բայց դրանց մասին շրջկոմին ոչ մի տեղեկություն չի տրվել։

Կոմունիստների հաշվառման տվյալներում տեղի ունեցած փոփոխությունները ժամանակին չհայտնելու և չգրանցելու պատճառով էլ որոշ շրջկոմների վիճակագրական հաշվետվություններ հաճախ չեն արտացոլում պարտիական կազմակերպության իսկական կազմը։

Վիճակագրական հաշվետվությունները կազմակերպությունների ղեկավար-



ներին զինում են կոնկրետ տվյալներով, որոնք անհրաժեշտ են պարտիական կազմակերպությունների կազմը ավելի լավ ուսումնասիրելու և պարտիական աշխատանքը ճիշտ վարելու համար։ Անհրաժեշտ է, որ քաղկոմ-շրջկոմները լուրջ ուշադրություն դարձնեն վիճակագրական հաշվետվությունները կազմելու և նրանց խոր վերլուծության վրա, համապատասխան հետևություններ անեն իրենց կոնկրետ պրակտիկ աշխատանքի համար։

Պարտիայի քաղկոմ-շրջկոմներում կոմունիստների ընդհանուր հաշվառման վիճակը մեծ չափով կախված է սկզբնական պարտկազմակերպություններում հաշվառման դրվածքից, պարտիայի յուրաքանչյուր անդամ-թեկնածուի կողմից պարտիական հաշվառման կանոնների խստիվ պահպանումից։

Սկզբնական պարտկազմակերպության քարտուղարները պարտավոր են ճշգրիտ վարել կոմունիստների հաշվառման գործը, ժամանակին քաղկոմ-շրջկոմ հայտնել կոմունիստների հաշվառման տվյալներում տեղի ունեցած փոփոխությունները, պարտիական ժողովներում հայտնել կազմակերպություն եկած և մեկնած կոմունիստների մասին։ Նրանք պարտավոր են սիստեմատիկաբար կոմունիստներին բացատրել պարտիական հաշվառման նկատմամբ իրենց ունեցած պարտականությունները, հետևել, որ կազմակերպություն եկածները ժամանակին շրջանային կոմիտեում հաշվառման առնվեն և կազմակերպությունից մեկնածները դուրս գան հաշվառումից։ Իսկ պարտիայի քաղկոմ-շրջկոմները պետք է սիստեմատիկաբար ստուգեն հաշվառման դրվածքը սկզբնական պարտիական կազմակերպություններում, հրահանգավորեն քարտուղարներին և օգնեն նրանց կոմունիստների հաշվառման դրվածքի գործում։

Պարտիական տնտեսության մեջ շատ՝ կարևոր տեղ են գրավում պարտիական փաստաթղթերի հաշվառման, ձևակերպման, հանձնման ու պահպանման հարցերը։ Բայց առանձին քաղկոմ-շրջկոմներ այդ կարևոր հարցերին անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում և խախտում են կանոնադրությամբ ու հրահանգներով սահմանված կանոնները։ Օրինակ, Մարտունու շրջանի կաթնաանասնապահական սովետական տնտեսության սկզբնական պարտիական կազմակերպությունը 1956 թվականի ապրիլին պարտիայի անդամության թեկնածու է ընդունել Դ. Սաֆարյանին, բայց շրջկոմը նրա ընդունելությունը հաստատել է 1957 թվականի փետրվարի 9-ին (ինը ամիս հետո), իսկ պարտիական փաստաթղթերը ձևակերպել ու հանձնել են 1957 թվականի ապրիլին, այսինքն՝ այն ժամանակ, երբ նրա թեկնածուական ստաժը արդեն լրացել էր, և նա պետք է դիմեր անդամ ընդունվելու համար։

Ախուրյանի շրջանից Մ. Փիրոյանը պարտիայի շարքերում վերականգնվել է 1957 թվականի հունվարի 15-ին, սակայն նրա պարտիական փաստաթղթերը ձևակերպվել և տոմսը հանձնվել է միայն մայիսի վերջին։ Արթիկի շրջանի Հոռոմ գյուղի տերիտորիալ կազմակերպությունը Վ. Մարտիրոսյանին պարտիայի անդամության թեկնածու է ընդունել 1956 թվականի հոկտեմբերին, շրջկոմն ընդունելությունը հաստատել է 1957 թվականի ապրիլին, այսինքն՝ վեց ամիս հետո, իսկ պարտիական փաստաթղթերը ձևակերպել ու տոմսը Մարտիրոսյանին է հանձնել 1957 թվականի հուլիսին, այսինքն՝ նրա ընդունվելուց 9 ամիս հետո։ Նույնպիսի ձգձգումներով են ձևակերպվել նաև Հովհաննիսյանի, Կալոյանի, Ռուխկյանի և ուրիշների պարտիական փաստաթղթերը։

Պարտիական փաստաթղթերի ձևակերպման նման ձգձգումներ թույլ

են տալիս նաև Աշտարակի, Ազիզբեկովի և այլ շրջանային կոմիտեները։ Հասկանալի է, որ պարտիական փաստաթղթերի ձևակերպման համար պարտիայի կանոնադրությամբ սահմանված ժամկետի այսպիսի ձգձգումները բացասաբար են անդրադառնում կոմունիստների քաղաքական դաստիարակության և կարգապահության վրա։

ՍՄԿՊ Կենտկոմի հրահանգների համաձայն պարտիայի քաղկոմ-շրջկոմները նոր ընդունված և վերականգնված կոմունիստներին հանձնված պարտիական տոմսերի հաշվետու քարտերը և մյուս փաստաթղթերը պետք է Կենտրոնական Կոմիտե ներկայացնեն մեկ ամսվա ընթացքում։ Սակայն Մարտունու, Աշտարակի, Արթիկի և ուրիշ շրջկոմներ ներկայացնում են շատ ուշացումով։

Առանձին շրջկոմներում անպատասխանատու և անփույթ վերաբերմունքի պատճառով պարտիական փաստաթղթերը փչացվում կամ որակով ու ճիշտ չեն լրացվում, կոմունիստներին տրվում են դեֆեկտավոր փաստաթղթեր, անճիշտ գրանցումներով և անընթեռնելի կնիքով։ Միայն Երևան քաղաքի Սպանդարյան շրջկոմում պարտիական փաստաթղթերի ձևակերպման ժամանակ փչացվել է պարտիական փաստաթղթերի 15 կոմպլեկտ, Լենինյան շրջկոմում՝ 10-ը, Լենինականի քաղկոմում՝ 12 կոմպլեկտ և այլն։

Որոշ շրջկոմներ հարկ եղած ուշադրություն չեն դարձնում դրամական բլանկները ճիշտ կազմելու և ստուգելու վրա. հաճախ այդ բլանկները շրջկոմի քարտուղարները կամ բյուրոյի անդամները ստորագրում են մեխանիկորեն, առանց ստուգման, մինչդեռ համաձայն հրահանգի, այդ բլանկները պետք է նախօրոք կազմվեն, կոմունիստի գիտությամբ և նրա մասնակցությամբ էլ շրջկոմի քարտուղարի կամ բյուրոյի որևէ անդամի կողմից ստուգվեն, թե որքանով ճիշտ են կազմված, թե նրանցում ընդգրկվող հարցերի պատասխանները որքանո՞վ են համապատասխանում իրականությանը կամ իրար հակասական չե՞ն և այլն։ Այդպիսի մանրակրկիտ ստուգումից հետո է, որ պետք է շրջկոմի առաջին քարտուղարը, կամ, նրա բացակայության դեպքում, երկրորդ քարտուղարը տա իր եզրակացությունը պարտիական փաստաթղթերի կոմպլեկտը ձևակերպելու համար։ Բայց փաստերն ասում են, որ առանձին շրջկոմներ կոպիտ կերպով խախտում են հրահանգի վերը նշված պահանջները և պարտիական փաստաթղթերի կոմպլեկտները լրացնում են առանց կոմունիստների գիտության, քարտուղարի կամ բյուրոյի անդամի ստուգման և շրջկոմի քարտուղարի համապատասխան եզրակացության։ Օրինակ, ստուգման ժամանակ Մարտունու շրջանում հայտաբերվեցին պարտիական փաստաթղթերի 10 կոմպլեկտ, որոնք լրացվել էին առանց կազմողի, ստուգողի ստորագրության, ինչպես նաև առանց քարտուղարի եզրակացության։ Նման դեպքեր են նկատվել նաև Թալինի, Իջևանի, Մեղրու, Վեդու, Արթիկի և այլ շրջանային կոմիտեներում։

Որոշ պարտիական կազմակերպություններ անհրաժեշտ պահանջկոտություն չեն ցուցաբերում կոմունիստների նկատմամբ, նրանց մեջ չեն արմատավորում պատասխանատվության զգացում պարտիական տոմսերի և թեկնածուական քարտերի պահպանման համար, այդ պատճառով էլ քիչ չեն դեպքերը, երբ կոմունիստները կորցնում են իրենց պարտիական տոմսը կամ թեկնածուական քարտը։

Լինում են դեպքեր, որ պարտիական փաստաթղթերը կոմունիստները



կորցնում են նույնիսկ երկրորդ անգամ։ Այսպես, օրինակ, Ազիզբեկովի շրջանի Էլփինի № 104 հետախուզական խմբի պարտիական կազմակերպության նախկին անդամ Մ. Գասպարյանը 1955 թվականին կորցնում է իր թեկնածուական քարտը, որի համար շրջկոմի բյուրոն նրան հայտարարում է նկատողություն, գրանցելով հաշվառման քարտում։ 1956 թվականի մարտին նա կրկին կորցնում է պարտիական տոմսը։ Այդ հանցանքի համար նա պետք է վտարվեր պարտիայի շարքերից, բայց շրջանային կոմիտեն այդպես չվարվեց, պարտիայի անդամությունից նրան իջեցրեց անդամության թեկնածու, հաշվի առնելով նրա երիտասարդ լինելը։ Սակայն փաստը մնում է փաստ, որ նա մեկ տարվա ընթացքում երկու անգամ կորցրել է պարտիական տոմսը։

Առանձին շրջկոմներ և պարտիական կազմակերպություններ կոմունիստների կողմից պարտիական փաստաթղթերը կորցնելու հարցի քննարկմանը մոտենում են ձևականորեն, չեն խորանում այն հարցի մեջ, թե ինչպիսի պայմաններում է տեղի ունեցել կորուստը և անհրաժեշտ միջոցառումներ չեն ձեռնարկում կորցված տոմսերը գտնելու համար։

Պարտիայի քաղկոմ-շրջկոմները և սկզբնական կազմակերպությունները պետք է լուրջ ուշադրություն դարձնեն պարտիական փաստաթղթերի ինչպես որակով ու խնամքով ձևակերպման, ժամանակին հանձնման, այնպես էլ նրանց պահպանման հարցերին և այդ գործում բարձրացնեն կոմունիստների պատասխանատվության զգացումը։

Պարտիական տնտեսության բաղկացուցիչ մասն է կազմում պարտիական անդամավճարը, որի գանձումը պետք է կատարվի ժամանակին և ճշտորեն։ Պարտիական անդամավճարները ժամանակին մուծելը պարտիայի հետ կոմունիստների կազմակերպական կապի արտահայտություններից մեկն է, դրա համար էլ պարտիական կազմակերպությունները պետք է լուրջ ուշադրություն դարձնեն այդ գործին։

Պարտիական տնտեսության կարևորագույն բնագավառն է նաև պարտիական ժողովների, բյուրոյի նիստերի, պլենումների արձանագրությունների, որոշումների խնամքով կազմումը։

Ժողովի արձանագրությունը պարտիական շատ կարևոր փաստաթուղթ է. այն պարտիական կազմակերպության աշխատանքի հայելին է, որը ինչքան մաքուր ու կարգին լինի, այնքան էլ պարզ ու հստակ կարտացոլի տվյալ պարտիական կազմակերպության գործունեությունը։ Պետք է նշել, որ ռեսպուբլիկայի շատ սկզբնական պարտիական կազմակերպություններ ու շրջկոմներ մասամբ արանքով են նայում պարտիական ժողովների արձանագրությունների խնամքով ձևակերպմանն ու պահպանմանը։

Հաճախ ժողովների արձանագրությունները ժամանակին չեն ձևակերպվում, համապատասխան որոշումներ չեն ընդունվում, հետևապես և չի ստուգվում ընդունված որոշումների կատարումը։ Վեդու շրջանի Սպանդարյանի անվան սովետական տնտեսության սկզբնական պարտիական կազմակերպությունը 1957 թվականի մարտին և ապրիլին հրավիրել է պարտիական ժողովներ, սակայն արձանագրություններ չկան, իսկ հունիս ամսից հետո հրավիրված հինգ պարտիական ժողովների արձանագրությունները դեռևս չեն խմբագրված և գտնվում են սևագիր վիճակում։ Այդպիսի փաստեր կան նաև նույն շրջանի շրջկոոպմիության սկզբնական պարտիական կազմակերպությունում։

*Շատ դեպքերում էլ արձանագրությունները կազմվում են թերի, ո՛չ միայն ուղղագրական ու շարահյուսական սխալներով, այլև ոճական անճշտություններով ու մտքի սխալներով, կոմունիստների ելույթները լրիվ չեն արձանագրվում կամ աղավաղվում են։ Առանձին դեպքերում շատ սկզբնական պարտիական կազմակերպություններ ձևական վերաբերմունք են ցուցաբերում դեպի հարցերի քննարկումը։ Պարտիական ժողովներում քննարկում են կարևոր հարցեր, բայց որոշում չեն ընդունում։ Օրինակ՝ Արտաշատի շրջանի Նովրուզլուի, Վ. Դվինի կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպությունները մայիս ամսին քննության են առել պարտլուսցանցի ուսումնական տարվա ամփոփման արդյունքները, բայց որոշում չեն ընդունել։ Շահումյանի կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպությունը 1957 թվականի մայիսի 4-ին քննել է պարտիական կազմակերպության քարտուղար Հակոբյանի հարցը՝ նրան քարտուղարի պարտականություններից ազատելու մասին, որի առթիվ 8 կոմունիստ ելույթ են ունեցել, բայց ժողովը որոշում չի ընդունել։ Նույն շրջանի Անաստասավանի պարտիական սկզբնական կազմակերպությունը 1957 թվականին քննել է կոմունիստ Մնացականյանի հարցը, նրա պարտիական տույժը՝ նկատողությունը հանելու մասին, բայց որոշում չի ընդունել։ Ազատավանի սկզբնական պարտկազմակերպությունը սեպտեմբերի 15-ին լսել է նախորդ ժողովի որոշումների կատարման ընթացքի մասին, բայց թե ի՛նչ ժողովի և ի՛նչ որոշումների մասին, հայտնի չէ։*

*Առանձին դեպքերում սկզբնական պարտիական կազմակերպությունների ժողովների որոշումները կոնկրետությունից զուրկ են լինում և ընդհանուր բնույթ են կրում։ Օրինակ, շատ հաճախ որոշումներում հանդիպում ենք «մոբիլիզացնել բոլոր ուժերը», «ձեռք առնել բոլոր միջոցները» և ընդհանուր բնույթ կրող այլ արտահայտությունների. իսկ թե ի՛նչ ուժեր մոբիլիզացնել, կոնկրետ ինչ միջոցառումներ ձեռնարկել, պարտիական կազմակերպությունների արձանագրությունների մեջ չեն արտահայտվում և այլն։*

*Պարտիայի քաղկոմ-շրջկոմների, սկզբնական կազմակերպությունների խնդիրն է՝ ուժեղացնել ուշադրությունը պարտիական տնտեսության նկատմամբ, խստիվ կիրառել կոմունիստների հաշվառման, պարտիական փաստաթղթերի ձևակերպման, հանձնման և պահպանման, անդամավճարների գանձման, արձանագրությունների ձևակերպման մասին ՍՄԿՊ Կենտկոմի հրահանգները և կոմունիստներին սիստեմատիկաբար պարզաբանել իրենց պարտիական պարտականությունները։*

---

# ԲԱՐՁՐԱՑՆԵՆՔ ԾԽԱԽՈՏԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

Գ. ԿԱՐԱԿՈԶՈՎ

*Ծխախոտի կուլտուրան, որպես գյուղատնտեսության առավել եկամտաբեր կուլտուրաներից մեկը, Հայկական ՍՍՌ-ի ժողովրդական տնտեսության մեջ զգալի նշանակություն ունի։*

*Գլանակային բարձրորակ ծխախոտի մշակությունը Հայկական ՍՍՌ-ում սկսվել է սովետական կարգեր հաստատվելուց հետո, իսկ ցարական կարգերի օրոք Դարալագյազի (ներկայիս Եղեգնաձոր), Ղամարլուի (ներկայիս Արտաշատ), Վեդիբասարի (ներկայիս Վեդի), Քանաքեռի (ներկայիս Կոտայք), ինչպես նաև Աշտարակի, Ղափանի շրջաններում փոքր տարածության վրա մշակվել է միայն մախորկայի սորտին պատկանող, այսպես կոչված, Ղուլասար տեսակը։ Այժմ ռեսպուբլիկայի 18 շրջաններ մոտ 310 կոլտնտեսություններ գյուղատնտեսական մյուս կուլտուրաների հետ միասին մշակում են նաև ծխախոտ։ Ծխախոտագործությունը ավելի լայն ծավալ է ստացել Շամշադինի, Իջևանի, Բասարգեչարի, Մարտունու, Ալավերդու, Կոտայքի, Սիսիանի և Նոյեմբերյանի շրջաններում։ 1956 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, Հայաստանում ծխախոտի տարածությունը աճել է 90 անգամ, իսկ ՍՍՌՄ-ում՝ 3 անգամ։ 1940 թվականի համեմատությամբ 1956 թվականին ծխախոտի բերքատվությունը Հայաստանում բարձրացել է 1,6 անգամ, իսկ ՍՍՌՄ-ում՝ 1,2 անգամ։ Հայկական ՍՍՌ-ի կոլտնտեսություններն արտադրում են Սովետական Միության ծխախոտի շուրջ 10—11 տոկոսը։ Ծխախոտագործությունը փաստորեն դարձել է Հայաստանի գյուղատնտեսության եկամտաբեր ճյուղերից մեկը, մանավանդ լեռնային և նախալեռնային շրջաններում։*

*Ռեսպուբլիկայում արտադրվող ծխախոտի առատ հումքի բազայի վրա Երևանում, Սևանում, Իջևանում, Շամշադինում կառուցվել են ծխախոտի ֆերմենտացիոն 4 գործարան և Երևանում՝ մեկ խոշոր ֆաբրիկա, որն արտադրում է բարձրորակ գլանակներ, սիգարետներ և հատած ծխախոտ։*

*Առաջավոր ագրոտեխնիկայի ու բարձր բերքի վարպետների փորձը արտադրության մեջ մասսայականորեն ներդնելու շնորհիվ տարեցտարի բարձրանում է ծխախոտի բերքատվությունը։ Ծխախոտի բարձր բերք ստանալու համար ռեսպուբլիկայի 31 կոլտնտեսականների շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում, իսկ 563 կոլտնտեսականներ ու կոլտնտեսուհիներ պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով և մեդալներով։*

*Հայկական ՍՍՌ-ում ծխախոտի պլանտացիաների ընդարձակման, բերքատվության բարձրացման, դրամական եկամուտների աճի, մեկ հեկտարի*

մշակության ու մեկ ցենտներ հումքի վրա ծախսված աշխօրերի քանակի մա-
սին պատկերացում է տալիս հետևյալ աղյուսակը.

Ծխախոտի պլանտացիաների ընդարձակումը, բերքատվության ու եկամուտների աճը և
մշակության վրա ծախսված աշխօրերի քանակը

| | 1940 թ. | 1956 թ. |
|---|---|---|
| Սածիլված տարածությունը (հեկտարներով) | 5,119 | 7,775 |
| Մեկ հեկտարից ստացված բերքը (ցենտներով) | ·6,2 | 9,9 |
| Համախառն արտադրանքը (ցենտներով) | 31,738 | 77,060 |
| 100 հեկտարից ստացված արտադրանքը (ցենտներով) | 620 | 990 |
| Ստացված եկամուտը (ռուբլիներով) | 9,718.000 | 90,067,400 |
| Մեկ հեկտար ծխախոտի եկամուտը (ռուբլիներով) | 1,900 | 11,590 |
| Մեկ հեկտար ծխախոտի վրա ծախսված աշխօրերի քանակը | 435 | 454 |
| Մեկ ցենտներ ծխախոտի վրա ծախսված աշխօրերի քանակը | 70 | 45,8 |

Ինչպես թվերն են ցույց տալիս, 1956 թվականին, 1940 թվականի համե-
մատությամբ, ծխախոտի պլանտացիաները ընդարձակվել են 2656 հեկտարով։
Նույն ժամանակամիջոցում մեկ հեկտարի միջին բերքը բարձրացել է 3,7
ցենտներով, իսկ 100 հեկտարի բերքը՝ 370 ցենտներով։ Առավել ակնհայտ է
այն, որ 1956 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, յուրաքանչյուր
մեկ հեկտար ծխախոտի պլանտացիայի բերքատվությունը 3,7 ցենտներով
բարձրանալու հետ մեկտեղ, մեկ ցենտներ հումքի վրա ծախսված աշխօրերի
քանակը 24,8-ով կրճատվել է։

Ավելի ուշագրավ է մեկ հեկտար ծխախոտի պլանտացիայից ստացված
դրամական եկամուտը։ Եթե 1940 թվականին մեկ հեկտարից ստացվել է 1900
ռուբլի դրամական եկամուտ, ապա 1956 թվականին ստացվել է 11590 ռուբլի.
կամ 9670 ռուբլով ավելի։ 1956 թվականին պետությանը հանձնված ծխախո-
տի դիմաց ռեսպուբլիկայի ծխախոտագործ կոլտնտեսությունները ստացել են
9,3 անգամ շատ դրամ, քան 1940 թվականին։

Ծխախոտագործության ներկա մակարդակը հրամայական խնդիր է դնում
բարձրացնել ո՛չ միայն բերքատվությունը, այլև պետությանը հանձնվող
ծխախոտի որակը։

Համախառն բերքի արտադրությունը բարձրացնելու և հումքի որակը լա-
վացնելու համար անհրաժեշտ է առաջիկա 2—3 տարիներում տրակտորահար-
մար պլանտացիաների առաջին և երկրորդ քաղհանի ու փխրեցման աշխա-
տանքները լրիվ մեքենայացնել։ Կոտայքի, Իջևանի և Շամշադինի շրջանների
մի շարք կոլտնտեսություններում կիրառվում է ծխախոտի բույսերի միջշարա-
յին տարածությունների տրակտորային կուլտիվացիա, իսկ Ալավերդու, Բա-
սարգեչարի, Մարտունու, Նոր Բայազետի և այլ շրջանների տասնյակ կոլտնտե-
սություններ սածիլման համար մարգերը պատրաստում են տրակտորներով։
Սակայն այս լավագույն միջոցառումները ՄՏ կայանները, շրջանային պար-
տիական ու սովետական կազմակերպությունները և Գյուղատնտեսության մի-
նիստրությունը դեռևս չեն մասսայականացնում և համապատասխան միջոցներ
ձեռք չեն առնում դրանք մյուս կոլտնտեսություններում ևս արմատավորելու
համար։

Մեր ռեսպուբլիկայի անջրդի պայմաններում ծխախոտ մշակող կոլտնտե-
սություններում, երբեմն երկարատև երաշտի հետևանքով, բերքի զգալի կո-



րուստ է լինում։ Երաշտի դեմ պայքարելու նպատակով անհրաժեշտ է առաջիկա
3—5 տարվա ընթացքում հայրենական գիտա-հետազոտական ինստիտուտնե-
րի կողմից մշակված և Ղրիմի երկրամասի ծխախոտագործ կոլտնտեսություն-
ներում լայնորեն ներդրված արհեստական անձրևացման մեքենայացված նո-
րագույն եղանակը կիրառել նաև մեր ռեսպուբլիկայի ծխախոտագործ կոլտըն-
տեսություններում։

Այս եղանակով մեկ հեկտար ծխախոտի պլանտացիա ջրելու համար յու-
րաքանչյուր անգամ պահանջվում է 100—300 խոր.մետր ջուր, ներկայումս ըն-
դունված 400—500 խոր. մետրի փոխարեն։

Ղրիմի թերակղզու ծխախոտագործ կոլտնտեսությունների փորձերը ցույց
են տվել, որ արհեստական անձրևացման միջոցով մշակվող պլանտացիաների
բերքատվությունը լինում է ավելի բարձր, հումքի որակը ավելի լավ, պլանտա-
ցիաների ոռոգումը կատարվում է արդյունավետ, տալով ջրի ու բանվորական
ուժի զգալի տնտեսում։

Ծխախոտի մշակության աշխատատար պրոցեսների մեքենայացման հար-
ցը քիչ է զբաղեցնում ռեսպուբլիկայի համապատասխան գիտա-հետազոտական
ինստիտուտներին և նրանց գիտնականներին, որոնք, ցանկության դեպքում,
կոլտնտեսություններին կարող են օգնել ինչպես ծխախոտի համախառն բերքը
բարձրացնելու, այնպես էլ հումքի որակը լավացնելու գործում։ Այստեղից էլ
անհրաժեշտ է, որ ռեսպուբլիկայի գիտա-հետազոտական ինստիտուտներն ու
գիտնականները իրենց աշխատանքի թեմատիկ պլանները լրացնեն ծխախոտա-
գործության ու նրա առանձին պրոցեսների մեքենայացման թեմաներով։

Առաջավոր կոլտնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ լավագույն
աշխատանքի դեպքում կարելի է մեծ չափով բարձրացնել ծխախոտի բերքա-
տվությունը և այդ կուլտուրայից ստացվող դրամական եկամուտը։ Բերենք մի
քանի օրինակներ։

1940 թվականին Շամշադինի շրջանի կոլտնտեսությունները մշակված
ծխախոտի ամբողջ տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել են 11,7
ցենտներ հումք, իսկ 1956 թվականին՝ 17 ցենտներ, կամ 5,3 ցենտներով ավե-
լի։ 1940 թվականին ծխախոտի յուրաքանչյուր հեկտարից ստացված 3,700
ռուբլի դրամական եկամտի դիմաց 1956 թվականին ստացել են 18,590 ռուբ-
լի, կամ 14,890 ռուբլով ավելի։ 1940 թվականին մեկ ցենտներ հումք արտա-
դրելու համար շրջանի կոլտնտեսությունները միջին հաշվով ծախսել են 55,8
աշխօր, իսկ 1956 թվականին՝ 31,4, կամ 24,4 աշխօրով պակաս։ 1956 թվա-
կանին շրջանի կոլտնտեսությունների ստացած ամբողջ դրամական եկամտի
58,1 տոկոսը գոյացել է 1000 հեկտար ծխախոտից։

Շամշադինի շրջանի կոլտնտեսությունները, մտնելով սոցիալիստական
մրցության մեջ, պարտավորվել են ընթացիկ տարում ծխախոտի մեկ հեկտարի
միջին բերքը հասցնել 20 ցենտների, որը շամշադինցիների համար բերքա-
տվության գագաթնակետ չի հանդիսանում։

Շրջանի Մովսես, Չորաթան, Այգեձոր, Ղրղի և շատ գյուղերի առաջավոր
կոլտնտեսությունների բարձր բերքի վարպետների համբավը հայտնի է ո՛չ
միայն Հայկական ՍՍՌ-ում, այլև ամբողջ ՍՍՌՄ-ում։ Շրջանի Մովսես գյուղի
«Ինտերնացիոնալ» կոլտնտեսությունը 1956 թվականին 112 հեկտար Տրապի-
զոն տեսակի ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստացել
է 24,9 ցենտներ միջին բերք։ Այս տնտեսության 4,575,800 ռուբլու դրամական

*եկամտի 3,321,800 ռուբլին գոյացել է ծխախոտից, որը կազմում է ընդհանուր դրամական եկամտի 73,5 տոկոսը։ Ծխախոտի պետական մթերման պլանը գերակատարելու համար կոլտնտեսությունը 1956 թվականին ստացել է 683 հազար ռուբլի պարգև-հավելում։ Կոլտնտեսությունը զգալիորեն բարձրացրել է ծխախոտի մեկ հեկտարից ստացվող դրամական եկամուտը։*

*Մովսես գյուղի կոլտնտեսության՝ ընկ. Մ. Զոհրաբյանի ղեկավարած բրիգադան 1956 թվականին 12,5 հեկտար պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 26,4 ցենտներ բարձրորակ ծխախոտ, իսկ օղակավարներ Ա. Պալյանը և Մ. Անտոնյանը՝ 28,7—29,2 ցենտներ։*

*Նույն շրջանի Զորաթան գյուղի Կամոյի անվան կոլտնտեսությունը 1956 թվականին 45 հեկտար պլանտացիայի ամեն մի հեկտարից ստացել է 23,5 ցենտներ ծխախոտի միջին բերք։ Այդ նույն թվականին կոլտնտեսության 2,277,000 ռուբլի դրամական եկամտի 1,428,000 ռուբլին, կամ ընդհանուր դրամական եկամտի 63 տոկոսը, գոյացել է ծխախոտից։ Այստեղ մեկ հեկտար ծխախոտից ստացվող միջին եկամուտը հասել է 31,800 ռուբլու։ Կոլտնտեսության՝ ընկ. Հ. Քալանթարյանի ղեկավարած բրիգադան յուրաքանչյուր հեկտարից ստացել է 27 ցենտներ բարձրորակ ծխախոտի հումք, իսկ օղակավար Շ. Ուդումյանի օղակը՝ 31 ցենտներ։*

*Նոյեմբերյանի շրջանի կոլտնտեսականները աղնիվ աշխատանքի շնորհիվ տարեցտարի բարձրացնում են ինչպես ծխախոտի պլանտացիաների բերքատվությունը, այնպես էլ դրամական եկամուտները։ Այդ են ցույց տալիս հետևյալ փաստերը։*

*1950 թվականին յուրաքանչյուր հեկտարից 4,8 ցենտներ միջին բերքի դիմաց 1956 թվականին շրջանի կոլտնտեսությունները ստացել են 11,5 ցենտներ ծխախոտի բարձրորակ հումք, կամ 1950 թվականի մեկ հեկտար ծխախոտից ստացված 5,200 ռուբլի դրամական եկամտի դիմաց 1956 թվականին ստացել են 18,100 ռուբլի։ Այսպիսով, մեկ հեկտարի դրամական եկամուտն աճել է 12,900 ռուբլով։*

*Այդ նույն շրջանի Ոսկեպար գյուղի կոլտնտեսությունը 1956 թվականին 18 հեկտար Սամսոն տեսակի ծխախոտի պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 23 ցենտներ բարձրորակ հումք, 1955 թվականի 20,6 ցենտների դիմաց, կամ յուրաքանչյուր հեկտարից ստացել է 39,923 ռուբլի դրամական եկամուտ, 1955 թվականի 27,670 ռուբլու դիմաց։ Այլ կերպ ասած, մեկ տարվա ընթացքում մեկ հեկտար ծխախոտի դրամական եկամուտը աճել է (հիմնականում որակի բարձրացման հաշվին) 12,253 ռուբլով։ Այս կոլտնտեսության առաջավոր օղակավարուհի Ա. Աբգարյանի օղակը իր մշակած 6 հեկտար ծխախոտի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 41,757 ռուբլի դրամական եկամուտ։*

*Զարմանալիորեն ուշագրավ և ուսանելի են Բասարգեչարի շրջանի ծխախոտագործների նվաճումները։ Այստեղ ծխախոտը մշակվում է ծովի մակերևույթից 1900—2200 մետր բարձրության վրա, որը ծխախոտի մշակության պատմության մեջ եզակի է ո՛չ միայն ՍՍՌՄ-ում, այլև ամբողջ աշխարհում։ Բնության խիստ սահմանափակ և քիչ բարենպաստ պայմաններում շրջանի կոլտնտեսությունները տարեցտարի բարձրացնում են ծխախոտի բերքատվությունը։ Այսպես, 1940 թվականին շրջանում ծխախոտի մեկ հեկտարից ստացվել է 2,4*



*ցենտներ բերք, կամ 400 ռուբլի դրամական եկամուտ, 1950 թվականին՝ 3,1 ցենտներ միջին բերք, կամ 1600 ռուբլի դրամական եկամուտ, իսկ 1956 թվականին մեկ հեկտար ծխախոտի միջին բերքատվությունը հասել է 11,6 ցենտների, իսկ դրամական եկամուտը՝ 15,435 ռուբլու, կամ, 1940 թվականի համեմատությամբ, մեկ հեկտար ծխախոտի բերքը աճել է 9,2 ցենտներով, դրամական եկամուտը՝ 15,032 ռուբլով։*

*Հետաքրքրական է նաև այն, որ 1940 թվականին մեկ հեկտար ծխախոտի մշակության վրա (2,4 ցենտներ բերքի դեպքում) միջին հաշվով ծախսվել է 453 աշխօր, իսկ 1956 թվականին՝ (11,6 ցենտներ բերքի դեպքում) 487 աշխօր։ Ուրիշ կերպ ասած, 1956 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, մեկ հեկտար ծխախոտի մշակության վրա ծախսված աշխօրերն ավելացել են 34 օրով, իսկ բերքատվությունը բարձրացել է 9,2 ցենտներով։*

*Շրջանի Կարմիր գյուղի կոլտնտեսությունը 1956 թվականին 30 հեկտար պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 22,3 ցենտներ ծխախոտ, կամ 25,530 ռուբլի դրամական եկամուտ։ Նույն շրջանի Ջաղբենդ գյուղի «Կրասնի չաբակ» կոլտնտեսությունը 18 հեկտար ծխախոտի պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 22,6 ցենտներ բերք, իսկ Թ. Բաբաևի օղակը՝ 25 ցենտներ միջին բերք։*

*1950 թվականին ծխախոտից ստացված դրամական եկամուտը կազմել է շրջանի կոլտնտեսությունների ընդհանուր դրամական եկամտի 22,6 տոկոսը, իսկ 1956 թվականին՝ 44 տոկոսը։ Ինչպես տեսնում ենք, ծխախոտից ստացվող դրամական եկամուտն աճել է շուրջ 106 տոկոսով, և այդ է պատճառը, որ կոլտնտեսություններն այժմ լուրջ ուշադրություն են դարձնում այդ կուլտուրայի մշակության վրա։*

*Ծխախոտի բարձր բերք ստացող առաջավոր կոլտնտեսությունների, բրիգադաների և օղակների թիվը շատ է։ Սակայն դրանց կողքին կան նաև այնպիսի շրջաններ, կոլտնտեսություններ, բրիգադաներ և օղակներ, որոնք չափազանց ցածր բերք են ստանում։ Այսպես, օրինակ, Ազիզբեկովի, Ղափանի, Սիսիանի, Գորիսի, Մարտունու, Ալավերդու, Կարմիրի, Կոտայքի շրջանների մի շարք ծխախոտագործ կոլտնտեսություններ, որոնք գտնվում են հողակլիմայական ավելի լավ պայմաններում, մեկ հեկտար հողի վրա տնկում են 150—200 կիլոգրամ սածիլ և տարվա վերջին ստանում են միայն 50—100 կգ. ծխախոտ։ Ինչպե՞ս կարելի է հանդուրժել, երբ Ալավերդու շրջանի Մարց գյուղի կոլտնտեսությունը 1956 թվականին մեկ հեկտարից ստացել է 90 կիլոգրամ ծխախոտ, Ազիզբեկովի շրջանի Գնդեվազ գյուղի կոլտնտեսությունը՝ 118 կիլոգրամ, նույն շրջանի Գոմուր գյուղի կոլտնտեսությունը՝ 60 կիլոգրամ։*

*Ռեսպուբլիկայում ծխախոտի յուրաքանչյուր հեկտարի մշակության վրա միջին հաշվով ծախսել են 454 աշխօր, բայց Աշտարակի շրջանում ծախսել են 587 աշխօր, կամ 133 աշխօրով ավելի, Մարտունու շրջանում՝ 552 աշխօր, կամ 55 աշխօրով ավելի, Կարմիրի շրջանում՝ 720 աշխօր, կամ 266 աշխօրով ավելի, Նոր Բայազետի շրջանում՝ 564 աշխօր, կամ 110 աշխօրով ավելի։*

*Աշխօրերի նման շռայլումը, այն էլ ցածր բերքի և վատորակ հումքի դեպքում, արդյունք է կոլտնտեսությունների կողմից ընդունված արտադրական ցածր նորմաների։*

*Ծխախոտագործ կոլտնտեսությունների աշխատանքի հիմնական թերու-*

թյուններից մեկն էլ բարձրորակ հումքի համար տարվող անբավարար պայքարն է, որի հետևանքով տարիներ շարունակ ապրանքային ծխախոտի I, II և III տեսակների արտադրության պլանը թերակատարվում է։

Բարձր տեսակի ծխախոտի արտադրության պլանը 1956 թվականին խիստ թերակատարեցին՝ Աշտարակի, Գորիսի, Թալինի, Բասարգեչարի, Սիսիանի, Կարմիրի, Նոր Բայազետի շրջանի ծխախոտագործ կոլտնտեսությունները, որոնք զրկվեցին խոշոր գումարից։

Ինչպես վերևում նշեցինք, մի շարք շրջաններում ցածր է ծխախոտի բերքատվությունը։ Դրա հիմնական պատճառներից են՝ նորմալ պարարտացման բացակայությունը, սահմանված ժամկետից 30—40 օրով ուշացած սածիլումը՝ առանձնապես լեռնային շրջանների կոլտնտեսություններում։

Դաշտային աշխատանքի, հատկապես ծխախոտի տերևաքաղի շրջանում, շատ կոլտնտեսություններում ծխախոտագործ օղակների անձնակազմի մի զգալի մասը օգտագործում են այլ աշխատանքներում, որը հաճախ զգալի վնաս է պատճառում։ Առանձնապես ձգձգվում է ծխախոտի տերևաքաղը և հասունացած տերևները ժամանակին չհավաքելու պատճառով ո՛չ միայն գերհասունանում են, այլև ցողունի վրա չորանում ու անպետքանում։

Ծխախոտի բարձր բերքը անկորուստ չորացնելու և որակն ապահովելու գործում վճռական դեր է խաղում չորանոցային տնտեսությունը։ Սակայն պետք է ասել, որ ռեսպուբլիկայի ծխախոտագործ կոլտնտեսությունների միայն 45—50 տոկոսն է ապահովված չորանոցներով։ Չորանոցների առկա դրությամբ նեղ վիճակումն են գտնվում Ազիզբեկովի, Ալավերդու, Ախտայի, Աշտարակի, Թալինի, Կոտայքի, Կարմիրի, Բասարգեչարի, Մարտունու, Նոր Բայազետի, Վեդու, Սիսիանի և Գորիսի շրջանների շատ կոլտնտեսություններ։ Չորանոցներով ապահովված չլինելու հետևանքով այդ կոլտնտեսությունները ամեն տարի բերքի զգալի կորուստ են տալիս։ Չնայած դրան, շրջանային կազմակերպությունները և կոլտնտեսությունների վարչությունները անհրաժեշտ միջոցառումներ չեն ձեռնարկում չորանոցաշինարարության վրա տեղական շինանյութերը մաքսիմալ չափով օգտագործելու համար։ Բացի այդ, չեն նորոգվում եղած չորանոցները, իսկ նորերի կառուցումը միանգամայն անբավարար է ընթանում։ Աշտարակի, Սիսիանի, Վեդու և Թալինի շրջաններում վերջին երկու տարիների ընթացքում ոչ մի աչք չորանոց չի կառուցվել։

Ծխախոտագործ կոլտնտեսությունները չորանոցներով ապահովված չլինելու պատճառով ծխախոտի մի զգալի մասը չորացնում են գոմերում, արտադրական և վարչական շենքերում, կոլտնտեսականների տներում, հողի ու քարերի վրա, տների կտուրներում և այլ պրիմիտիվ եղանակներով, որի հետևանքով էլ տեղի է ունենում հումքի խոշոր կորուստ և որակի իջեցում։ Հաշվի չառնելով այս բոլորը, մի շարք կոլտնտեսություններ եղած կրակային չորանոցներն էլ կանոնավոր չեն օգտագործում։ Խստորեն պետք է դատապարտել այն վնասակար պրակտիկան, երբ կրակային չորանոցները գործի են դնում ոչ թե երկրորդ տերևաքաղի ժամանակ, այլ սեպտեմբերի վերջին, որը խիստ ուշ է։

Չորանոցաշինարարության անբավարար ընթացքը հիմնականում վերագրվում է դրսից բերվող շինափայտի պակասությանը, որը հնարավոր չէ միանգամից վերացնել։ Մյուս կողմից՝ ռեսպուբլիկան սեփական անտառներով ապահովված չէ, իսկ եղած քիչ անտառների փայտի տեսակն էլ չորանոցաշինարարության համար անպետք է։ Այս բոլորից հետո հրամայական պահանջ է



առաջանում՝ վերափոխել չորանոցների ձևն ու կառուցել այնպիսի չորանոցներ, որոնք պահանջեն քիչ շինափայտ, ունենան չորացվող ծխախոտի բարձր թողարկում, ապահովեն հումքի բարձր որակը և կառուցվեն էժան։

Ներկայումս գործող կամ նոր կառուցվող մեկ աչք արևի չորանոցի վրա ծախսվում է շուրջ 30 խոր. մետր շինափայտ, մեծ քանակությամբ քար և այլ շինանյութեր։ Այլ խոսքով ասած, մեկ աչք արևի չորանոց կառուցելու համար ծախսվում է 25—30 հազար ռուբլի, որի հետևանքով ծխախոտի հումքի ինքնարժեքը բարձր է։

Ծխախոտագործների և շինարարների առաջ հարց էր դրվել կառուցել նոր տիպի չորանոց, որը համապատասխանի տեխնիկական ու տնտեսական բոլոր պահանջներին և լավ արդյունք տա։ Այս ուղղությամբ երկարատև որոնումները տվին իրենց դրական արդյունքը։ Այս տարի Կոտայքի շրջանի Առինջ գյուղի կոլտնտեսությունում փորձարկվել է նոր տիպի չորանոց, որը եղած չորանոցների համեմատությամբ, նախնական հաշվարկումներով, տալիս է շինափայտի և դրամական ծախսերի քառապատիկ և ավելի տնտեսում, չորացվող ծխախոտի 50 տոկոսով ավելի թողարկում և որակի լավացում։ Նոր տիպի չորանոցը հնարավոր է կառուցել փայտի, երկաթի ու երկաթ-բետոնի կոնստրուկցիաներով, նայած շինանյութերի առկայության։

Մեր ռեսպուբլիկայի համար ծխախոտն ունի տնտեսական խոշոր նշանակություն, բայց նրա մշակության կուլտուրան դեռ գտնվում է ցածր մակարդակի վրա։ Ծխախոտի բերքատվության բարձրացման և որակի լավացման գործում անբավարար աշխատանք են կատարում պարտիայի Սիսիանի, Աշտարակի, Ալավերդու, Թալինի, Կարմիրի շրջանային կոմիտեները, շրջսովետները, մեքենա-տրակտորային կայաններն ու Գյուղատնտեսության մինիստրությունը։ Նրանք ետ մնացող կոլտնտեսությունների հարցով լավ չեն զբաղվում, ղեկավարությունը շարունակում են շաբլոն եղանակով։

Ծխախոտի մշակության կուլտուրան բարձրացնելու և աշխատանքը լավ կազմակերպելու միջոցով միանգամայն հնարավոր է առաջիկա տարիներում ռեսպուբլիկայի ծխախոտագործ կոլտնտեսություններում ստանալ բարձր բերք, որի համար կան բոլոր անհրաժեշտ պայմանները։

Ծխախոտի բերքատվությունը ավելացնելու, հումքի որակը լավացնելու և ծխախոտագործ կոլտնտեսականների անձնական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով ռեսպուբլիկայի ծխախոտագործ կոլտնտեսություններին խորհուրդ է տրվում ծխախոտ մշակող բրիգադներում և օղակներում, համաձայն կոլտնտեսականների ընդհանուր ժողովի որոշման, կիրառել աշխատանքի լրացուցիչ վարձատրության խրախուսիչ ձևեր։ Օրինակ, կոլտնտեսությունը կարող է ըստ օղակների սահմանել կոլտնտեսականների աշխատանքի լրացուցիչ վարձատրում (պարգևատրում) մշակած և պետությանը հանձնած յուրաքանչյուր մեկ կիլոգրամ ապրանքային ծխախոտի առաջին, երկրորդ և երրորդ տեսակների համար պետական արժեքի 25 տոկոսի չափով։

Հիշյալ եղանակով կոլտնտեսականների աշխատանքի վարձատրում կատարելու դեպքում 1956 թվականին մշակած և պետությանը հանձնած հումքի դիմաց Շամշադինի շրջանի ծխախոտագործները կրկնակի եկամուտ կունենային, իսկ Կոտայքի շրջանի ծխախոտագործները կարող էին ստանալ ավելի շատ։

Մենք կարծում ենք, որ տնտեսական զարգացման ներկա վիճակում կոլ-

տնտեսությունները կարող են, առանց գյուղատնտեսության մյուս ճյուղերի զարգացմանը վնասելու, կիրառել վարձատրման այնպիսի խրախուսող ձևեր, որոնք հնարավորություն կտան բարձրացնել ո՛չ միայն պետությանը հասնող ծխախոտի որակը, այլև ծխախոտագործների եկամուտը։

Ելնելով կոլտնտեսության պայմաններից, կոլտնտեսականին լրացուցիչ վարձատրությամբ շահագրգռելու համար, յուրաքանչյուր կոլտնտեսություն կարող է սահմանել իր կանոնները և նրանցով ղեկավարվել մեկ տարի կամ ավելի ժամանակով, եթե այն վերանայելու կարիք չի առաջացել։

Առաջավոր կոլտնտեսություններում ծխախոտի բերքատվության բարձրացումը նորագույն ագրոտեխնիկական միջոցառումների կոմպլեքսի լրիվ կիրառման արդյունք է։ Որպես կանոն, առաջավոր կոլտնտեսությունները ծխախոտի մշակման տակ դնում են արգավանդ սևահողեր, կավաավազային կամ ավազակավային թեթև ստրուկտուրայով հողեր, կիրառում են ագրոտեխնիկայի բոլոր կանոնները։

Խիստ բնորոշ է, որ Շամշադինի, Իջևանի, Միկոյանի և այլ շրջանների առաջավոր շատ կոլտնտեսություններում, հիմնական բերքը հավաքելուց հետո, լրացուցիչ սնուցման և միջշարային մեկ փխրեցման շնորհիվ յուրաքանչյուր հեկտարից ստանում են երկուս ու կեսից մինչև երեք ցենտներ ծխախոտի երկրորդ բերք։ Այս կոլտնտեսությունների բոլոր բրիգադներում և օղակներում բարձր հիմքերի վրա է դրված աշխատանքային կարգապահությունը։ Բրիգադներն ու օղակները կոմպլեկտավորվել են մասնագիտացած ղեկավարներով ու անձնակազմով, վերացվել է օղակների անդամների հոսունությունը, լայնորեն կիրառվում է անհատական գործավարձը, բարձրացել է կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը։

Առաջավոր կոլտնտեսությունների, բրիգադների, օղակների և կոլտնտեսականների աշխատանքի նորագույն եղանակները լայնորեն ներդնելու և ծխախոտի մշակության կուլտուրան բարձրացնելու և աշխատատար պրոցեսները լայնորեն մեքենայացնելու շնորհիվ ռեսպուբլիկայի ծխախոտագործ բոլոր կոլտնտեսություններում հնարավոր է ամեն տարի ո՛չ միայն կատարել, այլև զգալիորեն գերակատարել ծխախոտի մթերման պլանը, որով մեծ չափով կբարձրանա կոլտնտեսությունների դրամական եկամուտը։

Ծխախոտը մեր ռեսպուբլիկայի կարևոր կուլտուրաներից մեկն է։ Այն կոլտնտեսությունների ղեկավարներից պահանջում է ավելի մեծ ուշադրություն։

---

# ՎԱՐՊԵՏԸ ԵՎ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ

Պ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Արտադրության մեջ վարպետն իր ղեկավարած տեղամասի աշխատանքի անմիջական կազմակերպիչն է։ Նա պատասխանատու է սարքավորումները լրիվ ծանրաբեռնվածությամբ օգտագործելու և արտադրական պլանը բոլոր ցուցանիշներով կատարելու համար։

Վարպետից շատ բան է կախված հատկապես այժմ, երբ հարց է դրված արտադրության մեջ ապահովել նոր տեխնիկայի հարաճուն վերելքը։ Վարպետն ամենից առաջ ինքը պետք է ուսումնասիրի, սովորի, ապա իր ենթականերին սովորեցնի նոր սարքավորումների վրա աշխատել. Նա պետք է խելացի օգտագործի նյութերը և գործիքները, ցույց տա, թե արտադրության մեջ ինչպես պետք է կիրառել առաջավոր տեխնոլոգիան։ Այս բոլորը հաշվի առնելով՝ ՍՍՌՄ Մինիստրների Սովետը 1955 թվականի սեպտեմբերին որոշում ընդունեց արդյունաբերության կարևոր ճյուղերի, ձեռնարկությունների վարպետների և տեղամասերի պետերի դերի բարձրացման և նրանց աշխատավարձի կարգավորման մասին։

Ներկայումս արտադրության մեջ նոր տեխնիկայի արագ ներդրումը կոմունիստական հասարակարգի շինարարության հիմնական խնդիրներից մեկն է։ Ուստի տեխնիկական պրոգրեսի համար պայքարը՝ պայքար է կոմունիստական հասարակարգի կառուցման համար։ Պայքարել տեխնիկական պրոգրեսի համար՝ նշանակում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում լայնորեն ներդնել արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեխանիզացիան և ավտոմատիզացիան։

Ղեկավարվելով պարտիայի Կենտրոնական Կոմիտեի 1955 թվականի Հուլիսյան պլենումի և, հատկապես, XX համագումարի ցուցումներով, Երևանի Ստալինյան շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների զգալի մասում պարտիական կազմակերպությունները լուրջ աշխատանք են տանում նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման և այդ գործում վարպետների դերի բարձրացման ուղղությամբ։

Արտադրական պրոցեսների կոնվեյերացման ուղղությամբ խոշոր աշխատանք է կատարված Հայէլեկտրո գործարանում։ Անցած մեկ ու կես տարվա ընթացքում հիմնականում կոնվեյերացված են տրանսֆորմատորների, գեներատորների հավաքման, էլեկտրասարքավորումների ներկման և ձուլման պրոցեսները։

Գործարանի ձուլման ցեխում, որտեղ կաղապարման աշխատանքների զգալի մասը կատարվում էր ձեռքով, աշխատանքների կոնվեյերացումից հետո բավականին բարձրացան աշխատանքի արտադրողականությունը և որա-

կը։ Ձուլման ցեխի մեկ քառակուսի մետր տարածությունից ստացված ձուլված-
քի քանակն արդեն հասել է նախագծված չափին՝ 5 տոննայի։

Գործարանում նոր տեխնիկայի ներդրման գործում խոշոր դեր խաղացին
ինժեներա-տեխնիկական աշխատողները, ցեխերի, տեղամասերի պետերն ու
վարպետները։ Գործարանի կոլեկտիվը ձեռնամուխ եղավ նաև հին կոնստրուկ-
ցիայի էլեկտրասարքավորումների փոխարեն ավելի կատարելագործված գեներ-
րատորների, տրանսֆորմատորների և ենթակայանների կոնստրուկցիաների
մշակմանը, նրանց իրացմանն ու մասսայական թողարկմանը։ Ներկայումս թո-
ղարկվում են մի քանի տիպի միասնական սերիայի էլեկտրասարքավորումներ՝
տեխնիկական ավելի մեծ առավելություններով, քան այն սարքավորումները,
որոնք արտադրվում էին ինչպես մեր երկրում, այնպես էլ առավել զարգացած
կապիտալիստական երկրներում։

Արտադրության կազմակերպումը է՛լ ավելի կատարելագործելու նպատա-
կով գործարանի որոշ արտադրական ցեխեր և տեղամասեր միացվեցին, խո-
շորացվեցին և արտադրության որոշ միջանկյալ օղակներ կրճատվեցին։ Դա
հնարավորություն տվեց բարձրացնել տեղամասերի պետերի և, հատկապես,
վարպետների պատասխանատվությունը, կրճատել նրանց թիվը և կարգավորել
աշխատավարձը։ Գործարանում աշխատող ավելի քան 130 վարպետի փոխա-
րեն այժմ աշխատում են 110-ը, որոնց մեծ մասն ունի միջնակարգ և բարձրա-
գույն տեխնիկական կրթություն։

Դեռևս անցած տարվանից գործարանում կազմակերպված տեխմինիմումի
խմբակում առանց արտադրությունից կտրվելու սովորել և ավարտել են ար-
տադրության ավելի քան հարյուր կրտսեր հրամանատարներ։

Ինչպես հայէլեկտրո գործարանում, այնպես էլ ուրիշ արդյունաբերական
ձեռնարկություններում, նոր տեխնիկայի ներդրմանն ակտիվ մասնակցում են
վարպետները։ Նրանցից շատերը արտադրության նորարարներ են։ Կոշիկի № 3
ֆաբրիկայի վարպետներ Կ. Դեմիրչյանը, Գ. Պետրոսյանը, Ռ. Սաֆարյանը և
ուրիշներ ո՛չ միայն օժանդակում են նոր տեխնիկայի ներդրմանը, այլև իրենց
խորհուրդներով և ռացիոնալիզատորական առաջարկություններով կատարելա-
գործում են արտադրական պրոցեսները և արագացնում արտադրության տեխ-
նիկական պրոգրեսը։

Ներկայումս ուսումնասիրվում է ֆաբրիկայի առաջավոր վարպետներ
Լ. Աճեմյանի և Լ. Դրաթյանի փորձը։ Այստեղ լավ է կազմակերպված վար-
պետների հետ կատարվող աշխատանքը։ Ֆաբրիկայում աշխատող 15 վարպետ-
ներից 11-ը ունեն միջնակարգ տեխնիկական կրթություն։ Դրանց մի մասը վե-
րաորակավորվել է հեռակա կարգով։

Վարպետների տեխնիկական գիտելիքների բարձրացման ուղղությամբ
որոշակի աշխատանք են կատարում ցեխերի պետերը և, հատկապես, ֆաբրի-
կայի գլխավոր ինժեներ ընկ. Մ. Սոնցը։

Արտադրության վարպետների համար կազմակերպված է տեխնիկական
ուսուցման խմբակ, որն ունի հատուկ ծրագիր։ Այս խմբակն ուսումնասիրում
է ինչպես իրենց ֆաբրիկայի, այնպես էլ հարևան կոշիկի ֆաբրիկաների նո-
րագույն սարքավորումները, կոշիկի արտադրության հայրենական և արտա-
սահմանյան նոր տեխնիկայի նվաճումները։ Ֆաբրիկայում վարպետների և ցե-
խերի պետերի համար հաճախակի դասախոսություններ են կազմակերպվում



տեխնիկայի և կոնկրետ էկոնոմիկայի վերաբերող թեմաների շուրջը։ Հե-
հետաքրքրական էին կոշիկի արտադրության մեջ նոր տեխնիկայի կիրառման և
արտադրության ինքնարժեքի իջեցման վերաբերյալ կազմակերպված դասա-
խոսությունները։ Ֆաբրիկայի վարպետներն ակտիվորեն մասնակցում էին շըր-
ջանի թեթև արդյունաբերության կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող մըշ-
տական գործող սեմինարի պարապմունքներին։

Լավագույն վարպետներ կան Կիրովի անվան, պոլիվինիլացետատ, ավտո-
դողերի, հաստոցաշինական, պահեստամասերի գործարաններում և շատ ուրիշ
ձեռնարկություններում, որոնք մեծ դեր են խաղում արտադրության մեջ նորի
ու առաջավորի ներդրման գործում։

Արտադրության մեջ վարպետների դերը բարձրացնելու, տեխնիկական
պրոգրեսն արմատավորելու և աշխատանքի կազմակերպումը բարելավելու
շնորհիվ շրջանի արդյունաբերական արտադրանքը (առանց որևէ նոր ձեռնար-
կությունների և արտադրական նոր ցեխերի ավելացման) տարեցտարի բարձ-
րանում է։ Այսպես՝ 1956 թվականին շրջանի արդյունաբերության համախառն
արտադրանքի աճը, համեմատած 1955 թվականի հետ, կազմել է 14,2 տոկոս,
իսկ այս տարվա առաջին կիսամյակում, անցած 1956 թվականի համապա-
տասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է 12,4 տոկոսով։ Ար-
տադրության այսպիսի աճը տեղի է ունենում բացառապես աշխատանքի ար-
տադրողականության բարձրացման հաշվին։ Աշխատանքի արտադրողականու-
թյան բարձրացման գործում խոշոր դեր է խաղում գյուտարարական ու ռա-
ցիոնալիզատորական շարժումը, որի մեջ իրենց արժանի տեղն են գրավում
արտադրության վարպետները։ Եթե անցած ամբողջ տարվա ընթացքում շրջանի
արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները տվել էին ընդամենը
3600 ռացիոնալիզատորական առաջարկություն, ապա այս տարվա միայն
առաջին կիսամյակում ձեռնարկությունների ռացիոնալիզատորական և գյու-
տարարական բյուրոները ստացել են ավելի քան երկու հազար առաջարկու-
թյուն, որոնց զգալի մասի ներդրումից ստացվել է խոշոր տնտեսում։

Սակայն պետք է նշել, որ շրջանի առանձին ձեռնարկություններում վար-
պետները դրեթե չեն մասնակցում ամբողջ ձեռնարկության կամ առանձին ցե-
խերի տեխնիկական-կազմակերպական միջոցառումների մշակմանը, անտես-
վում է նրանց կարծիքը։ Ցեխերի և ձեռնարկությունների առանձին ղեկավար-
ներ տեխնիկական պրոգրեսն ապահովելու գործում թերագնահատում են վար-
պետի դերը։ Մինչև հիմա էլ արտադրության առանձին ղեկավարների մոտ ան-
վստահություն է նկատվում արտադրության կրտսեր հրամանատարների ստեղ-
ծագործական մտքի նկատմամբ. առանձին դեպքերում էլ վարպետներին օգ-
տագործում են որպես սոսկ հանձնարարություններ կատարողներ, դրասենյա-
կային աշխատողներ կամ շարքային բանվորներ։

Արտադրության վարպետների դերի և պատասխանատվության բարձրաց-
ման մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշման մեջ ասված է, որ վար-
պետները պետք է լինեն ո՛չ միայն ռացիոնալիզատորներ, այլև պայմաններ
ստեղծեն իրենց ղեկավարած կոլեկտիվներում նորարարությունը զարգացնելու
համար, հետևեն, որ բանվորների ռացիոնալիզատորական առաջարկություն-
ները ժամանակին ներդրվեն։ Սակայն այս ուղղությամբ բավարար աշխատանք
չի կատարվում. շատ տեղերում նույնիսկ իրենք՝ վարպետները, ռացիոնալիզա-
ցիայով չեն զբաղվում։ Փոքր հիդրոտուրբինների, կոմպրեսորների գործարան-

ների, կոշիկի № 1 ֆաբրիկայի վարպետները ընթացիկ տարվա առաջին կիսամյակում չեն ներկայացրել ոչ մի ռացիոնալիզատորական առաջարկություն։

Որպեսզի արտադրության վարպետն իսկապես ապահովի տեխնիկական պրոգրեսը, իր անձնական օրինակով անհրաժեշտ պայքար մղի նորի համար, նա պետք է ունենա տեխնիկական համապատասխան որակավորում։ Առաջներում վարպետ լինելու համար անհրաժեշտ էր արտադրության երկար տարիների փորձ։ Սակայն միայն փորձը չի կարող բավարարել գիտության և տեխնիկայի այժմյան պահանջները, երբ արդյունաբերական ձեռնարկություններում տեխնիկան անընդհատ զարգանում է։ Այսպես, եթե Երևանի հաստոցաշինական գործարանում մինչև անցած տարի արտադրում էին միայն 1934—1935 թվականների կոնստրուկցիայի հաստոց, ապա անցած տարվանից սկսվել է նոր, կատարելագործված ունիվերսալ 1—Լ—61 տիպի ավելի բարդ հաստոցի մասսայական թողարկումը։

Ավտոպահեստամասերի գործարանում տարիներ շարունակ արտադրվում էին միայն որոշակի մարկայի ավտոմեքենաների և տրակտորների մասեր, այնինչ ներկայումս այդ արտադրանքի անվանացանկը բազմազան է դարձել, գործարանը հարստացել է բոլորովին նոր, տարբեր տեսակի հաստոցներով։ Արդեն երկրորդ տարին է, որ կոմպրեսորների գործարանը հնացած տիպի կոմպրեսորներ չի արտադրում. գործարանը յուրացրել է 4—5 կատարելագործված նոր կոնստրուկցիայի կոմպրեսորների և պոմպերի արտադրությունը։

Կատարելագործված նոր տեխնիկա է ներդրվել նաև բրդյա նուրբ մահուդի կոմբինատում և շատ ուրիշ ձեռնարկություններում։ Նոր տեխնիկական սարքավորումների յուրացման և աշխատանքը նոր ձևով կազմակերպելու համար պահանջվում են որակավորված կրտսեր հրամանատարական կադրեր։ Պետք է հաշվի առնել նաև այն, որ այժմ արտադրության մեջ աշխատող բանվորն այն չէ, ինչ սրանից 10—20 տարի առաջ էր. նա և՛ կուլտուրապես, և՛ քաղաքականապես, և՛ տեխնիկապես զարգացել է, ուստի վարպետի նախկին մակարդակն արդեն չի բավարարում այսօրվա զարգացած բանվորների ղեկավարման պահանջներին։

Պատահական չէ, որ ՍՍՌՄ Մինիստրների Սովետն անհրաժեշտ համարեց բարձրացնել արտադրության վարպետների որակավորումը. նա գերատեսչական տնտեսական օրգաններին, ձեռնարկությունների ղեկավարներին պարտավորեցրեց հեռակա և երեկոյան բարձրագույն ուսումնական հաստատություններում կազմակերպել պրակտիկ վարպետների 2—3 տարվա տեխնիկական ուսուցում, որից հետո նրանց տալ տեխնիկի կոչում։

Բարձր որակավորում ունեցող բանվորներից որպես վարպետներ առաջ քաշված ընկերների համար անհրաժեշտ է կազմակերպել տեխնիկական մինիմումի հատուկ դասընթացներ։ Այդ դասընթացները հաջող ավարտելուց հետո միայն վերաորակավորող հանձնաժողովից նրանք կարող են ստանալ վարպետի կոչման վկայական։

Առանձին ձեռնարկություններում շատ վարպետներ պրակտիկներ են և այս կամ այն պատճառով տեխնիկական կրթություն ստանալ չեն կարողացել։ Նրանց երկարատև աշխատանքի փորձը պետք է լրացնել տեխնիկական գիտելիքներով։ Եվ, որպեսզի վարպետները բարձրացնեն իրենց տեխնիկական գիտելիքները, ամենից առաջ անհրաժեշտ է հենց իրենց՝ վարպետների ցանկությունը։ Բայց, դժբախտաբար, առանձին վարպետներ թերանում են ուսման մեջ։



Օրինակ՝ կաբելի, հաստոցաշինական, կոմպրեսորների գործարաններում, մահուդի, կոշիկի ֆաբրիկաներում և այլ ձեռնարկություններում կան վարպետներ, որոնք դեռևս 1949—50 թվականներին ավարտել են միջնակարգ տեխնիկական ուսումնական հաստատությունները, բայց դրանից հետո չեն հեռակայում բարձրագույն տեխնիկական ուսումնական հաստատություններում։ Երևանի բրդյա նուրբ մահուդի կոմբինատում աշխատող 36 վարպետներից, ավագ վարպետներից և ենթավարպետներից միջնակարգ կրթություն ունեն 11 հոգի, իսկ բուհերում հեռակայում են ընդամենը 4 հոգի։ Ձերժինսկու անվան գործարանի 38 վարպետներից ուսումնական հաստատություններում սովորում են միայն 5-ը։ Կաշվի գործարանում աշխատող միջնակարգ կրթությամբ 8 վարպետներից հեռակայում է մեկը։

Անհրաժեշտ է, որ ձեռնարկությունների պարտիական, պրոֆմիութենական կազմակերպությունները և տնտեսական ու տեխնիկական ղեկավարները բոլոր հնարավոր պայմաններն ստեղծեն վարպետների ուսուցման համար և կարճ ժամանակամիջոցում վերացնեն այդ գործում եղած թերությունները։

Ստալինյան շրջանի թեթև արդյունաբերության ձեռնարկությունների վարպետների խորհրդակցությունում կոշիկի № 1 ֆաբրիկայի վարպետները խիստ բողոքում էին ֆաբրիկայի ղեկավարությունից, որն իրենց հետ գրեթե ոչ մի աշխատանք չի տանում։ Ֆաբրիկայում աշխատող 28 վարպետներից միայն 9-ը ունեն միջնակարգ տեխնիկական կրթություն, և դրանցից ոչ մեկը չի հեռակայում բուհերում։ 1956 թվականին վարպետների համար կազմակերպված դասընթացները, որոնց մասնակցում էին 22 հոգի, փաստորեն արդյունք չտվեցին, որի հետևանքով էլ ատեստացիոն հանձնաժողովը 16 հոգու զրկեց վարպետի կոչումից։ Դիրեկցիան որոշել էր այդ ընկերներին ժամանակ տալ, որ ինքֆաբրիկայի տեխնիկական բաժնի և գլխավոր ինժեների հսկողությամբ նույնություն կերպով պարապեն և քննությունները հանձնեն։ Սակայն ֆաբրիկայի գլխավոր ինժեներ ընկ. Հ. Կարապետյանը այդ գործում անհոգի վերաբերմունք ցուցաբերեց և մինչև հիմա էլ վարպետների ուսուցումը մնացել է թերի։

Վարպետների հետ տարվող անբավարար աշխատանքը բացասաբար է անդրադարձել կոշիկի № 1 ֆաբրիկայի արտադրանքի որակի և աշխատանքային կարգապահության վրա։ Այս ֆաբրիկայում չի ներդրվում հարևան, կոշիկի № 3 ֆաբրիկայի վերջերս մշակած տեխնոլոգիայի առաջավոր փորձը, որն արդեն կիրառվում է Մոսկվայի և մի քանի ուրիշ կոշիկի ֆաբրիկաներում։ Այս բոլորից հետո պատահական չէ, որ 1957 թվականի առաջին ամիսներին ֆաբրիկան առևտրական կազմակերպություններից գանգատներ է ստացել ցածրորակ արտադրանքի մասին։

Ձնայած կոշիկի № 1 ֆաբրիկայի պարտիական կազմակերպությունը քննարկել է վարպետների հետ տարվող աշխատանքի վիճակը և արձանագրել մի շարք աղաղակող թերություններ, այնուամենայնիվ գործը տեղից չի շարժվում։

Արդյունաբերական ձեռնարկություններում աշխատող վարպետների մեծ մասը կտրված է տեխնիկական գրականությունից, չի ծանոթանում տեխնիկական հայրենական և արտասահմանյան ինֆորմացիաներին, չի հետաքրքրվում հայրենական և արտասահմանյան ձեռնարկությունների նոր տեխնիկայի նվաճումներով։ Դա, գլխավորապես, բացատրվում է նրանով, որ ձեռնարկության ղեկավարները տեխնիկական ինֆորմացիայի հարցով վատ են զբաղվում։ Մինչդեռ նրանք պարտա-

վոր են գործոն միջոցների դիմել, որպեսզի ամեն մի վարպետ ստանա հասկանալի, գործարար տեխնիկական ինֆորմացիա։ Նորմալ երևույթ չէ, երբ Երևանի մահուդի ֆաբրիկայի, կաբելի, փոքր հիդրոտուրբինների գործարանների, կոշիկի № 1 ֆաբրիկայի և մի շարք այլ ձեռնարկությունների վարպետների մի մասը տեղյակ չէ ո՛չ միայն արտասահմանյան, այլև հայրենական տեխնիկայի նորագույն նվաճումներին։

Առաջավոր փորձի փոխանակման նպատակով կամ արտադրական գործուղումներով հարևան ռեսպուբլիկաների համապատասխան ձեռնարկություններն են մեկնում ինժեներներ, վարպետներ և բանվորներ։ Այնտեղ նրանք տեսնում են շատ նորություններ, արտադրական պրոցեսների կատարելագործված ձևեր ու մեթոդներ, սակայն նրանց վերադարձից հետո այդ ամենը չի ամփոփվում և չի մասսայականացվում արտադրության աշխատողների շրջանում։

Առանձին արդյունաբերական ձեռնարկություններում մոռանում են, որ վարպետը արտադրության անմիջական կազմակերպիչն է և տեխնիկական պրոգրեսի ապահովողը. իսկ տեխնիկական պրոգրեսը ինքնանպատակ չէ. այն պետք է նպաստի արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը և որակի բարձրացմանը, ձեռնարկության տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավմանը։ Ուստի վարպետը պետք է լավ պատկերացնի, թե ինչպիսի միջոցներով կարելի է հասնել դրան, որպեսզի իր ղեկավարած տեղամասում պայքար կազմակերպի այդ ուղղությամբ։ Վարպետը կարող է այդ կատարել միայն այն դեպքում, երբ սիստեմատիկաբար բարձրացնի իր մասնագիտական ու տնտեսագիտական մակարդակը։ Սակայն հայէլեկտրո, պահեստամասերի, կաբելի և այլ գործարանների ղեկավարները այդ բանի վրա հարկ եղած ուշադրություն չեն դարձնում, որի հետևանքով էլ վարպետներից միայն մի քանի հոգի են մասնակցում արտադրության կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակների պարապմունքներին։

Ձեռնարկություններում պետք է ամենուրեք բարձրացնել արտադրության ներքին օղակների ղեկավարների՝ վարպետների դերը և պատասխանատվությունը։ Այդ բանին հասնելու համար ՀԿՊ Ստալինյան շրջանային կոմիտեն և սկզբնական պարտկազմակերպությունները պետք է բարելավեն արտադրության վարպետների հետ տարվող աշխատանքը և նրանց ուժերը լրիվ ի սպաս դնեն շրջանի արդյունաբերության առջև դրված խնդիրների լուծմանը։

---

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԵՐԿԵՐԻ ՀԱՅԵՐԵՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Հ. ԹՈՒՐՇՅԱՆ

Պրոլետարական ռևոլյուցիայի մեծաքանքար առաջնորդ Վ. Ի. Լենինի Երկերի ժողովածուի հայերեն թարգմանությունը մեծագույն քննություն եղավ հայոց լեզվի և հայ թարգմանիչների ու խմբագիրների համար։ Հրապարակի վրա է մեծ մտածողի և ռևոլյուցիոն մեծ գործչի Երկերի 35 հատորների թարգմանությունը, որը կատարված է ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի խմբագրական հսկողությամբ։

***

Այսօր ունենք դարավոր ու մեծահարուստ գրաբարի վրա խարսխված, բազմաթիվ գավառաբարբառների կենսահյութերով կենդանացած, ճոխացած ու ընդհանրացված մի հզոր լեզու, որով հաջողությամբ կարող ենք արտահայտել ամեն բարդ ու նոր միտք, թարգմանել գիտության ու տեխնիկայի, արվեստի ու փիլիսոփայության ուզածդ ամենադժվարին երկը։ Ահա այս լեզուն հաջողությամբ բռնեց Լենինի Երկերի թարգմանության դժվարին գործի մեծ քննությունը։

Վ. Ի. Լենինի Երկերի թարգմանության ժամանակ հայոց լեզուն բառապաշարի հարցում ոչ մի դժվարություն չկրեց։ Սովետական իշխանության առաջին տասնամյակում ստեղծված կամ ընդհանրացած նոր բառաձևերը (հայտ, հաշհայց, հայցվոր, հաստոց, հաստոցավոր, հաշվառք, հաշվարկ, հաշվարկային, տնտհաշվարկ, զուգերթ, շքերթ, երթ, վիճարկել, տողանց, ելույթ, շահույթ, կացույթ, կացութաձև, ասույթ, դրույթ, դրույք և այլն) օգտագործվեցին թարգմանության ժամանակ։ Ավելին. Թարգմանական տեսակետից դժվարին երկերի թարգմանության ժամանակ օգտագործվեցին ինչպես միջազգայնության իրավունք ստացած բազմաթիվ նոր օտար բառեր, այնպես էլ գրաբարի հարստությունների ու հնարավորությունների ճիշտ օգտագործմամբ կազմվեցին հայերեն շատ նոր բառեր։

Միջազգայնության իրավունք ստացած օտար բառերի գործածության օգտին կամ դեմ՝ մեր գրականության մեջ տարբեր կարծիքներ են եղել աշխարհաբարի կազմավորման ու հաղթանակի հենց առաջին տարիներից։ Մ. Նալբանդյանից սկսած մինչև այսօր մեր լեզուն շարունակ իր ընդվզումներն է ունեցել օտար բառերի գործածության դեմ, սակայն օտար բառերը միշտ էլ վերջիվերջո մուտք են գործել մեր լեզվի մեջ։ Օրինակ, 1917 թվականին մեր մամուլը գրում էր փոքրամասնական, մեծամասնական, դրամագլուխ, նվաճողականություն կամ աշխարհակալություն, ռամկավարություն, ընկերավարականություն և այլն։ Միաժամանակ, սկզբում հազվադեպ, սկսեցին երևալ մենշևիկ, բոլշևիկ, կապիտալ, իմպերիալիզմ, դեմոկրատիա, սոցիալիզմ և այլ բառեր, որոնք այնուհետև հաղթեցին առանց որևէ վերադաս օրգանի որոշման։ Նալբանդյանից մինչև այսօր նկատված է նաև, որ դարավոր հայոց լեզուն չի հաշտվում, երբ առանձին ազդեցիկ հեղինակ կամ վերադաս օրգան նրան պարտադրում են օտար բառերի երբեմն անհարկի գործածությունը։ Այս հարցում ընդհանուր օրենքը, որը կարելի է արտաբերել մեր լեզվի զարգացման ընթացքից, այն է, որ հայերենն աստիճանաբար հաշտվում է առօրյա կյանքի մտցրած օտար բառերի ու նույնիսկ ձևերի գործածության հետ։

Վ. Ի. Լենինի Երկերի թարգմանության ժամանակ օտար բառերի գործածությունը, բացի մի ութ-տասը բառից, թողնված է կյանքի առօրյա էվոլյուցիային։ Հատորների մեջ մեծ մասամբ պահպանված է օտար և հայերեն բառերի համատեղ գործածության առողջ պրակտիկան։ Այնտեղ դուք կգտնեք, և այն էլ ոչ միայն տարբեր հատորներում, այլև միևնույն հատորում, թե՛ գործնականություն և թե՛ պրակտիցիզմ, թե՛ տեսություն և թե՛ թեորիա, թե՛ ճգնաժամ և թե՛ կրիզիս, թե՛ գաղափար և թե՛ իդեա։

Երբ երեսնական թվականներին ձեռնարկվեց

թյանը՝ մարքսիզմը գտնում է, որ իդեաները, գիտակցության ձևերը հասարակության նյութական պայմանների սոսկ արդյունքը, հետևանքը չեն, այլ ծնունդ առնելով՝ ակտիվ կերպով ներգործում են հասարակության զարգացման վրա. հենց այստեղ է, որ ի հայտ է գալիս իդեաների ու թեորիաների դերի հարցը հասարակական կյանքում, որը և հեղինակն իր աշխատության առանցքն է դարձրել։

Հասարակական կյանքում իդեաների ու թեորիաների ունեցած դերին ինքնուրույն նշանակություն տալը ոչ մի ընդհանրություն չունի իդեալիստների կողմից նրանց բացարձակ նշանակություն, բացարձակ ինքնուրույնություն տալու հարցի հետ։ «Իդեալիստական տեսակետը,— ինչպես գրում է հեղինակը,— փակում է գիտական հետազոտության ճանապարհը, իսկական ճշմարտությունը որոնելու և հայտաբերելու ճանապարհը»։ Մարքսիզմը իդեաների ու թեորիաների ինքնուրույնությունը հարաբերական իմաստով է ըմբռնում։ Բացարձակությունը բացառում է նրանց կախումը որևէ այլ երևույթից, իսկ հարաբերականությունը ենթադրում է ինչպես նրանց ծնունդը նյութական կյանքից, այնպես էլ հետադարձ ազդելու նրանց կարողությունը նյութական կյանքի վրա։

Գրքույկում ցույց է տրված, որ եթե իդեաներն ու թեորիաները պայմանավորված են հասարակության նյութական կյանքի պայմաններով, ապա միևնույն էպոխայում հասարակական տարբեր խավերի տարբեր նյութական դրությունը պետք է պայմանավորվի համապատասխան հայացքների ու տեսական ըմբռնումների գոյությամբ։ Այսպես, բուրժուական հասարակարգի հիմնական դասակարգերը՝ բուրժուազիան և պրոլետարիատը, տվյալ հասարակարգի էկոնոմիկայում գրավում են տրամագծորեն հակադիր տեղեր. առաջինը արտադրության միջոցների սեփականատերն է, իսկ երկրորդը զուրկ է սեփականությունից, այդ պատճառով էլ ստիպված է իր աշխատուժը վաճառել սեփականատիրոջը՝ իբրև ապրանք։ Պրոլետարիատը դժգոհ է իր վիճակից, իրերի դրության արմատական փոփոխության պահանջն է դնում, իսկ բուրժուազիան շահագրգռված է իր համար բարենպաստ տվյալ պայմանների հարատևությամբ։ Այդ երկու դասակարգերի էկոնոմիկայում ունեցած հակադիր դրությունը պայմանավորում է նրանց հակադիր աշխարհայեցողությունը։ Ստացվում է, որ իդեական պայքարը ոչ այլ ինչ է, քան տնտեսականի մտածական արտացոլումը։ Իսկ քանի որ հիշատակված հայացքների սիստեմներից մեկը ձգտում է հավերժացնել այդ տնտեսակարգը, իսկ մյուսը պայքարում է հանուն նոր տնտեսակարգի, ապա իդեաներն ու թեորիաները լինում են երկու կարգի՝ ռեակցիոն իդեաներ ու թեորիաներ, որոնք արգելակում են հասարակության զարգացումը, և առաջավոր իդեաներ ու թեորիաներ, որոնք նպաստում են հասարակության վերընթաց զարգացմանը։ Հին ու նոր իդեաների միջև մղվող պայքարը այնքան սուր է, որքան արմատական են դրանք ներկայացնող դասակարգերի տնտեսական շահերի հակադրությունները։

Առաջադեմ ու հետադեմ իդեաների պայքարը ցուցադրելու համար հեղինակն իր գրքույկում քննարկել է XVIII դարի ֆրանսիական մատերիալիզմի և XIX դարի ռուսական կլասիկ մատերիալիզմի պայքարը ժամանակի ռեակցիոն իդեալիստների դեմ։ Նա մի քանի դիպուկ օրինակներով բնութագրում է ֆրանսիական մատերիալիստների հայացքները կրոնի, բարոյականության, հասարակական կյանքի, մարդկային ճանաչողության վերաբերյալ։ Անցնելով ռուս ռևոլյուցիոն-դեմոկրատներին՝ հեղինակը նկատում է. «...մեծ դեպքերի նախապատրաստումն է, որ իրոք, սրում է միտքը, բովանդակություն տալիս մտածողների, գործիչների հոգևոր կյանքի բոլոր կողմերին» (էջ 155)։ Նման իրադրությունների ծնունդ էին՝ Բելինսկին, Գերցենը, Չերնիշևսկին, Դոբրոլյուբովը և ուրիշներ։ Ռևոլյուցիոն-դեմոկրատների հայացքների բնորոշող կողմն է՝ բացասման մեծ կիրքը այն ամենի նկատմամբ, ինչ դադարել է անհրաժեշտություն լինելուց, ինչ արգելակում է հասարակության առաջընթացը։

Այստեղ չի կարելի անտեսել մի կարևոր փաստ. մեր փիլիսոփայական գրականության մեջ բավականին հարգի է եղել այն տենդենցը, թե իբր ռուսական առաջավոր միտքը հիմնականում ուղղված է եղել Եվրոպայում տարածված ռեակցիոն ուսմունքների դեմ։ Այդ ոչ ճիշտ մոտեցումը հաղթահարելու նպատակով Գ. Վարդապետյանը պետք է շատ ավելի ընդգծեր ռուսական կյանքում ներքին գաղափարական պայքարի փաստը։ Ռևոլյուցիոն-դեմոկրատները ռուսական կյանքի ծնունդ են, նրանք խորապես ռուսական կյանքով են ապրել, Ռուսաստանի առաջընթացի իդեան փայփայել և անկեղծորեն ատել ու քննադատել այն ամենը, ինչ արգելակում էր նրա առաջընթացը։ Այդ պատճառով նրանց քննադատության սուր ծայրը նախ և առաջ պետք է ուղղված լիներ ռուսական ռեակցիոն իդեոլոգիայի դեմ, իսկ եվրոպական իդեալիստական սիստեմները միայն այնքանով կարող էին անհանգստացնել նրանց, որքանով վերջիններս թեորիական աղբյուր էին ծառայում Ռուսաստանում ռեակցիոն հոսանքների համար, որքանով խոչընդոտ էին հանդիսանում ընդհանրապես մարդկության առաջընթացին։



Գրախոսվող աշխատության հաջող մասերից է իդեաների, թեորիաների սոցիալ-դասակարգային էության վերլուծությունը։ Քննադատելով իդեալիստական այն տեսակետը, ըստ որի որևէ թեորիայի լայն տարածումը պայմանավորված է նրա գեղեցիկ ու հրապուրիչ լինելու հանգամանքով, հեղինակը ցույց է տալիս, որ միայն պատմության մատերիալիստական ըմբռնումով կարելի է պատասխանել այն հարցին, «թե ի՞նչն է մարդուն դարձնում բուրժուական, մանր բուրժուական կամ պրոլետարական մտածող, գաղափարախոս» (էջ 21)։ Մանր բուրժուազիայի նյութական դրության անհաստատունությունը, գրում է հեղինակը, մանր բուրժուազիայի իդեոլոգներին դարձնում է հարմարվող, նրանց մեջ առաջացնում է երկու աթոռների միջև մի կերպ տեղավորվելու ցանկություն, իսկ խոշոր բուրժուազիայի տնտեսական վիճակը որոշակի կմախք է տալիս խոշոր բուրժուազիայի աշխարհայեցողությանը։ Պրոլետարիատը, իր հերթին, համապատասխան իր տնտեսական վիճակի, անհրաժեշտորեն մղվում է դեպի սոցիալիստական գիտակցությունը։ Իր այդ դրության շնորհիվ պրոլետարիատը բոլոր ճնշվող հասարակական խավերի մեջ ամենից զգայունն է սոցիալիստական թեորիայի նկատմամբ և ամենից հեշտ ու կայուն ձևով է յուրացնում այն։ «Այսպիսի մտքերի դեմ,— գրում է հեղինակը,— իդեալիստը առաջադրում է մի ընդհանուր փաստարկ։ Ո՞ւր է մնում գործչի, մտածողի ամբողջ անհատականությունը։ Հենց բանն այն է, որ սոցիալ-հասարակական բովանդակությունը հանդես է գալիս որպես գիտակցության միջուկը՝ իրար չնմանվող ընդունակություններով և այլ հանգամանքներով իրար բոլորովին չծածկող կենդանի անհատների ընկալող ապարատների միջոցով» (էջ 24)։ Իդեալիստի համար անհատականության գաղափարը ժխտում է որևէ օբյեկտիվ պայմանի գոյությունը, իսկ մարքսիստի համար ամեն մի գիտակցություն միայն կյանքի գիտակցություն է։ Այդ պատճառով ամենաաբստրակտ թեորիաներն ու իդեաներն անգամ ելնում են իրականությունից և ծառայում նրան, բայց քանի որ իրականությունը երկճեղքված է, քանի որ գոյություն ունեն հասարակական տարբեր խավեր ու տարբեր դասակարգեր, ապա յուրաքանչյուր թեորիա, վերջին հաշվով, որևէ դասակարգի կամ հասարակական որևէ խավի մոտեցումն է իրականությանը, կյանքի արտացոլումն է տվյալ դասակարգի, տվյալ խավի տեսանկյունից։

Ապադասակարգային, անպարտիական իդեոլոգիա չկա և երբեք չի եղել։ Ահա թե ինչու է հեղինակը իրավացիորեն գրում, թե «պարտիականությունը քողարկելու ձգտումը նույնպես բխում է պարտիական շահերից» (էջ 31)։ Իր պարտիական դեմքը սովորաբար ծածկում է հասարակական այն խավը, որի շահերը հակասության մեջ են գտնվում աշխատավոր մեծամասնության շահերի, կյանքի զարգացման, առաջընթացի հետ, մինչդեռ պրոլետարիատն անկեղծ է իր դասակարգային գիծն անցկացնելու մեջ, որովհետև այն համապատասխանում է աշխատավորության շահերին, կյանքի առաջընթացին։ Պրոլետարիատի շահերը համընկնում են իրերի օբյեկտիվ տրամաբանության հետ։ Հետևապես, գաղափարական պայքարում ես պրոլետարիատի սկզբունքներն ավելի զորեղ ու հետևողական են, քան բուրժուազիայինը։ Դա է պատճառը, որ «բուրժուազիան և նրա «գիտնական» ներկայացուցիչներն առանց իդեոլոգիական ծխապատնեշի չեն կարող գործել և ապրել» (էջ 33)։

Գրքույկում քննադատության են ենթարկված տարերայնության «թեորիան», ֆատալիզմը, որոնք կոչված են թուլացնելու բանվոր դասակարգի կամքը, գործնական եռանդը, ռևոլյուցիոն նպատակասլացությունը. այնտեղ միաժամանակ համոզիչ փաստարկումներով մերժվում է նաև աջ սոցիալիստական «շոշափելի օգուտի» պահանջը, որի նպատակը, ըստ էության, բանվոր դասակարգի ռևոլյուցիոն զգոնության բթացումն է, նրա ուշադրության շեղումը վերջնական նպատակից՝ դեպի «այսօրվա բերածը»։ Նման պահանջը բանվոր դասակարգին միլիոնատերերի փշրանքներով կերակրելու պահանջ է, սոցիալիզմից հրաժարվելու պահանջ։

Բուրժուական ու մարքսիստական իդեաների բնույթի վերլուծությամբ գրքույկում ցույց է տրված, որ մարքսիզմի կենսունակությունը իրականության, կենդանի կյանքի հետ ունեցած նրա սերտ կապի մեջ է։ Քարացած մտքերն ու իդեաները ենթակա չեն ծավալման ու ծաղկման։ Միտքը սուր ու ճկուն է ոչ թե իր ներքին էներգիայի շնորհիվ, այլ իրականությանը հարազատ լինելու, իրականության դինամիկան արտացոլելու շնորհիվ։ Մարքսիստական իդեաները բնորոշվում են նաև իրենց ռևոլյուցիոն բովանդակությամբ. եթե բուրժուական իդեոլոգները գտնում են, թե «ռևոլյուցիոն ժամանակաշրջաններում իդեաներն ու բանականությունը խամրում են, և կտրվում ընկնում են միտքն առաջ մղող բոլոր լծակները» (էջ 172), ապա մարքսիզմի համար ռևոլյուցիոն հեղաշրջումները հասարակական կյանքում՝ շրջադարձեր, թռիչքներ են նշանակում նաև գաղափարական աշխարհում։ Կյանքը ապացուցում է մարքսիզմի

ճշմարտությունը և այդ է պատճառը, որ օրեցօր ստվարանում են նրա հետևորդների շարքերը։

Գրքույկի արժանիքներից պետք է համարել նաև այն, որ քննարկվող պրոբլեմների մարքսիստական շարադրանքը զուգակցվում է հակառակորդ գաղափարախոսության քննադատության հետ։

Մեր պայմաններում գաղափարական պայքարը հատուկ նշանակություն է ստանում։ Այժմ, երբ ամենուր փլուզվում են կապիտալիզմի հիմքերը, բուրժուական լագերում ծնունդ են առնում «նոր» ու «նորագույն» թեորիաներ։ Անկարող լինելով կռվել մատերիալիզմի դեմ, բուրժուական իդեալիստական փիլիսոփայությունը պսևդոպրոբլեմ է հայտարարում փիլիսոփայության հիմնական հարցը, հնացած է համարում փիլիսոփայության մեջ երկու հիմնական ուղղությունների գոյության ընդունումը։ Սարսափելով մարքսիզմի իդեաների լայն տարածումից՝ բուրժուազիան ուժեղացնում է գաղափարական պայքարը։ Օգտագործելով բոլոր հին ու նոր միջոցները՝ «արևմտյան դեմոկրատիայի» իդեոլոգները երկու սիստեմների միջև գոյություն ունեցող ժամանակակից պայքարը համարում են պայքար հանուն մարդկանց մտածողության։ Նման պայմաններում բուրժուական իդեոլոգիայի քննադատությունը հիմնական օբյեկտ պետք է ընտրի նրա ժամանակակից ձևերը։

Ընկ. Վարդապետյանի աշխատության մեջ իրեն զգացնել է տալիս մեր փիլիսոփայական գրականության մեջ որոշ սահմաններում տարածված այն տենդենցը, որ քննադատվում են ոչ այնքան մարքսիզմի ժամանակակից թշնամիները, ոչ այնքան արդի բուրժուական փիլիսոփայական հոսանքները, որքան բուրժուական փիլիսոփայության հին դպրոցները։ Ճիշտ է, բուրժուական «հին» ու «նոր» թեորիաների տարբերությունները չնչին ու երկրորդական են և, ըստ էության, վերաբերում են ոչ թե բովանդակությանը, այլ ձևին։ Բայց որքանով որ բուրժուազիան այժմ մարքսիզմին հակադրում է այդ ձևերը, անհրաժեշտ էր գրքույկում քննադատել հատկապես դրանք և ոչ թե ծանրանալ միայն վաղուց մերկացված ու պատմության սեփականությունը դարձած թեորիաների վրա։

Աշխատության ուշագրավ մասերից է մեր երկրում բանվորների, գյուղացիության ու ինտելիգենցիայի գիտակցության մեջ տեղի ունեցած տեղաշարժերի վերլուծությունը՝ կապված արտադրության մեջ իրականացված ռևոլյուցիայի հետ։ Այս բնագավառում հեղինակը ուշադրության է արժանացնում միայն մեր նվաճումները՝ իբրև տնտեսակարգում տեղի ունեցած փոփոխության արդյունք։ Գրքույկը կշահեր, եթե այդ նվաճումները մեկուսացված չտրվեին մարդկանց գիտակցության մեջ դեռևս մնացած բուրժուական վերապրուկների քննադատությունից։

Գրքույկն ընթերցող լայն մասսաներին մատչելի դարձնելու նպատակով (իսկ այն կարող է այդպիսին լինել պատկերավոր ու հարուստ լեզվի, պարզ վերլուծությունների և կենդանի դատողությունների շնորհիվ) ցանկալի էր, որ նրանում հիշատակված, հազիվ թե լայն շրջաններին ծանոթ որոշ մտածողների (օրինակ՝ Կոնդիլյակի, Տյուրգոյի, Շտարկեի և այլոց) մասին ծանոթագրության կարգով որոշ բան ասվեր։

Գրքույկում տեղ են գտել սրբագրական և լեզվական կարգի մի շարք վրիպումներ։ Այսպես, օրինակ, մի տեղ «արտադրողական ուժեր»-ի փոխարեն տպագրված է՝ «արտադրողականության ուժեր» (էջ 31), մի այլ տեղ. 1937 թ. փոխարեն՝ 1933 թ. (էջ 70), որը կարող է թյուրիմացությունների տեղիք տալ և այլն։

Հ. ՇԱՔԱՐՅԱՆ



## ԼԱՎ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԵՐԸ

ՍՄԿԿ XX համագումարը բժշկական աշխատողների առջև խնդիր է դրել՝ արմատապես բարելավել և ավելի զարգացնել ժողովրդական առողջապահության գործը, վճռականորեն բարձրացնել բժշկական ու սանիտարական հիմնարկների աշխատանքի կուլտուրան։ Այդ համապետական կարևորագույն խնդիրների հաջող կենսագործման բնագավառում, անկասկած, մեծ են Հայկական ՍՍՌ Առողջապահության մինիստրության օրգանի՝ գիտա-պրակտիկ, մեթոդական-կազմակերպական «Առողջապահություն» ամսագրի անելիքները. այն կոչված է մոբիլիզացնելու ռեսպուբլիկայի առողջապահության բնագավառի աշխատողներին, գիտության գործիչներին՝ պրակտիկայում արմատավորելու սովետական և արտասահմանյան բժշկական գիտության նվաճումները, գործուն օգնություն ցույց տալու առողջապահական օրգաններին, հաջողությամբ կազմակերպելու աշխատավորների բուժական-պրոֆիլակտիկ սպասարկումը, լայնորեն պրոպագանդելու բուժական և սանիտարական աշխատանքի լավագույն մեթոդները, բուժման առաջավոր միջոցները։

Իր գոյության ավելի քան մեկ տարվա ընթացքում «Առողջապահություն» ամսագիրը դարձել է Հայաստանի բժշկական աշխատողների և ընթերցողների խորհրդատուն, մտերիմ բարեկամը և օգնականը։ Այդ են վկայում կարճ ժամանակաշրջանում նրա շուրջը համախմբված հեղինակային լայն ակտիվը և ընթերցողների շրջանում ստեղծված հետաքրքրությունը։ Ամսագրի էջերը տրամադրվում են գիտության անվանի գործիչներին, գործիմաց, առաջավոր պրակտիկ բժիշկներին և միջին բժշկական աշխատողներին։ Նրա յուրաքանչյուր համարում առողջապահության բնագավառի գիտական և պրակտիկ աշխատողները կարող են իրենց համար գտնել հետաքրքրական և բովանդակալից շատ հոդվածներ, կոնսուլտացիաներ՝ առողջապահության գործի կազմակերպման, բժշկության տեսության ու պրակտիկայի բազմազան հարցերի մասին։ Գյուղական բժիշկները և միջին բուժական աշխատողները ունեն իրենց հատկացված մշտական բաժինը. անշուշտ օգտակար են բժշկական-առողջապահական հանրամատչելի զրույցները, որոնք տպագրվում են ամսագրի հավելվածում։

Ամսագրի էջերում արծարծվել են ռեսպուբլիկայի առողջապահության գործի կազմակերպմանը վերաբերող մի շարք ակտուալ հարցեր, պրոբլեմներ։ Այդ տեսակետից ուշադրության արժանի է Հ. Աբովյանի հոդվածը՝ նվիրված ռեսպուբլիկայի առողջապահության գործի պլանավորման հարցերին։ Բազմակողմանի ուսումնասիրման հիման վրա հոդվածագիրը համոզիչ տվյալներով ու փաստերով ցույց է տալիս, որ այդ գործում անցյալում թույլ են տրվել սխալներ։ Պլանավորման գործում եղած սխալները շտկելու համար հոդվածագիրը գտնում է, որ անհրաժեշտ է տեղերում մոտիկից ուսումնասիրել յուրաքանչյուր շրջանի և քաղաքի ռեալ պայմաններն ու պահանջները, ապա պլանավորել բժշկական. հիմնարկները, կադրերը։

Մի այլ համարում ռեսպուբլիկական հակատուբերկուլյոզային դիսպանսերի գլխավոր բժիշկ Ա. Ստեփանյանը, խոսելով հակատուբերկուլյոզային պայքարի մի քանի խնդիրների մասին, մասնավորապես հիմնովին արծարծում է որակյալ ֆտիզիատոր-վիրաբույժների կադրերի պատրաստման հարցը։

Մանուկների բուժսպասարկման գործի կազմակերպմանն է նվիրված Ա. Խրիմլյանի հոդվածը։ Նա պատմում է ձեռնարկված այն միջոցառումների մասին, որոնք օգնել են՝ բարելավելու մանուկների բուժսպասարկումը և 1956—1957 թվականների ընթացքում ռեսպուբլիկայում զգալիորեն կրճատելու մանուկների մահացությունը։ Այնուհետև հեղինակը նշում է մանկական հիվանդությունների տարածումը կանխելու ու մահացության դեպքերը նվազեցնելու գործում ռեսպուբլիկայի առողջապահության օրգանների կոնկրետ խնդիրները։

Ամսագրի 1957 թվականի № 1-ում տպագրված հոդվածում Ռ. Գրիգորյանը, պատմելով Միության մի շարք քաղաքների առողջապահական հիմնարկների աշխատանքի կազմակերպման առաջավոր փորձի մասին, առաջարկության կարգով հարց է բարձրացնում վերակառուցել ռեսպուբլիկայի առողջապահական օրգանների աշխատանքը, բարելավել նրանց գործունեությունը։

տիայի գերը առողջապահության գործի կազմակերպման գործում, զանազան ձևերով ու հնարքներով ավելի լավ պրոպագանդի սովետական բժշկագիտության ու առողջապահության մեծագույն նվաճումները։

Ռեսպուբլիկայի առողջապահական հիմնարկների աշխատանքում դեռևս կան լուրջ բացեր, սխալներ։ Ամսագրի խմբագրությունը պետք է ուշադրություն դարձնի այնպիսի հոդվածների տպագրման վրա, ուր խոր ու մասնագիտական վերլուծման միջոցով վեր հանվեն առողջապահության կազմակերպման գործում դեռևս շարունակվող արմատական թերությունները, սխալները, դրանց շուտափույթ վերացման վրա բևեռելով բժշկական ամբողջ հասարակայնության ուշադրությունը։ Հասկանալի է, որ այդ գործին քիչ կարող են օգնել լրագրային բնույթի առանձին մանր թղթակցությունները, թռուցիկ ակնարկները։

Առանձին ուշադրություն պետք է դարձնել ռեսպուբլիկայի բժշկական գիտա-հետազոտական հիմնարկների գործունեության վրա, ընթերցողներին պատմել, թե պրակտիկայում ինչպես են կիրառվում նրանց գիտական աշխատանքի արդյունքները։ Ամսագրի խմբագրության թերացումն է, որ չի լուսաբանվում, թե ինչպես է կազմակերպված բժշկական բարձր ու միջին կադրերի պատրաստման և վերապատրաստման գործը։

Ամեն տարի Միությունում և ռեսպուբլիկայում հրատարակվում են բազմաթիվ բժշկական գրքեր ու գրքույկներ։ Սակայն ամսագրի էջերում մենք չենք տեսնում բարձրորակ գրախոսականներ, գրքի քննարկումներ, անոտացիաներ, հանձնարարվող գրականության ցանկ և այլն։

Անհրաժեշտ է ամսագրի աշխատանքներին ներգրավել ինչպես ռեսպուբլիկայի, այնպես էլ Միության մասնագետ կարող ուժերին, առանձնապես արդյունաբերական ձեռնարկություններում և կոլտնտեսային գյուղում աշխատող մեր լավագույն բժշկական աշխատողներին։

Պետք է հոգ տանել ամսագրի ձևավորմանը և տպագրվող նյութերի լեզվի, բժշկական տերմինների միօրինակության մասին։ Այս առումով պետք է ասել, որ գորշ է ամսագրի շապիկը, միշտ չէ, որ հաջող են ձևավորվում նրա համարները։ Ամսագիրը տպագրվում է անորակ թղթի վրա, որի պատճառով հաճախ աղավաղվում են նրանում զետեղված ֆոտո-նկարները, ռենտգեն պատկերները և այլն, որի հետևանքով էլ ծանոթ դեմքերը երբեմն դժվար է լինում ճանաչել։

Միաժամանակ պետք է նշել, որ ամսագրի ներկա ծավալը և պարբերականությունը (2 ամիսը մեկ համարի հրատարակումը) սահմանափակում է առողջապահության բազմաթիվ ինչպես կազմակերպական, այնպես էլ գիտապրակտիկ կարևոր հարցերի ժամանակին վերհանումը և լուսաբանումը։ Այդ դրությունն ավելի սրվում է այն պատճառով, որ «Առողջապահություն» ամսագիրը հայերեն լեզվով հրատարակվող բժշկական միակ պարբերականն է։ Ժամանակն է մտածել այս մասին։

«Առողջապահություն» ամսագրի խմբագրական կոլեգիան և նրա աշխատողները պետք է հենվեն հեղինակային ավելի լայն ակտիվի վրա, օգտագործեն ռեսպուբլիկայի բժշկական հիմնարկների հարուստ փորձը, հայրենական բժշկագիտության մեծարժեք գործերը, փորձը և ամսագիրը դարձնեն ավելի հետաքրքրական։

Ամսագիրը պետք է ռեսպուբլիկայի Առողջապահության մինիստրությանը և նրա օրգաններին օգնի ժամանակին վեր հանելու և վերացնելու բժշկական հիմնարկների աշխատանքում տեղ գտած թերությունները։ «Առողջապահություն» ամսագրի խմբագրությունը լավ և խիստ օգտակար գործ է կատարում։ Անհրաժեշտ է, որ ամսագիրը տպագրվի յուրաքանչյուր ամիս և անպայման լավորակ թղթի վրա։

Ս. ԳԱԼՍՏՅԱՆ



## ԼՈՒՐՋ ՏԵՂԵԿԱՏՈՒ

Վերջերս Մոսկվայում լույս տեսավ «ЗАРУБЕЖНЫЕ СТРАНЫ», 985 էջից բաղկացած քաղաքական-տնտեսագիտական տեղեկատու, որի պահանջմունքը վաղուց էր հասունացած։ Նյութերի կուռ սիստեմավորմամբ, ընդգրկմամբ ու բազմապիսությամբ այս խիստ օգտակար գիրքը կոչված է բավարարելու ո՛չ միայն դասախոսների, ուսուցիչների, պրոպագանդիստների և ժուռնալիստների, այլև ընթերցող հոծ զանգվածների առօրյա հետաքրքրությունը արտասահմանյան ուզածդ երկրի կամ պետության վերաբերյալ։

Այս ստվարածավալ գրքում զետեղված են ճշգրիտ գիտելիքներ Եվրոպայի, Ասիայի, Աֆրիկայի, Ամերիկայի, Ավստրալիայի և Օվկիանիայի զանազան պետությունների ու երկրների մասին։ Ուշագրավ է, որ հեղինակները չեն մոռացել հատուկ էջ հատկացնել այնպիսի մի աննշան կղզու (Պիտկերն), որն ունի ընդամենը 5 քառ. կիլոմետր տարածություն և 136 բնակիչ։

Յուրաքանչյուր երկրին նվիրված իրենց շարադրանքը հեղինակները տվել են հետևյալ սխեմայով. տերիտորիան, ազգաբնակչությունը, տնտեսության ընդհանուր բնութագիրը, արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, տրանսպորտը, արտաքին առևտուրը, ֆինանսները, աշխատավորության գոյավիճակը, լուսավորությունն ու առողջապահությունը, պետական կարգը, քաղաքական պարտիաները և այլ կազմակերպությունները, մամուլը և կարևոր անցքերի խրոնիկան։

Շատ լավ է, որ տրված է յուրաքանչյուր երկրի քարտեզը և նույնիսկ դրամական միավորը արդի կուրսով։

Ընթերցող մասսաները հարուստ նյութեր կգտնեն կապիտալիստական երկրների էկոնոմիկայի և բանվորական ու ազգային-ազատագրական շարժման արդի վիճակի վերաբերյալ։ Թվական տվյալներով և հարուստ փաստերով տրված է կապիտալիստական խոշոր երկրների պետական ղեկավար պարտիաների ու մոնոպոլիստական գայլերի սերտաճումը և վերջիններիս թելադրող դերը։ Մեր պրոպագանդիստներին ռեալ օգնություն պետք է համարել և այն, որ հեղինակները համոզիչ աղյուսակներով տվել են մոնոպոլիստական մագնատների հեքիաթային շահույթների տվյալները 1937—1955 թթ.։ Այսպես, օրինակ, ԱՄՆ-ում գործող 615 698 կապիտալիստական մոնոպոլիաներից 77-ը ունեն յուրաքանչյուրը մեկ միլիարդ և ավելի դրամագլուխ, որոնց ընդհանուր ակտիվը 1956 թ. կազմում էր 224 միլիարդ դոլար։

Ընթերցողներն այս գրքում կգտնեն արտասահմանյան ամեն մի երկրի ողջ էկոնոմիկայի տարբեր բնագավառների վիճակը՝ սպառիչ թվական տվյալներով (մինչև 1956 թ. ներառյալ)։

Գրքի վերջում զետեղված են 1956 թվականի արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի հիմնական ցուցանիշներն արտասահմանյան երկրներում։ Բացի այդ, կան և առանձին տվյալներ, որոնք հստակ պատկերացում են տալիս ժողովրդական դեմոկրատիայի երկրների տնտեսական զարգացման վերաբերյալ։

Անհրաժեշտ է, որպեսզի այս լուրջ տեղեկատուն լինի բոլոր գրադարաններում։

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐՈՒՄ 1957 ԹՎԱԿԱՆԻՆ ԶԵՏԵՂՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

## Առաջնորդողներ և խմբագրական հոդվածներ



## Հոդվածներ

### Դեպի Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը



### Հուշեր ռևոլյուցիոն անցյալից



### Կոնսուլտացիա



### Օգնություն փիլիսոփայություն ուսումնասիրողներին



### Քննարկություն և վիճաբանություն

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք,
հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.

Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԲԱԲԱՅԱՆ Լ. Հ., ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ ՀՈՎՀ. Մ.,
ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ
Գ. Ա., ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ ԱՐ. Ն., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ
Վ. Ս., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.:

ՎՖ 11045 Պատվեր 2769 Տիրաժ 5700

Ծավ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ: Ստորագրված է տպագրության 18/XII 1957 թ.:

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։


# ՀԱՅԳՐՔԻ ՈՒ ՀԱՅԿՈՈՊԻ ԳՐԱԽԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ԳՐՔԵՐԸ

Վ. Ի. ԼԵՆԻՆ — «Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի մասին», Հայպետհրատ, 1957 թ., գինը 7 ռ. 75 կոպ.:

Վ. Ի. ԼԵՆԻՆ — «Ազգային և ազգային-գաղութային հարցի մասին», Հայպետհրատ, 1957 թ., գինը 9 ռ. 50 կոպ.:

ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆ — «Երկերի ժողովածու», հ. 2, Հայպետհրատ, 1957 թ., գինը 8 ռ. 10 կոպ.:

ԱԼ. ՄՅԱՍՆԻԿՅԱՆ — «Իմ հանդիպումները ընկեր Լենինի հետ», Հայպետհրատ, (հայերեն և ռուսերեն) 1957 թ., գինը 15 կոպ.:

ԱԼ. ՄՅԱՍՆԻԿՅԱՆ — «Ընտիր երկեր» (մի հատորյակ), Հայպետհրատ, 1957 թ., գինը 9 ռ. 30 կոպ.:

СБОРНИК — „Великая Октябрьская Социалистическая революция и победа Советской власти в Армении», *Армгиз, 1957 г., цена 12 руб.*

Ծ. ԱՂԱՅԱՆ — «Հոկտեմբերյան ռևոլյուցիան և հայ ժողովրդի ազատագրումը», Հայպետհրատ, 1957 թ., գինը 6 ռ. 65 կոպ.:

Զ. ԳՐԻԳՈՐՅԱՆ — «Ռուս և հայ ժողովուրդների ռազմական համագործակցությունը XIX դարի սկզբներին», Հայպետհրատ, 1957 թ., գինը 4 ռ. 45 կոպ.:

Л. АРИСЯН — „Из истории теории познания", *Армгиз, 1957 г., цена 4 руб. 40 коп.*

ԺՈՂՈՎԱԾՈՒ — «Լենինը մեր սրտում», Հայպետհրատ, 1957 թ., գինը 5 ռ. 65 կոպ.:

ՌԶԱ ՌԱՍՈՒԼ — «Լենին», Հայպետհրատ, 1957 թ., գինը 7 ռ.:

Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ — «Սիրտը», Հայպետհրատ, 1957 թ., գինը 10 ռ. 30 կոպ.:

Մ. ԱՐՄԵՆ — «Պատմվածքներ», Հայպետհրատ, 1957 թ., գինը 11 ռ. 60 կոպ.:

Ա. ԳՐԱՇԻ — «Սարերի սրինգը», Հայպետհրատ, 1957 թ., գինը 5 ռ. 70 կոպ.:

Ս. ԽԱՆԶԱԴՅԱՆ — «Հողը», Հայպետհրատ, 1957 թ., գինը 9 ռ. 85 կոպ.:

Վ. ԳԱՅԶԵՆՅԱՆ, Ա. ՍԱՐԳՍՅԱՆ — «Գևորգ Բաշինջաղյան», Հայպետհրատ, 1957 թ., գինը 2 ռ. 70 կոպ.:

Ա. ՈՍԿԵՐՉՅԱՆ — «Ռուս մեծ քննադատները և հրապարակախոսները», Հայպետհրատ, 1957 թ., գինը 8 ռ.:

Կ. ՍԻՏԱԼ — «Դյուցազնական», Հայպետհրատ, 1957 թ., գինը 13 ռ. 30 կոպ.:

ՍԱՐՄԵՆ — «Կարոտի կրակներ», Հայպետհրատ, 1957 թ., գինը 5 ռ. 35 կոպ.:

Հ. ՍԱԼԱԽՅԱՆ — «Եղիշե Չարենց», Հայպետհրատ, 1957 թ., գինը 3 ռ. 40 կոպ.:

Գ. ԲԱՇԻՆՋԱՂՅԱՆ — «Ճանապարհորդական նոթեր», Հայպետհրատ, 1957 թ., գինը 5 ռ. 60 կոպ.:

ՇԻՐՎԱՆԶԱԴԵ — «Արսեն Դիմաքսյան», Հայպետհրատ, 1957 թ., գինը 30 կոպ.:

**ՀԱՅԳԻՐՔ**

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.